ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ



№ 1
ՀՈՒՆՎԱՐ
1961 Թ.
★

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ
ՏԵՍԱԿԱՆ—ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ЛЕНИНЯН УГИОВ—ТЕОРЕТИЧЕСКИЙ
ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦК КП АРМЕНИИ

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
XXXVIII
ՏԱՐԻ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

СОДЕРЖАНИЕ





# ՎԵՐԸՆԹԱՑ ՏԱՐԻՆԵՐ

*Պատմության գիրկն անցավ 1960 թվականը՝ յոթնամյակի երկրորդ տարին, որը լի էր սովետական մարդկանց կատարած աշխատանքային սխրանքներով ու հիանալի գործերով, կոմունիզմի համար մղվող պայքարում մեր ժողովրդի ձեռք բերած մեծագույն հաղթանակներով։ Բերկրալի օրեր են ապրում մեր երկրի աշխատավորները։ Կենսագործելով Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXI համագումարի որոշումները, նրանք հաջողությամբ կատարում են կոմունիզմի կառուցման հոյակապ ծրագիրը։*

*ՍՄԿՊ XXI համագումարի որոշումները Սովետական Միության բոլոր աշխատավորների շրջանում առաջ բերին քաղաքական մեծ ակտիվություն, աշխատանքային բուռն խանդավառություն և սոցիալիստական մրցության նոր ձևեր զարգացնելու ձգտում։ Համագումարի նախօրյակին սկսված հայրենասիրական նոր՝ կոմունիստական աշխատանքի բրիգադայի և հարվածայինի կոչման համար ծավալված շարժումը ընդգրկեց միլիոնավոր մարդկանց, հազարավոր ցեխեր ու կոլեկտիվներ։ Ոգեշնչված պարտիայի՝ յոթնամյակը ժամկետից շուտ կատարելու կոչով, գործարաններում ու հանքահորերում, տրանսպորտում ու նորակառույցներում, կոլտնտեսություններում ու սովխոզներում աշխատավորները պայքարի ելան ավելի շատ հանքաքար ու ածուխ, պողպատ ու հաստոցներ, նավթ ու էլեկտրաէներգիա, ժողովրդական լայն սպառման առարկաներ արտադրելու համար։ «Իսկ կոմունիզմ,— ասում է Վ. Ի. Լենինը,— մենք անվանում ենք այն կարգը, երբ մարդիկ սովորում են կատարել հասարակական պարտականություններ առանց հարկադրման հատուկ ապարատների...»։*

*Յոթնամյա պլանն ընդունելուց հետո ընդամենը երկու տարի է անցել։ Այդ կարճ ժամանակամիջոցում ինչպիսի՜ սխրանքներ ասեք, որ չեն կատարել սովետական մարդիկ։ Նրանք այսօր մի հետադարձ հայացք նետելով անցած երկու տարիների վրա, իրավամբ հիանում են այն վիթխարի հաջողություններով, որ ձեռք են բերել երկրի արդյունաբերության, գյուղատնտեսության զարգացման, գիտության ու կուլտուրայի ծաղկման, աշխատավորության կենսամակարդակի բարձրացման բնագավառներում և աշխարհում խաղաղությունն ամրապնդելու համար մղվող պայքարում։*

*ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանով
1959—1960 թվականներին արդյունաբերության համախառն արտադրանքը,
կոնտրոլ թվերի հաշվարկումներով նախատեսված 17 տոկոսի փոխարեն, ավե-
լացել է գրեթե 23 տոկոսով, և առաջադրանքից ավելի արտադրվել է մոտավո-
րապես 120 միլիարդ ռուբլու արդյունաբերական արտադրանք։ Միայն
1959—1960 թվականների ընթացքում ՍՍՌՄ-ում գործարկվել են ավելի քան
երկու հազար ձեռնարկություններ։*

*Ավելի մեծ թափով զարգացավ երկրի ժողովրդական տնտեսության հիմ-*

քերի հիմքը՝ ծանր արդյունաբերությունը։ Երկու տարվա ընթացքում պողպատի ձուլումն ավելացել է մոտ 10 միլիոն տոննայով, նավթի հանույթը՝ 34 միլիոն տոննայով, էլեկտրաէներգիայի արտադրությունը՝ 50 միլիարդ կիլովատ ժամով։

Անցած երկու տարիները նշանավորվեցին գյուղատնտեսության բնագավառում ձեռք բերված որոշակի հաջողություններով։ Չնայած ՍՍՌՄ-ի մի շարք շրջաններում եղած անբարենպաստ եղանակին, երկրում արտադրվեց ու գնվեց ավելի շատ հացահատիկ, քան նախորդ տարում. զգալիորեն ավելացան բամբակի հումքի, շաքարի ճակնդեղի արտադրությունն ու գնումը։ Գերակատարվել է մսի գնման պետական պլանը։

Երկու տարիների ընթացքում իրենց ծաղկման վառ շրջանն ապրեցին սովետական գիտությունը, կուլտուրան ու արվեստը։ Մեր երկրի գիտնականների, ինժեներների, կոնստրուկտորների և բանվորների ստեղծագործ աշխատանքով նոր փառապանծ էջեր գրվեցին տիեզերքի նվաճման պատմության մեջ։ Վերակառուցվեց սովետական դպրոցը, որը այժմ ավելի սերտորեն է կապված կյանքի հետ։ Ավելի մեծ ժողովրդականություն են վայելում արվեստն ու գրականությունը, որոնք բխելով ժողովրդի սրտից, բավարարում են սովետական մարդկանց հոգեկան պահանջմունքները։

Սոցիալիստական ինդուստրիայի, գյուղատնտեսության, գիտության ու տեխնիկայի հաջողությունները մեր ժողովրդի նյութական բարեկեցության և կուլտուրական մակարդակի հետագա աճի հիմքը հանդիսացան. երկրի բոլոր բանվոր-ծառայողներն անցան յոթժամյա, իսկ վնասակար ճյուղերի աշխատողները՝ վեցժամյա աշխատանքային օրվա։ Բանվորներից ու ծառայողներից հարկերի գանձումը վերացնելու և սովետական ժողովրդի բարեկեցությունը բարձրացնելու վերաբերյալ պարտիայի ու կառավարության մշակած միջոցառումների շնորհիվ աշխատողները ստացան միլիարդավոր ռուբլիների լրացուցիչ եկամուտ։ ՍՍՌՄ-ում 1959 թվականին պետական միջոցներով կառուցվել է 800 միլիոն քառակուսի մետր բնակելի տարածություն, իսկ 1960 թվականին, նախորդ տարվա համեմատությամբ, տասնմեկ միլիոն քառակուսի մետրով ավելի։

Անցյալ երկու տարիները եղան մեր երկրի արտաքին քաղաքականության նոր հաջողությունների տարիներ, քաղաքականություն, որը ծառայում է ամբողջ աշխարհի խաղաղության պահպանմանն ու ամրապնդմանը, միջազգային հարաբերությունների լարվածության մեղմացմանը և համաշխարհային սոցիալիստական սիստեմի ամրապնդմանը։

Սովետական Միության մեծ ընտանիքի բոլոր ժողովուրդների հետ միասին, կոմունիստական պարտիայի գլխավորությամբ Հայկական ՍՍՌ-ի աշխատավորները ևս յոթնամյակի երկու տարիների ընթացքում զգալի հաջողություններ հասան արդյունաբերության, գյուղատնտեսության զարգացման և գիտության ու կուլտուրայի ծաղկման բնագավառներում։

Հայաստանի պարտիական կազմակերպությունները կազմակերպական ու քաղաքական աշխատանքն ի սպաս դնելով տնտեսական խոշորագույն խնդիրների լուծմանը՝ գլխավորեցին մասսաների արտադրական նախաձեռնությունն ու քաղաքական ակտիվությունը և այն ուղղեցին պլանները կատարելու և գերակատարելու նպատակին։

Ռեսպուբլիկայում յոթնամյակի անցած երկու տարիներին Հայաստանի բանվորները, կոլտնտեսականները, ինտելիգենցիան, բուռն եռանդով սոցիա-



լիստական մրցության մեջ մտան՝ կենսագործելու յոթնամյակի առաջադրանք-
ները։ Կատարված հսկայական աշխատանքի հետևանքն այն եղավ, որ ըստ
նախնական հաշվարկումների, արդյունաբերական արտադրանքի տարեկան մի-
ջին աճը ռեսպուբլիկայում 1959—1960 թվականներին կազմեց 12,1 տոկոս,
յոթնամյա պլանով նախատեսված 8,4 տոկոսի դիմաց։ Միայն վերջին երեք
տարում շահագործման են հանձնվել էլեկտրատեխնիկական արդյունաբերու-
թյան վեց և սարքաշինության երկու ձեռնարկություն։ Ինչպես 1959, այնպես էլ
1960 թվականին Հայկական ՍՍՌ արդյունաբերությունը ժամկետից 10 օր շուտ
կատարեց տարեկան պլանները։
Արտադրանքի թողարկման յոթնամյակի առաջադրանքները կատարելու
ուղղությամբ ավելի լավ արդյունքի են հասել գունավոր մետաղամշակության,
ավտոդողեր, ցեմենտ, կաուչուկ, տրիկոտաժ, կաուստիկ սոդա, հանքային պար-
արտանյութեր արտադրող արդյունաբերական ձեռնարկությունները։ Քիմիա-
կան արդյունաբերության արտադրանքը անցած տարում աճեց 15 տոկոսով,
գունավոր մետալուրգիայինը՝ 17 տոկոսով, մեքենաշինությանը՝ 38 տոկոսով,
այդ թվում էլեկտրատեխնիկական արդյունաբերությանը՝ 39 տոկոսով։ Ար-
դյունաբերության մեջ հաջողությամբ կատարվեցին աշխատանքի արտադրո-
ղականության աճման առաջադրանքները։ Մեկ աշխատողի արտադրանքը պլա-
նով նախատեսված չորս տոկոսի դիմաց ավելացավ 6 տոկոսով։
Ռեսպուբլիկայում նշանակալի չափերով ավելացել է էլեկտրաէներգիայի
արտադրությունը, որը Հայաստանի արդյունաբերական էներգետիկ բազայի
հիմնական աղբյուրն է։ 1960 թվականին արտադրվեց մոտ երկու միլիարդ յոթ-
հարյուր միլիոն կիլովատ ժամ էլեկտրաէներգիա, որը երկու հարյուր միլիոն
կիլովատ ժամով ավելի է 1958 թվականին արտադրվածից։ Միայն 1959 թվա-
կանին, 1958 թվականի համեմատությամբ, ավելի են թողարկված մինչև 100
կիլովատանոց գեներատորներ՝ մոտ 600 հատ, շարժական էլեկտրակայաններ՝
մոտ 300 հատ։
1958 թվականին արտադրված 81470 քառակուսի մետրի դիմաց անցյալ
տարի արտադրվեցին 190 հազար քառակուսի մետր երկաթ-բետոնե կոնս-
տրուկցիաներ ու մասեր։ Այդ և պանելների արտադրության հիման վրա ռես-
պուբլիկայում արագ թափով ծավալվեց բնակարանային շինարարությունը։
Երևանում, Լենինականում, Կիրովականում, մյուս քաղաքներում և բանվորա-
կան ավաններում օր-օրի բարձրանում են բազմահարկ բնակելի տներ, և բաց-
վում նոր ու լայն փողոցներ։ Միայն 1959 թվականին ռեսպուբլիկայում շա-
հագործման հանձնվեց 255 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն։
Բնակարան ստացող ընտանիքների թիվն այժմ հաշվում է ոչ թե հարյուրնե-
րով, այլ հազարներով։
Ռեսպուբլիկայում խոշոր թափով աճել են լայն սպառման առարկաների
արտադրությունն ու սննդարդյունաբերությունը։ Յոթնամյակի անցած երկու
տարիներում Հայկական ՍՍՌ թեթև արդյունաբերության ձեռնարկությունները
արտադրել են 146 միլիոն մետր զանազան գործվածքներ, 43 միլիոն 200 հա-
զար կտոր տրիկոտաժեղեն։ Յոթնամյակի առաջին երկու տարում շաքարավազի
արտադրությունն ավելացավ մոտ հազար տոննայով։
Վերջին երկու տարիներում ռեսպուբլիկայում որոշակի աշխատանք է կա-
տարվել արդյունաբերական ձեռնարկություններում ու շինարարության մեջ
կոմպլեքսային մեքենայացումն արմատավորելու, արտադրությունն ավտոմա-

տացնելու, հոսքային գծեր մտցնելու, հնացած սարքավորումները, դրոշմոցները և գործիքները փոխելու բնագավառում։ Արտադրությունից հանվել են հնացած կոնստրուկցիայի արդյունաբերական արտադրանքի շատ տեսակներ. յուրացվել է արտադրանքի նորագույն տեսակների սերիական արտադրությունը։ Միայն անցյալ տարի ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկությունները յուրացրել են արտադրանքի ավելի քան հարյուր նոր տեսակներ։ Հայկական ՍՍՌ Ժողտնտխորհի արդյունաբերության տարբեր ճյուղերում երկու տարում ավտոմատացման ու մեքենայացման գծով կենսագործվել են ավելի քան 400 միջոցառումներ, արմատավորվել են մոտ 200 պրոգրեսիվ տեխնոլոգիական պրոցեսներ, արտադրության մեջ ներդրվել են բարձր արտադրողականության հատուկ և մասնագիտացված 400-ից ավելի սարքավորումներ։ Միայն Քաջարանի պղնձամոլիբդենային կոմբինատում հանքաքարի ստորերկրյա հանույթից բաց հանույթին անցնելը հնարավորություն տվեց աշխատանքի արտադրողականությունը բարձրացնել երեք անգամ, ինքնարժեքն իջեցնել 50 տոկոսով և զգալիորեն բարելավել աշխատանքի պայմանները։

Մեր ռեսպուբլիկայում յոթնամյակի խոշորագույն կառույցներից է եղբայրական Սովետական Ադրբեջանից (Ղարադաղից) Երևան անցկացված գազամուղը, որի երկարությունը 680 կիլոմետր է։ Բնական գազը մեծ հեղաշրջում է առաջացնում ռեսպուբլիկայի արդյունաբերության մեջ ու բնակչության կենցաղում։ Առաջիկա տարիներում Երևանում, Հրազդանում, Կիրովականում կկառուցվեն բնական գազով գործող ջերմաէլեկտրակայաններ, որոնց շնորհիվ կկարգավորվի Սևանի ջրի ծախսումը։

Վերջին երկու տարիներին արդյունաբերության աշխատատար ճյուղերի զարգացման շնորհիվ զգալիորեն ավելացել է բանվորների ու ինժեներա-տեխնիկական աշխատողների քանակը։ Միայն անցյալ տարի էլեկտրատեխնիկական և սարքաշինական արդյունաբերության մեջ ներգրավվել են 3600 մարդ, որոնց մեծ մասը տասնամյա դպրոցն ավարտած երիտասարդներ են։ Անցյալ տարի ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության մեջ զբաղված բանվորների ու ծառայողների թիվը հասավ 400 հազարի, որը 2,7 անգամ ավելի է 1940 թվականի համեմատությամբ։

Կոմունիստական պարտիայի ու Սովետական կառավարության մշակած միջոցառումները խոշոր ավանդ հանդիսացան ինչպես ամբողջ Սովետական Միությունում, այնպես էլ մեր ռեսպուբլիկայում գյուղատնտեսության շեշտակի վերելքն ապահովելու համար։

Սովետական Հայաստանի գյուղատնտեսության աշխատողները լայնորեն ծավալեցին սոցիալիստական մրցություն յոթնամյա պլանի առաջադրանքները ժամկետից շուտ՝ չորս-հինգ տարում կատարելու և բնակչության մեկ շնչին ընկնող մսի, կաթի ու անասնաբուծական մյուս մթերքների արտադրությամբ մոտակայում ԱՄՆ-ին հասնելու համար։ Գյուղատնտեսական մթերքների արտադրության նշանակալի աճի համար մեր ռեսպուբլիկան 1958 թվականին պարգևատրվեց Լենինի շքանշանով։

Ռեսպուբլիկայի գյուղատնտեսության բնագավառի աշխատողները, ոգեշնչված Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության այդ մեծագույն պարգևով, ձեռնամուխ եղան գյուղատնտեսական մթերքների արտադրության յոթնամյա պլանով նախատեսված առաջադրանքները ժամկետից շուտ կատարելուն։ Յոթնամյակի երկու տարիներում հաջողությամբ կատարվեցին գյուղատնտեսական հիմնական կուլտուրաների՝ բամբակի հումքի, խաղողի, ծխախոտի, շաքարի ճակնդեղի բերքատվության ու վաճառքի, անասնաբուծական մթերքների արտադրության ու վաճառքի առաջադրանքները։ 1960 թվականին բամբակի հումքի համախառն արտադրանքը, նախորդ տարվա համեմատությամբ, ավելացավ 7,678 տոննայով։ Ռեսպուբլիկայի ճակընդեղագործները անցած երկու տարիներին երկրին տվին 217000 տոննա ճակնդեղ։ Միայն անցյալ տարի ծխախոտի վաճառքը հասավ 10504 տոննայի, որը 723 տոննայով ավելի է 1959 թվականին վաճառվածից։

Ռեսպուբլիկայի ճակնդեղագործները, ծխախոտագործներն ու բամբակագործները անցյալ տարի շաքարի ճակնդեղի, ծխախոտի և բամբակի բերքատվության ու վաճառքի քանակով հասան 1965 թվականի համար սահմանված մակարդակին։

Բարձրացել է գյուղատնտեսության տեխնիկական հագեցվածության ու մեքենայացման մակարդակը։ Հասկավոր կուլտուրաների մշակության աշխատանքների ու բերքահավաքի գրեթե 70 տոկոսը մեքենայացված է։ Զգալիորեն բարձրացել է բամբակի պլանտացիաների ու շաքարի ճակնդեղի ցանքատարածությունների մշակման աշխատանքների մեքենայացման մակարդակը։ Վճռական քայլեր են արվում անասնաբուծության և այգեգործության աշխատատար պրոցեսները մեքենայացնելու ուղղությամբ, որը մեծ չափով կնպաստի գյուղատնտեսության այդ ճյուղերի արտադրանքն զգալիորեն ավելացնելու և արտադրանքի ինքնարժեքն իջեցնելու գործին։

Արդյունաբերության ու գյուղատնտեսության տեխնիկական զինվածության մակարդակի բարձրացմանը համընթաց որակավորվում են բանվորները, կոլտնտեսականները, արտադրության մասնագետները, գիտական հիմնարկների ու ինստիտուտների աշխատողները, որոնք իրենց ստեղծագործ նախաձեռնություններով որոնում ու գտնում են նորը, առաջավորը։

Ռեսպուբլիկայի յոթնամյա պլանի կենսագործման առաջին երկու տարվա արդյունքներն ավելի փայլուն կլինեին, եթե արդյունաբերական առաջավոր ձեռնարկությունների, ֆաբրիկաների, գործարանների, կոլտնտեսությունների ու սովխոզների կողքին չլինեին այնպիսիները, որոնք չեն կատարել իրենց առաջադրանքները։

Անցյալ տարվա 11 ամսում արդյունաբերական 66 ձեռնարկություններ կամ բոլոր ձեռնարկությունների ընդհանուր թվի 17 տոկոսը չկատարեց արտադրական պլանը և մոտ 80 միլիոն ռուբլու պակաս արտադրանք տվեց։ Անցյալ տարի, նախորդի համեմատ, կրկնապատկվեց պլանները թերակատարող Ժողտնտխորհի ձեռնարկությունների թիվը։ Արդյունաբերական մի շարք ձեռնարկություններ չապահովեցին արտադրանքի նոմենկլատուրային և որակական ցուցանիշների կատարումը։

Ժամանակն է, որպեսզի ռեսպուբլիկայի Ժողովրդական տնտեսության խորհուրդը և Պետպլանը ձեռք առնեն այն միջոցները, որոնք վերջնականապես կապահովեն պլանները թերակատարող ձեռնարկությունների նորմալ ընթացքը։ Այս դեպքում, հավանաբար, անհրաժեշտ կլինի աշխատանքում իրենց չարդարացրած որոշ տնտեսվարների փոխարեն առաջ քաշել առավել կարող կադրեր։ Բանիմաց և ջանասեր կադրերի առաջքաշումը մեծապես կօգնի մեր տնտեսական կյանքի ընդհանուր վերելքին։

Անհանդուրժելի է, երբ անցյալ տարի մեր շինարարները, մանավանդ

Երևան քաղաքում գործող շինարարական կազմակերպությունները չապահովեցին շահագործման տրվող շենքերի իրենց պլանների կատարումը։ Անցած տարվա 11 ամսում շահագործման հանձնվելիք բնակելի շենքերի տարեկան պլանը ռեսպուբլիկայում կատարվեց ընդամենը 50 տոկոսով։ Սա խոշոր թերություն է կառուցող կազմակերպությունների գործունեության մեջ։

Տվյալ դեպքում չպետք է անտեսել և այն, որ պլանավորող օրգանները մինչև օրս չեն հաղթահարել իրենց գործունեության էական թերությունը՝ շինանյութերի արտադրության նշանակալի չափով շինարարության ծավալից ետ մնալը, շինանյութերի՝ ըստ եռամսյակների անհամաչափ բաշխումը։ Արագորեն վերացնելով ստեղծված այս անհամամասնությունները, պլանային օրգանները մեծապես կնպաստեն շինարարության գործի բուռն զարգացմանը։

Բնակարանային շինարարությունը համարելով մեր պարտիայի և կառավարության մեծագույն հոգսերից մեկը, պարտիական կազմակերպությունները պետք է միջոցներ ձեռք առնեն ո՛չ միայն լրիվ կենսագործելու այս տարվա բնակարանային շինարարության պլանը, այլև հատուցել աշխատավորության անցյալ տարվա իրենց պարտքը։

Չնայած անասնաբուծության բնագավառում 1959, ինչպես նաև 1960 թվականին (1958 թվականի համեմատությամբ) ձեռք բերած որոշակի հաջողություններին, գյուղատնտեսության այս ճյուղում դեռևս լրիվին չեն կատարվում պարտիայի և կառավարության կողմից առաջադրված պլանները։ Յուրաքանչյուր կովի կաթնատվությունը 1960 թվականի համար նախատեսված 1650 կիլոգրամի դիմաց եղավ ընդամենը 1515 կիլոգրամ, մսի ընդհանուր արտադրությունը կոլտնտեսություններում և սովխոզներում, թեպետ 1959 թվականի համեմատությամբ ավելացավ 6,4 հազար տոննայով (կենդանի քաշով), այնուամենայնիվ, այն կազմում է անցյալ տարվա համար նախատեսված մակարդակի միայն 77,9 տոկոսը։ Կաթի արտադրությունն ավելացավ 16 հազար տոննայով, սակայն նրա ընդհանուր արտադրության ծավալը 18 տոկոսով ցածր է յոթնամյա առաջադրանքներով նախատեսվածից։ Չի կատարված բրդի արտադրության, խոշոր և մանր եղջերավոր անասունների, ինչպես նաև խոզերի գլխաքանակի աճման պլանը։ Պարտիական կազմակերպություններին և սովետական օրգաններին պատիվ չի բերում այն, որ անցյալ տարի ռեսպուբլիկան անասունների, հատկապես մանր եղջերավոր անասունների զգալի կորուստ ունեցավ։ Անասնաբուծության բնագավառում աշխատողների առաջնահերթ խնդիրն է այս տարի վճռականորեն բարելավել անասունների խնամքը և պայքար կազմակերպել կորուստների դեմ։

Ինչպես ցույց է տալիս պրակտիկան, անասնաբուծության զարգացման կարևորագույն բազայի՝ կերի հայթայթման գործը լավ չի դրված ռեսպուբլիկայի բազմաթիվ շրջաններում, որի հետևանքով էլ անցյալ տարի ունեցանք զգալի կորուստներ։ Այս տարվա առաջին իսկ ամսից շրջանային պարտիական և պետական օրգանները պետք է զբաղվեն կերի հայթայթման գործը բարեհաջող լուծելու հարցով։ Հարկավոր է անխնա պայքար կազմակերպել այս բնագավառում նկատվող հանգստացուցիչ տրամադրությունների և որոշ աչքակապությունների դեմ։

Անհրաժեշտ է ընդգծել, որ անցած տարում մի շարք արդյունաբերական ձեռնարկությունների, կոլտնտեսությունների ու սովխոզների սկզբնական պարտիական կազմակերպությունները չկարողացան գլխավորել մասսաների քաղաքական ու արտադրական ակտիվությունը և այն ուղղել յոթնամյակի առաջադրանքները կատարելու գործին։ Նրանք չկարողացան կոտրել մի շարք տնտեսական ղեկավարների պահպանողական տրամադրությունը, որոնք կառչելով հնին, գործնական քայլեր չեն անում՝ արտադրության մեջ արմատավորելու առաջավոր մեթոդները, գիտության ու տեխնիկայի նվաճումները։ Պարտիական, կոմերիտական, պրոֆմիութենական կազմակերպություններն ու տնտեսական օրգանները իրենց ուշադրությունը պետք է կենտրոնացնեն այդ հարցերի լուծման վրա։



Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի հինգերորդ գումարման չորրորդ սեսիան, քննության առնելով ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության զարգացման 1961 թվականի պետական պլանը, օրենք ընդունեց այդ մասին։

Յոթնամյակի երրորդ տարում մեր ռեսպուբլիկայի պետական բյուջեով ծախսումների համար նախատեսված է 367744 հազար ռուբլի։ Արդյունաբերության համախառն արտադրանքը աճելու է 11,6 տոկոսով։

Հաշվի առնելով հետախուզված պաշարների ավելացումը և նոր կարողությունների գործարկումը, Գերագույն Սովետի սեսիան գտավ, որ 1961 թվականին հնարավոր է գունավոր մետալուրգիայի արտադրությունը յոթնամյա պլանով նախատեսվածի համեմատությամբ ավելացնել 16,9 տոկոսով։ Այս տարի նախատեսվում է մոլիբդենի արտադրությունն ավելացնել 21,7, ռաֆինացված պղնձինը՝ 25,6 տոկոսով։

Քիմիական արդյունաբերության արտադրանքի ծավալը յոթնամյա պլանի կոնտրոլ թվերով 1961 թվականի համար նախատեսված մակարդակը կգերազանցի 17,4 տոկոսով։ 1960 թվականի համեմատությամբ սինթետիկ խեժերի և պլաստմասսաների արտադրությունը կավելանա երկու անգամ, կորունդինը՝ 90,6 տոկոսով, քացախաթթվինը՝ 58,2, ռետինե տեխնիկական իրերինը՝ 56,5, վինիլացետատինը՝ 29,5 տոկոսով և այլն։

Զգալիորեն կզարգանա ծանր արդյունաբերության կարևորագույն ճյուղերից մեկը՝ մեքենաշինությունը, որի արտադրանքի ծավալը, 1960 թվականի համեմատությամբ, կավելանա 23,5 տոկոսով, ընդ որում ռադիոտեխնիկական արդյունաբերության արտադրանքի ծավալը կավելանա 2,2 անգամ, հաստոցաշինական և գործիքաշինական արդյունաբերությանը՝ 35,7 տոկոսով, սարքաշինությանը՝ 34, էլեկտրատեխնիկական արդյունաբերությանը՝ 22,4 տոկոսով։

Անցյալ տարվա համեմատությամբ, ընթացիկ տարում պետական բյուջետային միջոցներից գյուղատնտեսական արտադրության զարգացմանը հատկացվելու է 24 միլիոն ռուբլի, որը մոտ 20 տոկոսով ավելի է 1960 թվականին հատկացված գումարից։ Նախատեսված է 1961 թվականին, 1960 թվականի համեմատությամբ, գյուղատնտեսական մի շարք մթերքների արտադրանքն ավելացնել—խաղողինը՝ 58,2, պտուղներինը՝ 16,1, հացահատիկային կուլտուրաներինը՝ 22,7, բանջարեղենինը՝ 51,6, կարտոֆիլինը՝ 41, մսինը՝ (կենդանի քաշով) 38,3, կաթինը՝ 30, ձվինը՝ 46,2, բրդինը՝ 22, 8 տոկոսով։

Սովետական ժողովուրդը հիանալի է սկսել երկրի ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանի կատարման գործը։ Սովետական յուրաքանչյուր մարդ ուրախ ու հպարտ է այս երկու տարվա հաջողություններով։ Չէ՞ որ ամեն մի ազնիվ աշխատող իր մասն ունի այդ մեծ գործի մեջ։

Ըստ ժողովրդական ասացվածքի՝ լավ սկիզբը գործի կեսն է։ Մեր երկրի

գործերը լավ են ընթանում։ Բայց սովետական մարդիկ, հետևելով Վ. Ի. Լենինի ցուցումներին, երբեք չեն հանգստանում ձեռք բերած հաջողություններով։ Նրանք գիտակցում են, որ իրենց սպասում են ավելի վիթխարի գործեր, ավելի բարդ խնդիրներ։

Մեր առջև ծառացած մեծ խնդիրները նորանոր սխրանքների են ոգեկոչում սովետական մարդկանց։ Վ. Ի. Լենինը 1921 թվականի նոյեմբերի 6-ին ճառով հանդես գալով պրոխորովյան մանուֆակտուրայի բանվորների ժողովում, ասել է. «Այն ամենը, ինչ որ մենք ձեռք բերինք, ցույց է տալիս, որ մենք հենվում ենք աշխարհում ամենահրաշալի ուժի վրա՝ բանվորների ու գյուղացիների ուժի վրա։ Այդ մեզ վստահություն է ներշնչում, որ հաջորդ տարեդարձը մենք կդիմավորենք աշխատանքի ճակատում հաղթանակելու նշանաբանով»։ Իլյիչի արտասանած այդ ճառի ժամանակաշրջանից անցել է ավելի քան քառասուն տարի։ Բայց այն պատգամ է նաև այսօրվա համար։ Կոմունիստական պարտիան, հենվելով մեր երկրի բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության, սովետական ինտելիգենցիայի ուժերի վրա, վստահ է, որ յոթնամյակի առաջադրանքները կկատարվեն ժամկետից շուտ։

Մեր լայնարձակ ու հզոր սոցիալիստական Հայրենիքը գտնվում է իր ուժերի ծաղկման շրջանում։ ՍՄԿԿ Կենտկոմի այս տարվա Հունվարյան պլենումի որոշմամբ 1961 թվականի հոկտեմբերի 17-ին հրավիրվում է պարտիայի հերթական XXII համագումարը, որը խոշոր իրադարձություն է հանդիսանալու մեր երկրի և համաշխարհային քաղաքական կյանքում։ Համագումարը հանրագումարի է բերելու այն հոյակապ նվաճումները, որոնք ձեռք է բերել մեր ժողովուրդը վերջին ժամանակաշրջանում և ծրագրային վիթխարի խնդիրներ է առաջադրելու՝ մեր երկրում կոմունիզմի կառուցման գործն արագացնելու, սովետական ժողովրդի բարեկեցությունը բարձրացնելու և ամբողջ աշխարհում խաղաղությունն ապահովելու նպատակով։ Սովետական ժողովուրդը վստահորեն առաջ է գնում մեծ Լենինի նշած ուղիով՝ կոմունիզմի ուղիով։ Նա համարձակ նայում է առաջ. իր երջանիկ ապագային և պարզ տեսնում այն բարձունքը, որը կոչվում է յոթնամյակ։ Սովետական մարդիկ հաստատ համոզված են, որ եթե յոթնամյակի առաջին երկու տարիների արդյունքները փայլուն են, ապա այս տարին կբերի նորանոր, ավելի մեծ հաջողություններ։

Մեր երկրի աշխատավորները, Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, ուժ ու եռանդ չեն խնայի յոթնամյա պլանը կատարելու, կոմունիզմի լուսաշող գագաթին հասնելու համար։

---

# ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ՊԱՅՔԱՐԸ ՀԱՆՈՒՆ ԿՈՄՈՒՆԻԶՄԻ՝ ՄԱՐԴՈՒ «ՕՏԱՐՈՒՄԸ» ՀԱՂԹԱՀԱՐԵԼՈՒ ՈՒՂԻՆ Է

ՌՈԺԵ ԳԱՐՈԴԻ

Ֆրանսիայում և մի շարք այլ կապիտալիստական երկրներում բարոյականության հարցերում մարքսիստների և նրանց գաղափարական հակառակորդների միջև վերջին տարիներին ծավալված սուր վիճաբանության ընթացքում խոշոր նշանակություն ձեռք բերեց այսպես կոչված «օտարման» պրոբլեմը։ Բուրժուական փիլիսոփաների (Ժ. Պ. Սարտր, Մ. Մերլո-Պոնտի, Պ. Բիգո, Մ. Ռուբել), ինչպես և Լեֆևրի ու Ֆուժերոլասի տիպի ռևիզիոնիստների կողմից «օտարում» հասկացությամբ սպեկուլյացիա կատարելու և դրան մետաֆիզիկական ու իդեալիստական իմաստ տալու միջոցով մարքսիզմն աղավաղելու շարունակվող փորձերը մեզ ստիպում են հանգամանորեն անդրադառնալ այդ հասկացության մեջ մարքսիստների կողմից դրվող իրական բովանդակության վրա, որովհետև «օտարում» հասկացության ճիշտ, մատերիալիստական և դիալեկտիկական բացատրությունը, մեր կարծիքով, խոշոր նշանակություն ունի բարոյականության նկատմամբ պրոլետարական, ռևոլյուցիոն, կոմունիստական հայացքների հիմնավորման մեջ։

### 1. Ի՞ՆՉ Է ՀԱՍԿԱՆՈՒՄ ՄԱՐՔՍԻԶՄԸ «ՕՏԱՐՈՒՄ» ԱՍԵԼՈՎ

Մարքսի կողմից նրա վաղ շրջանի երկերում «օտարում» հասկացության մատերիալիստական մեկնաբանումը հեշտացնում է հասարակության իրական կյանքի բազմաթիվ կարևոր հարցերի ըմռնումը։ «Օտարման» և նրա աղբյուրների մասին գիտական հայեցակետն օգնում է բնության մեջ մարդու ուրույն տեղի և բիոլոգիական էվոլյուցիայի նկատմամբ մարդկային հասարակության պատմության յուրահատկության բացահայտմանը։

Ի տարբերություն կենդանիներից, որոնք բիոլոգիական էվոլյուցիայի արդ-

---

**Գարոդի Ռոժե** (ծն. 1913)—Ֆրանսիայի ականավոր հասարակական-քաղաքական գործիչ. ֆրանսիական Կոմունիստական պարտիայի Կենտկոմի անդամ և Քաղբյուրոյի անդամության թեկնածու։ Նա Ֆրանսիական աչքի ընկնող տեսաբան-մարքսիստներից է, հանուն գիտական մատերիալիստական աշխարհայացքի և բանվորական շարժման մեջ նրա հաղթանակի անխոնջ մարտիկը։ Նրա գրչին են պատկանում փիլիսոփայության, բարոյականության, կուլտուրայի բանվորական շարժման պրոբլեմներին նվիրված բազմաթիվ աշխատություններ՝ «Կոմունիզմը և բարոյականությունը», Գիտական կոմունիզմի ֆրանսիական աղբյուրները», «Մարքսիզմը և մարդկային անհատը», «Ճանաչողության մատերիալիստական տեսությունը», «Ազատությունը» (Մ. Թորեզի առաջաբանով), «Մարքսիստական հումանիզմ» և այլն։

ցեսում համարվում են բնությանը, մարդը վերափոխում է այն։ Ծվ բնության
այս վերափոխումից էլ սկսվում է նրա պատմությունը։ Բնության վերափո-
խումը մարդն իրականացնում է աշխատանքի պրոցեսում։ Աշխատանքը ծնում
է մարդուն։ Յուրահատուկ մարդկային է այն, որ բնության վերափոխումը
մարդկանց կողմից իրականացվում է հասարակական արտադրության պրոցե-
սում նրանց մտածողության մասնակցությամբ։ Ինչպես Մարքսն էր նշում «Կա-
պիտալում».

«...ամենալավ ճարտարապետը ամենալավ մեղվից տարբերվում է նրանով,
որ ճարտարապետը նախքան բջիջը մեղրամոմից կառուցելը այն արդեն կառուցել
է իր գլխում: Աշխատանքի պրոցեսի վերջում ստացվում է այն հետևանքը, որն ար-
դեն կար աշխատողի պատկերացման մեջ այդ պրոցեսն սկսելիս, այսինքն՝ իդեալա-
պես... Բնության տվածի մեջ նա միաժամանակ իրականացնում է իր գիտակցական
նպատակը, որն իբրև օրենք որոշում է նրա գործողությունների եղանակն ու
բնույթը...»

Այսպիսով, մարդկային գործունեությանը բնորոշ է այն, որ նրա մեջ ներ-
կա է գիտակցական վերջնական նպատակ, որին հասնելուն էլ հենց ձգտում է
մարդը։ Հենց այդ պատճառով էլ մարդկանց վարքի մեջ կա որոշակի իմաստ,
նպատակայնություն։

Պատմության մատերիալիստական ըմբռնումը, նրա քննադատների պնդ-
մանը հակառակ, չի ժխտում հասարակության զարգացման մեջ ո՛չ իմաստի,
ո՛չ էլ նպատակի առկայությունը: Սակայն մարքսիզմը պատմությունը ոչ բն
դրանցից է բխեցնում, այլ, ընդհակառակը, դրանք պատմությունից—վերջին
դրանցից է բխեցնում, այլ, ընդհակառակը, դրանք պատմությունից—վերջին
հաշվով նյութական արտադրության իրական շարժումից է բխեցնում: Հասա-
րակության զարգացումը, ի տարբերություն բնության զարգացման, ավտոմա-
տիկորեն տեղի չի ունենում։ Ինչպես Էնգելսն էր նշում, «այն բոլորը, ինչ մար-
դուն գործունեության է դրդում, պետք է անցնի նրա գլխի միջով», և, նշանա-
կում է, հասարակական պրոցեսները, եթե առկա են նրանց համար անհրաժեշտ
նյութական պայմանները, շատ բանով կախված են նրանից, թե մարդիկ ինչ
իմաստ են դնում իրենց արարքների մեջ և ինչ նպատակներով են ղեկավարվում.
այսինքն՝ կախված են սուբյեկտիվ գործոնից։ Իհարկե, և՛ այդ իմաստը, և՛ այդ
նպատակները մարդկանց կողմից կամայականորեն չեն որոշվում. Նրանք
պատմականորեն պայմանավորված են վերջին հաշվով տնտեսական զարգա-
ցումով:

«Դրա համար էլ,— նշում էր Մարքսը,— մարդկությունն իր առջև միշտ այն-
պիսի խնդիրներ է դնում, որոնք ինքը կարող է լուծել, որովհետև անմիջական
քննարկման ժամանակ միշտ այնպես է դուրս գալիս, որ ինքը՝ խնդիրն առաջանում
է այն ժամանակ միայն, երբ նրա լուծման նյութական պայմաններն արդեն առկա
են ու կամ էլ, ծայրահեղ դեպքում, կազմավորման պրոցեսի մեջ են»:

Մարդկանց գործունեության մեջ որոշակի իմաստ տեսնել, այսինքն՝ չբա-
վարարվել նրանով, որ մարդը բացատրվի որպես մի շարք պատճառների ա-
ծանցյալ և, հետևապես, նրան չվերաբերվել որպես իրի, այլ հասկանալ նրա
նպատակները, վերծանել նրա վարքի «նշանակությունը»՝ դա իսկապես մարդ-
կային հարաբերությունների հիմնական սկզբունքն է, բարոյական պահանջ՝
մոտենալ մարդուն նրա մարդկային էության տեսակետից, որպես աշխատող,
ստեղծող, ստեղծագործող, այսինքն՝ իր գործունեության պրոցեսում գիտակ-
ցորեն նպատակներ դնող անհատի։



«Օտարման» նախասկզբնական աղբյուրը հասարակական արտադրության
զարգացման պրոցեսն է, որն ուղեկցվում է աշխատանքի հետզհետե աճող բա-
ժանումով. հողագործությունից անասնապահության և այնուհետև արհեստի
անջատումով, ֆիզիկական աշխատանքից մտավոր աշխատանքի անջատումով
և աշխատանքի հետագա աճող մասնագիտացումով։ Այդ պրոցեսն ինքնին
առաջադիմական բնույթ ունի, որովհետև թույլ է տալիս մեծացնել հասարա-
կության ընդհանուր արտադրողական ուժը։ Արտադրության գործիքների ու մի-
ջոցների նկատմամբ մասնավոր սեփականության երևան գալու, հասարակա-
կան դասակարգերի առաջացման հետ միասին այդ պրոցեսն ստանում է ան-
տագոնիստական բնույթ։ Մասնավոր սեփականությունը և հասարակությունը
թշնամական դասակարգերի մասնատվելը հանգեցնում են նրան, որ աշխա-
տանքի հասարակական բաժանումն ընդունում է աշխատավորից մարդուն հա-
տուկ առանձին կենսական ֆունկցիաների՝ հոգևոր ստեղծագործության, իր աշ-
խատանքի արդյունքի կարգադրման, արտադրության ղեկավարման և այլնի
«օտարման» ձև։ Դրանք վերածվում են մարդկանց առանձին արտոնյալ խմբերի
(պաշտոնյաների, հոգևորականների, հողատերերի ու ձեռնարկատերերի) հա-
տուկ ֆունկցիաների, անձնավորվում են պետության, շուկայի, եկեղեցու տես-
քով, ձեռք են բերում որոշ ինքնուրույնություն և աշխատավորին հակադրվում
են որպես նրա նկատմամբ արտաքին և նրան թշնամի ուժ։ Այս իրական օտար-
ման հողի վրա դասակարգային հասարակության մեջ կազմավորվում է
«օտարման» յուրահատուկ գաղափարախոսությունը՝ կրոնը, իդեալիզմը, պե-
տության պաշտամունքը և այլն։

Անտագոնիստական հասարակության զարգացմանը զուգընթաց, մի ֆոր-
մացիայից մյուսին անցնելու հետ միասին, օտարման պրոցեսն ավելի ու ավե-
լի քողարկված բնույթ է ստանում։ Ստրկատիրական հասարակարգում ստրուկի
աշխատանքը օտարվում էր ամենապրիմիտիվ և բացահայտ ձևով՝ նրա անձի
հետ միասին։ Ֆեոդալական հասարակարգում աշխատանքն օտարվում էր գլ-
խավորապես ռենտային (աշխատավճարային, բնամթերային և ապա դրամա-
յին) ձևով, իսկ կապիտալիստական հասարակարգում բանվորի աշխատանքի
օտարումը կատարվում է թաքնված ձևով, հավելյալ արժեքի տեսքով։

Աշխատավոր մարդու օտարումն առավել լրիվ և ավարտված արտահայ-
տություն է ստանում հենց կապիտալիստական հասարակարգի պայմաննե-
րում։ Մինչ այդ, նրան նախորդող բնական տնտեսության մեջ, աշխատավորի
արտադրած արդյունքը, որպես կանոն, ամբողջովին նրա անձնական արտա-
դրանքն էր, և աշխատողը բավականին հստակ պատկերացում ուներ արդյուն-
քի նպատակի և սպառարժեքի մասին, թեև չէր կարող այն տնօրինել իր ցան-
կությամբ։ Դրա համար էլ նույնիսկ հարկադրական աշխատանքը չէր կարող
ստրուկի, ճորտի, արհեստավորի մոտ սպանել ստեղծագործության և ոգևորու-
թյան ամբողջ հաճույքը. մենք մինչև այժմ էլ հիանում ենք նրանց բազմաթիվ
բարձր գեղարվեստական ստեղծագործություններով։ Իսկ մեքենայական ար-
տադրության պայմաններում, կապիտալիզմի ժամանակ բանվորը ոչ միայն
զրկված է իր ստեղծած արդյունքը տնօրինելու իրավունքից, այլև աշխատանքի
բուն պրոցեսը նրա համար ավելի ու ավելի է կորցնում ստեղծագործական
բնույթը, բանվորը հաճախ կորցնում է պատկերացումը իր պատրաստած
առանձին դետալի իմաստի ու նպատակի մասին, ստեղծված սպառողական

արժեքի մեջ իր անձնական բաժնի մասին, որովհետև արտադրության վերջնական արդյունքը բոլորովին անդեմ է թվում։

Մարդը կտրվում է իր աշխատանքի արդյունքից. այն կյանքը, որ աշխատավորը տալիս է առարկային, իր սեփական ստեղծագործությունը չէ, որի միջոցով նա վերափոխում, մարդկայնացնում է բնությունը, ընդհակառակը. գրում էր Մարքսը՝ «1844 թ. տնտեսագիտա-փիլիսոփայական ձեռագրերում», «...աշխատանքի կողմից արտադրվող առարկան, նրա արդյունքը, հակադրվում է աշխատանքին որպես ինչ որ օտար էակ, որպես մի ուժ, որը կախված չէ արտադրողից»։ (К. Маркс и Ф. Энгельс, «Из ранных произведений», М.. 1956, стр. 560)։ Աշխատավորը կորցնում է գիտակցական վերահսկողությունն իր աշխատանքի նպատակի նկատմամբ և իրականացնում է այլ, կողմնակի մարդկանց նպատակները, որոնց մասնավոր սեփականությունն են արտադրության գործիքներն ու միջոցները, և, հետևապես, նաև աշխատանքի արդյունքը. Կապիտալիստական ձեռնարկության մեջ բանվորն իր անձնական ստեղծագործությունը չի ստեղծում. Նա կուրորեն մասնակցում է անանուն «ապրանքների», անանուն «հավելյալ արժեքի» պատրաստմանը։ Նա դադարում է նպատակներ դնող լինելուց, և դառնում է միջոց, արտադրության նույնպիսի միջոց, արտադրական օբյեկտիվ պրոցեսի նույնպիսի մոմենտ, ինչպիսին նրա աշխատանքի գործիքներն են։ Այսպիսին է կապիտալիստական հասարակության մեջ աշխատավորի «օտարման» առաջին կողմը:

Երկրորդ կողմն արդեն ոչ միայն արդյունքի, այլև աշխատանքի բուն պրոցեսի օտարումն է. բանվորի աշխատանքն ավելի ու ավելի է դադարում ինչ որ բան ստեղծելու, ստեղծագործելու, իր ստեղծագործական տվյալները, տաղանդը, ընդունակություններն արտահայտելու ներքին պահանջմունք լինելուց. բանվորի աշխատանքը՝ նրա նպատակների օտարման հետևանքով ավելի ու ավելի է վերածվում արտաքին հարկադրման։ Բանվորի գործողություններն ու վարքը որոշվում են դրսից, հասարակական արտադրության և սոցիալական հարաբերությունների բարդ սիստեմում նրան հատկացված տեղով, կանխորոշվում են արտադրության տեխնոլոգիայով։ Բանվորին փաստորեն հատկացվում է պողպատե կառուցվածքների կենդանի կցորդի դեր։

Կապիտալիզմի ժամանակ, ընդգծում է Մարքսը, աշխատանքը — «...աշխատանքի պահանջմունքի բավարարումը չէ, այլ սոսկ ուրիշ պահանջմունքների, քան աշխատանքի պահանջմունքը, բավարարման միջոց»: Այն, ինչ մարդու մեջ իսկապես մարդկայինն ու ստեղծագործականն է՝ աշխատանքը՝ կապիտալիզմի պայմաններում աշխատողի համար հանգեցվում է նեղ բիոլոգիական պահանջմունքների բավարարման միջոցի. «...օտարված աշխատանքը... մարդու ցեղային կյանքը վերածում է նրա ֆիզիկական գոյությունը պահպանելու միջոցի» (նույն տեղում, էջ 563, 567)։ Եվ դա՝ աշխատանքի օտարման երրորդ կողմն է։

Աշխատանքի օտարումը ծնում է օտարման մյուս բոլոր ձևերը, որովհետև աշխատանքի օտարումով մարդկանց միջև հարաբերությունները կեղծվում են. նրանք ենթարկվում են շուկայի անդեմ, տարերային օրենքներին մի հասարակության մեջ, որտեղ աշխատանքի արդյունքը դարձել է «ապրանք», մարդիկ մեկը մյուսի համար վերածվել են միջոցի։ Կանտի հռչակած «կատեգորիկ իմպերատիվը»՝ մարդուն ոչ միայն որպես միջոց, այլև առաջին հերթին որպես նպատակ դիտելու կոչը՝ հակասության մեջ ընկավ կապիտալիստական հասարա-



կության իրական բարոյական հիմքերի հետ, որովհետև կապիտալիզմի հաղ-
թանակը ակնհայտ դարձրեց խզումն այդ անմարդկային աշխարհի և կապի-
տալիզմի օրոք ոչ մի իրական հիմք չունեցող նպատակների թագավորության
պահանջների միջև։ Կապիտալիստական աշխարհն իրականում Կանտի իդեալի
տրամագծային հակադրությունն է։ Աշխատավոր մարդուն ամենևին էլ չդիտե-
լով որպես նպատակ, կապիտալիզմը նրան վերածում է սոսկ ձեռնարկատեր-
կապիտալիստի համար հավելյալ արժեք արտադրելու, շահույթ ստանալու
միջոցի:

Երբ, օրինակ, կապիտալիստը հրաժարվում է բարձրացնել բանվորների
աշխատավարձը, մատնանշելով, թե իր համար անհնարին է առանց ձեռնար-
կության գոյությունը սպառնալիքի տակ դնելու մեծացնել արտադրության
ծախքերը և ապրանքի ինքնարժեքը, ապա նա ճրտահայտում է մի անանուն
օրենք, որը ղեկավարում է ողջ սիստեմն ամբողջությամբ վերցրած և մարդկա-
յին կարգի նկատառումների հետ ոչ մի ընդհանուր բան չունի։ Այնպես է ստաց-
վում, որ կարծես թե անշունչ իրերի՝ ապրանքների և դրանցից բխող հարաբե-
րությունների ճակատագրական անհրաժեշտությունն է հրամայում մարդկանց։
Ճակատագրի, աստվածության նման հեռավոր, խորթ, անդեմ արտադրության
ծախսերը, շուկան, արժեքը, մրցակցությունը՝ ահա թե ինչն է իշխում մարդ-
կանց վրա։ Այդ «աստվածությունները» ոչ մի կապ չունեն աշխատավորի կա-
րիքների, ինչպես և ձեռնարկատիրոջ անձնական արատների կամ առաքինու-
թյունների հետ։ Մարդիկ, նրանց արարքներն ու մտքերը, նրանց փոխհարաբե-
րությունները իրենց համար խորթ իրերի օբյեկտիվ զարգացման մոմենտներն
են դարձել։ Մարդկանց միջև հարաբերությունների տեղը գրավել են իրերի մի-
ջև հարաբերությունները։

Իր ավարտված, կապիտալիստական ձևով ապրանքային հասարակության
զարգացումը ծնում է այնպիսի հասարակական հարաբերություններ, որոնց
մեջ մարդը կարծես թե բացակայում է. անմարդկային գույֆային օրենքների
մեջ օտարված, նա կորցնում է մարդկային էության կարևորագույն կողմը՝
գիտակցորեն իր առջև նպատակներ դնելը և աշխատանքով դրանց հասնելը։
Նման օտարումն արտահայտվում է հասարակության կյանքի բոլոր
ոլորտներում, այն անմարդկայնացնում է մարդուն։ Էկոնոմիկայի մեջ՝ դա «ապ-
րանքային ֆետիշիզմն» է, որը Մարքսի կողմից հանգամանորեն վերլուծված
է «Կապիտալում»։ Քաղաքականության մեջ՝ դա բուրժուական մտածողության
յուրահատուկ մոլորությունն է բուրժուական պետության իբր թե վերդասա-
կարգային լինելու մասին։ Հոգևոր տեսակետից իրական աշխարհը, ինչպես
այդ հոյակապ ցույց է տվել Արագոնը, «երկվացած մարդկանց» աշխարհն է։
Այն դեպքում, երբ մտածողությունը մարդու բուն իսկ էության համաձայն ան-
ընդհատ ստեղծագործության՝ գիտակցված նպատակների աշխարհի ստեղծա-
գործության մոմենտ է, օտարված աշխարհում գիտակցությունը վերածվում է
մարդու իշխանությունից խուսափող և նրան թշնամի իրականության երևա-
կայական փոխհատուցման, որովհետև այն կոչված է մարդկանց իրական աշ-
խարհից ցնորքների աշխարհը փոխադրելու (կրոնը, իդեալիստական աշխար-
հայացքը)։ Օտարման աշխարհը պատկերվում է որպես իրական աշխարհ, այն-
ինչ մարդկային իրական կեցության աշխարհն իջեցվում է մինչև ցնորքը։
Կապիտալիզմն իրերի տիրապետությունն է մարդու վրա. ընդ որում մարդ-
կանց հասարակական և անձնական հարաբերությունները իրայնացված են ոչ

միայն նրանց գիտակցության մեջ, այլ ռեալորեն, ընդհուպ մինչև առօրյա
կյանքը։ Բուրժուական աղճատված գիտակցությունը սոսկ իրերի այդ իրական
վիճակի արտացոլումն է գաղափարախոսության մեջ։ Առ ու ծախի աշխարհում
ամուսնանում են ոչ թե կնոջ, այլ նրա օժիտի հետ. մարդիկ ընկերներ են ընտ-
րում նրանց, ումից նյութական օգուտ կարելի է ստանալ. ժառանգության սերը
դուրս է մղում ծնողների նկատմամբ եղած սերը. մարդուն հարգում են ոչ
թե նրա անձնական արժանիքների, այլ նրա ունեցվածքի կամ պաշտոնի հա-
մար. արվեստի գործերը, գերմոդայիկ ավտոմոբիլը ձեռք են բերվում ոչ թե
նրա համար, որ մարդ դրանց պահանջն է զգում, այլ ցույց տալու համար, թե
«նա ինքը քանի դոլար արժե»։ Եվ ի՞նչ կարող է ծառայել որպես մարդկային
զգացմունքների վրա իրերի այդ տիրապետության ավելի ակնհայտ ապացույց,
քան ժամանակակից աբստրակտ արվեստի ցուցահանդեսները, որոնք իրենցից
ներկայացնում են ժանգոտ երկաթի, երկաթալարի ու լաթերի մի աղբանոց,
որը մատուցվում է մարդկանց զգացմունքների ու արարքների պատկերացման
փոխարեն։

Անտարակույս, մարդկության նյութական և հոգևոր մշակույթը կապիտա-
լիզմի էպոխայում վիթխարի առաջադիմություն է կատարել։ Սակայն այդ
առաջադիմության իրական շարժառիթը ոչ թե գիտությունը, տեխնիկան կամ
արվեստն են, այլ շահույթի մրցավազքը։ Ահա թե ինչու կապիտալիստական
հասարակության կուլտուրական նվաճումների մեծ մասը հանդես է եկել կամ
օտարման այդ տիրապետող ձգտմանը հակառակ, որպես նրա դեմ բողոք, ինչ-
պես քննադատական ռեալիզմի գրականությունն ու արվեստը, կամ էլ, գիտա-
կան հայտնագործությունների ու տեխնիկական գյուտերի նման, որպես նրա
կողմնակի արդյունք:

## 2. ԲԱՆՎՈՐ ԴԱՍԱԿԱՐԳԻ ՊԱՏՄԱԿԱՆ ՄԻՍԻԱՆ

Օտարումը հաղթահարելու համար բավական չէ այն ըմբռնելը։ Անհրա-
ժեշտ է վերափոխել «օտարում» ծնող աշխարհը, անհրաժեշտ է ստեղծել մի
նոր աշխարհ, որը վերացնում է օտարման պատճառները։ Այսպիսով, պրոլե-
տարիատի դասակարգային պայքարը կապիտալիստական հասարակության
մեջ դառնում է օտարման պրոբլեմի լուծման պայման:

Ի տարբերություն կապիտալիստական հասարակության մյուս բոլոր դա-
սակարգերից, պրոլետարիատն է միայն, Մարքսի արտահայտությամբ, խոսում
համամարդկային անունից, քանի որ կապիտալիզմի պայմաններում նա հան-
գեցված է մարդու ամենախոր էությանը՝ աշխատանքին որպես այդպիսին, և
մարմնավորում է մարդու այդ էությունը։

Հետևապես, պրոլետարիատի տարբերությունը մյուս բոլոր դասակարգե-
րից ունի արմատական բնույթ։ Չքավոր գյուղացու, մանր արհեստավորի կամ
խանութպանի պահանջմունքները, եթե նրանց նյութական վիճակը նույնիսկ
ավելի աղետալի է, քան որակյալ բանվորի վիճակը, սովորաբար կապված են
արտադրության այն միջոցների՝ հողակտորի, աշխատանքի գործիքների կամ
մանր խանութների հետ, որոնց նրանք տիրում են և որոնք, մյուս կողմից իշ-
խում են հենց իրենց վրա։ Նրանց պահանջները իրենց վզին փաթաթված են
«դրսից», արտաքին հանգամանքների կողմից։ Գյուղացին, արհեստավորը,
խանութպանը կարծես թե տեղակալված ու օտարված են իրենց սեփականու-



թյան կողմից և կրում են այն բոլոր ձախորդությունները, որոնք նրանց գլխին
թափվում են՝ որպես դրանց տերերի։ Նրանց վարքը, որոշակի չափով, թելա-
դրված է այդ «ունեցվածքով», այն դեպքում, երբ պրոլետարիատի պայքարը
ենթարկված չէ ոչ մի առանձնահատուկ շահի. այն նրա գոյության պարզ պա-
հանջն է։ Պրոլետարիատը կարող է ապրել միայն իր աշխատուժը արտադրու-
թյան միջոցների տիրոջը վաճառելով. գոյության նրա բոլոր հնարավորություն-
ները կապված են արտադրության միջոցների խոշոր սեփականատերերի դեմ.
կապիտալի դեմ մղվող դասակարգային պայքարի հետ։

Չնայած իր բանվորական ուժն ավելի շահավետ վաճառելու համար բան-
վորների ամենօրյա պայքարին և այդ պայքարի ընթացքում ժամանակավորա-
պես ձեռք բերվող հաղթանակներին, բացարձակ աղքատացման օրենքը պրո-
լետարիատին զրկում է պատմականորեն որոշակի իմաստով (տեխնիկական,
տնտեսական, գիտական, կուլտուրական, բարոյական առաջադիմությամբ) իս-
կական մարդկային գոյություն վարելու համար բավարար միջոցներից։ Մեր
ժամանակաշրջանում, երբ ձեռք են բերված տիեզերական տարածության յու-
րացման մեջ մարդու առաջին նվաճումները, երբ իրականանում են տարրերի
փոխարկման մասին ալքիմիկոսների երազանքները և մարդկանց առաջ բաց-
վում են երկրի ընդերքի անսպառելի հարստությունները, երբ մարդուց մեկը
մշտապես թերսնվում է և հարյուր միլիոնավոր մարդիկ անգրագետ են մնում։
Բանվոր դասակարգի բացարձակ աղքատացումը նշանակում է, որ առկա է մե-
ծացող խզումը աշխատավորի պատմականորեն որոշակի պահանջմունքների և
այն միջոցների միջև, որոնք նա ունի փաստորեն այդ պահանջմունքների բա-
վարարման համար:

Մարդը չի կարող մարդ լինել առանց ոչնչացնելու կապիտալիզմի ժամա-
նակ նրա վրա տիրապետող իրերի երկաթյա օրենքները։ Այսպիսին է պրոլետա-
րիատի ռևոլյուցիոն պահանջի փիլիսոփայական իմաստը։ Բանվորի համար
ապրելու, մարդավայել ապրելու ձգտումը նշանակում է վերացնել այն հասա-
րակական կարգը, ուր իշխում է արտադրության միջոցների և գործիքների
մասնավոր սեփականությունը, ուր իշխում է աշխատավորին անմարդկայնաց-
նող, նրան ստորացնող աղքատացման օրենքը։ Բանվորի համար մարդկայնո-
րեն ապրելը նշանակում է հասնել արտադրության միջոցների և գործիքների
հասարակական սեփականության վրա հիմնված սոցիալական կարգի հաս-
տատմանը։ Թեկուզ և այս կամ այն երկրում բանվորների մի զգալի թիվ դեռևս
պարզ պատկերացում չունի այդ հեռանկարի և իր դասակարգի պատմական
միսիայի մասին, այնուամենայնիվ, այնտեղ էլ նույնիսկ ամենափոքր
պահանջների առաջադրումը, սահմանափակ չափերի գործադուլը, կյանքի հա-
սարակ իրավունքի համար պայքարը հարցականի տակ են դնում կապիտալիս-
տական հասարակարգի գոյությունն ամբողջությամբ վերցրած։ Մարքսի հան-
ճարեղությունը հենց այն էր, որ նա հայտնագործեց բանվոր դասակարգի պայ-
քարի պատմական նշանակությունը և համամարդկային իմաստը։

Պրոլետարիատի պատմական միսիայի իրականացումը հնարավոր դար-
ձավ այն ժամանակ, երբ կապիտալիզմի հաստատումով «օտարումը» ընդհա-
նուր բնույթ ընդունեց և ծնեց իր սեփական հաղթահարման ու բացասման
օբյեկտիվ պայմանները. որովհետև կապիտալիզմի զարգացումը, արտադրու-
թյան և սեփականության համակենտրոնացմանը զուգընթաց ուղեկցվում է ոչ
միայն մանր սեփականատերերի մասսայական քայքայումով, այլև խոշոր սե-









փականատերերի՝ արտադրության մեջ հասարակականորեն օգտակար որևէ ֆունկցիայից առաջադիմող ինքնաօտարումով։ Կապիտալիզմն ավելի ու ավելի անձնավորվում է ոչ թե առանձին ձեռնարկատիրոջ անձի, այլ անանուն կոմպանիաների, փայատիրական ընկերությունների և կորպորացիաների, ինչպես և բուրժուական պետության կերպարով, որը՝ արդի պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի պայմաններում դառնում է ազգայնացված ձեռնարկությունների սեփականատերը և բյուջեի միջոցով ազգային եկամտի զգալի մասը վերաբաշխում է պետական ապարատն իր ձեռքում պահող որոշակի մոնոպոլիստական խմբերի օգտին։ Կապիտալիստները, որոնք վաղուց արդեն դադարել են հասարակականորեն անհրաժեշտ ֆունկցիաներ կատարելուց, դարձել են հասարակական վերարտադրության պրոցեսի համար ավելորդ պորտաբույծ դասակարգ։ Եվ այդ հանգամանքը մի ավելորդ անգամ վկայում է արտադրության գործիքների ու միջոցների սոցիալիստական հանրայնացման, դրանք ժողովրդի սեփականություն դարձնելու պատմական անհրաժեշտության մասին։

Դրա հետ միասին արդեն կապիտալիզմի ընդերքում հասունանում են աշխատավոր մարդու օտարումը վերացնելու կարող հասարակական ուժերը։ Առանձին անհատների բողոքից, մասսաների տարերային բունտերից հասարակական կյանքի բոլոր ոլորտներում աճում է ազատագրական շարժումը բանվոր դասակարգի, որը կոչված է բարոյականորեն վերածնել մարդկությունն ու քաղաքակրթությունը, աշխատավորին վերադարձնել նրա աշխատանքի պտուղները, ստեղծագործության բերկրանքը, իր ունակությունները զարգացնելու և իր սեփական ճակատագիրը տնօրինելու ազատությունը, այսինքն՝ վերադարձնել մարդուն անտագոնիստական հասարակարգի կողմից օտարված հատկությունները։ Հենց կապիտալիստական ճնշման դեմ բանվոր դասակարգի և հասարակության բոլոր առաջադիմական ուժերի պայքարի շնորհիվ է, որ օտարումը չի կարող բացարձակ դառնալ, ինչպես որ, չնայած սեփականության համակենտրոնացմանը, չի կարող հանդես գալ կաուցկիական «ուլտրաիմպերիալիզմը» միայն մեկ կապիտալիստի գլխավորությամբ։ Օտարման տենդենցին բանվոր դասակարգը հակադրում է իր դասակարգային համերաշխությունը, կարգապահությունն ու կազմակերպվածությունը։ Դասակարգային պայքարի մեջ ցուցաբերած հերոսությունն ու անձնազոհությունը հոգեպես վերածնում են բանվոր դասակարգին, իսկ սոցիալիստական գաղափարախոսությունը նրան թույլ է տալիս դուրս պրծնել կապիտալիստական օտարման նեղ շրջանակներից, գիտակցել իր արմատական շահերը և տեսնել հասարակական զարգացման հեռանկարները։ Իր ազատագրական պայքարով բանվոր դասակարգը իր հետևից տանում է բնակչության մյուս շահագործվող խավերին, բեղմնավորում է մտավորականության ստեղծագործությունը և դնում նոր հասարակության բարոյական հիմքերը։

Քանի որ արտադրության գործիքների ու միջոցների մասնավոր սեփականության առաջացումը ծնում է օտարում, ապա նրանց հանրայնացումը, այսինքն՝ օտարման տնտեսական հիմքի ոչնչացումը կլինի աշխատավոր մարդու իսկական վերածնունդը։ Մարքսը «Կապիտալի» մեջ տալիս է այդ կոնկրետ հումանիզմի տնտեսական հիմքի սահմանումը. կոմունիզմը, գրում է նա, «արտադրության ընդհանուր միջոցներով աշխատող և իրենց անհատական բանվորական ուժերը պլանաչափորեն որպես մի հասարակական բանվորական ուժ ծախսող ազատ մարդկանց միություն է»։ Կոմունիստական հասարակարգում,



մարդկության զարգացման այն աստիճանում, երբ նա իր նյութական և հոգևոր հարստությամբ նույնիսկ հեռավոր կերպով չի հիշեցնի ինքն իրեն՝ իր առաջացման շրջանում, հաստատվում է մարդկային գոյության հիմնական իմաստն ու հիմնական նպատակը՝ կյանքի մեջ մարմնավորվում է ազատագրված, ստեղծագործական, գիտակցական աշխատանքը։

Ընդսմին խոսքն այստեղ ամենևին էլ հավերժական «մարդկային բնության», ինչպես այդ մետաֆիզիկորեն Ֆոյերբախն էր հասկանում, գաղափարի վերաստեղծմանը վերադառնալու մասին չէ, և ոչ էլ Ռուսոյի «առաջինի վայրենու» առասպելի վերածնման մասին։ Մարքսիստները «ոսկե դարի» երկրպագուներ չեն։ «Ամբողջական մարդու» կոնկրետ գոյացումը ենթադրում է ոչ թե վերադարձ դեպի նախնադարյան ժամանակները, այլ տեխնիկայի և գիտության բոլոր նվաճումների, քաղաքակրթության բոլոր նյութական և հոգևոր հարստությունների, ամբողջ կուլտուրայի, մարդկության ամբողջ նախորդ ճիգերի յուրացում, որոնց արդյունքները կոմունիզմի ժամանակ կբազմապատկվեն կոլեկտիվի նոր ուժով։

Սոցիալիստական հասարակության մեջ ոչնչացվում է ամեն մի օտարման տնտեսական հիմքը՝ արտադրության միջոցների մասնավոր սեփականությունը։ Քաղաքի և գյուղի, ֆիզիկական և մտավոր աշխատանքի հակադրության վերացումը և նրանց միջև եղած տարբերությունների հետագա հաղթահարումը վերածնում է ամբողջական մարդուն, որը կոմունիզմի ժամանակ կաշխատի ո՛չ թե արտաքին անհրաժեշտության հետևանքով, այլ ներքին կենսական պահանջով, որն իր ամբողջ կյանքում գամված չի լինի ինչ-որ մեկ մասնագիտության և բավականաչափ ազատ ժամանակ ու նյութական պայմաններ կունենա իր ֆիզիկական և հոգևոր ունակությունների զարգացման համար։

Մարքսը, հայտնագործելով կապիտալիստական հասարակության զարգացման օրենքը, նրա ներքին դիալեկտիկան, ցույց տվեց, որ միայն բանվոր դասակարգի պայքարն է մարդկությանը հնարավորություն ընձեռում հաղթանակ տանել աշխատավոր մարդու օտարման վրա։ Ուրեմն, մարքսիստական բարոյականության առաջին պահանջը անձնվեր մասնակցելն է պրոլետարիատի պայքարին, որի դասակարգային նպատակները համընկնում են բոլոր ճնշվածներին ազատագրելու հետ, մարդկությունը «օտարման»՝ նրա բոլոր ձևերով, շղթաներից ազատագրելու հետ։

## 3. ԲԱՆՎՈՐ ԴԱՍԱԿԱՐԳԻ ԲԱՐՈՅԱԿԱՆ ԻԴԵԱԼԸ

Ի՞նչն է բանվոր դասակարգին բարոյական գերազանցություն ապահովում բուրժուազիայի նկատմամբ։

Եթե, ինչպես պնդում էր Կաուցկին «Էթիկան և պատմության մատերիալիստական ըմբռնումը» գրքում (1906 թ.), խոսքը վերաբերեր միայն նրան, որ արձանագրվեր դասակարգային անտագոնիզմների գոյությունը և կանխատեսվեր, թե ինչ ուղղությամբ է լուծվելու ուժերի կոնֆլիկտը, սահմանվեր, որ կապիտալիզմի ներքին հակասությունների հետևանքով բանվոր դասակարգի հաղթանակը քիչ թե շատ երկարատև ժամանակի ընթացքում անխուսափելի է, ապա բացահայտ հաղթողների բանակի կողմն անցնելն ինքն իրեն դեռևս անբավարար կլիներ ընտրության բարոյական արժեքի հիմնավորման համար։ Դա կլիներ ոչ թե Բաբեֆի և Վալլենի բարոյականությունը, այլ Բոյլերմանի և

Ցուշեի բարոյականությունը: Դա ընդամենը կնշանակեր ելնել զուտ արտաքին անհրաժեշտությունից, որը հատուկ է օտարված աշխարհին, ուր մարդը լոկ մի օղակ է իրերի և դեպքերի շղթայում, ուր մարդկային պատմությունը նույնացվում է բնության պատմության հետ:

Սոցիալիզմի անխուսափելի հաղթանակի մեր վստահությունն ունի ավելի խոր բնույթ. խոսքը ոչ թե մարդուն թշնամական սիստեմի զարգացման արտաքին անհրաժեշտության մասին է, այլ ՆԵՐՔԻՆ անհրաժեշտության մասին, որը ենթադրում է մարդու ակտիվ և գիտակից գործունեություն: Նրանց միջև կա մի անդունդ, որն իրարից բաժանում է մեխանիկական էվոլյուցիան և դիալեկտիկական պրոցեսը: Մեկը յոլա է գնում առանց ինձ, մյուսը պահանջում է իմ մասնակցությունը:

Զուտ արտաքին անհրաժեշտությունն ուրվագծում է զարգացման մի որոշ հեռանկար, բայց ոչ մի ընտրություն թույլ չի տալիս: Իսկ այն անհրաժեշտությունը, որը բանվորին կապիտալիստական հասարակարգի դեմ պայքարի է մղում, նրա կողմից չի ընկալվում պասսիվ կերպով, որպես պատմության իներցիա: Դա կենդանական բնազդի կամ տարերայնության անհրաժեշտությունը չէ. տարերայնությունն իրադրության սոսկ միայն պասսիվ արտացոլումն է, այն, ուրեմն, կարող է հանգեցնել կամ տվյալ հասարակական սիստեմին պարզապես հարմարվելուն, կամ կույր բունտին:

Ինչպե՞ս է իրականացվում անցումը արտաքին անհրաժեշտությունից ներքին անհրաժեշտությանը: Առաջինի դեպքում մարդը լիովին օտարված է, ենթարկված իրերին, այնինչ երկրորդի դեպքում պատմությունը ենթարկված է մարդու գիտակցական վերջնական նպատակին: Դրանք՛ երկու ծայրահեղություններ են: Իրականության մեջ դրանց միջև գոյություն ունեն գիտակցականության և պատասխանատվության բազմաթիվ տարբեր աստիճաններ, այսինքն՝ վերջին հաշվով մարդու կողմից պատմության ընթացքի մեջ ներխուժելու բազմաթիվ տարբեր ձևեր, սկսած Մարքսի կողմից նկարագրված կապիտալիստական ջունգլիներից, որտեղ մարդկանց նպատակները փոխադարձաբար մարվում են, մինչև անդասակարգ, կոմունիստական հասարակությունը, որը բոլոր մարդկանց միավորված ջանքերի շնորհիվ զարգանում է գիտակցական պլանով: Մի աստիճանից մյուսին անցնելիս սուբյեկտիվ գործոնի, գիտակցության դերը մշտապես աճում է: Մարդը՝ պատմության սկզբնապես պասսիվ օբյեկտը, սոցիալիզմի օրոք վերածվում է պատմության ակտիվ սուբյեկտի: Առաջին դեպքում նա նմանեցված է պասսիվ իրի, երկրորդում՝ հասնում է ճշմարիտ մարդկային գործողության՝ գործի լրիվ իմացությամբ:

Ինչպե՞ս է իրականանում այդ անցումը բանվոր դասակարգի գիտակցության մեջ: Այն նպատակները, որոնք հետապնդում է բանվոր դասակարգը, թելադրված են նրան իր պատմական վիճակով, ինչպես, ի միջի այլոց, դա տեղի ունի նաև բոլոր մյուս դասակարգերի նկատմամբ: Ընդ որում բանվոր դասակարգի գիտակցությունը անցնում է զարգացման տարբեր փուլերի միջով: Այն կարող է լինել անմիջական օբյեկտիվ վիճակի պասսիվ արտացոլում: Աշխատավորը, որը հաշտվել է կապիտալիստական հասարակության մեջ տիրապետող գաղափարների, այսինքն՝ ինչպես Մարքսն էր նշում, տիրապետող շահագործողական դասակարգի գաղափարների հետ, կարող է կամ անմիջական օգուտի հետևից ընկնելով վերածվել տիրոջ լրտեսի, կամ փորձել «մարդ դառնալ», կամ գնալ դասակարգային համագործակցության ճանապարհով, կամ, վերջապես,



պարզապես ենթարկվել իր բախտին, որպես ճակատագրական անհրաժեշտության, վերուստ հրամանի: Այս բոլորը՝ շրջապատող աշխարհին, կապիտալիստական կարգին հարմարվելու տարբերակներն են, որոնց համապատասխանում են նման վարքի գաղափարական արդարացման որոշակի տարբերակները:

Ճնշված դասակարգի գիտակցությունը գոյություն ունեցող վիճակին կարող է անդրադառնալ նաև ոչ թե պասսիվ հարմարվելով, այլ հասարակությունը փոխելու ձգտումով: Այդ դեպքում էլ կան տարբեր աստիճաններ: «Բանվոր դասակարգի դրությունն Անգլիայում» գրքում Էնգելսը վերարտադրում է այդ բունտի առաջին էտապները. մասնավոր սեփականության դեմ ելույթներից, մեքենաների ոչնչացումից մինչև գործադուլներն ու արհմիութենական գործունեությունը: Աշխատավորների դրության օբյեկտիվ փոփոխությունը խոշոր դեր է խաղում տարերային բունտարությունից դասակարգային պայքարի կազմակերպված ձևերին անցնելու մեջ: Արդյունաբերության համակենտրոնացումը օբյեկտիվ պայմաններ է ստեղծում բանվորների կողմից իրենց դասակարգային համերաշխության գիտակցման գործում: Բայց նման գիտակցությունը դեռևս ամենօրյա փորձի շրջանակներում է մնում: Եվ եթե մնանք ձեռնարկատերերի և բանվորների միջև այդպիսի անմիջական հարաբերությունների դիրքերի վրա, ապա տնտեսական պայքարի, զուտ արհմիութենական գործունեության և տրեդյունիոնիստական, տնտեսական շահերով սահմանափակվող համապատասխան գիտակցության մակարդակից վեր բարձրանալն անհնարին է (տե՛ս Վ. Ի. Լենին, «Ի՞նչ անել»):

Լենինը ցույց ավեց, որ տարերային բունտից կամ բանվորական ուժի վաճառքի ավելի լավ պայմանների համար մղվող տնտեսական պայքարից իսկապես ռևոլյուցիոն (քաղաքական) պայքարին անցնելու համար բանվոր դասակարգը պետք է քայլի անցնի այդ անմիջական փորձի վրայով: Ռևոլյուցիոն գիտակցությունը, որը բանվոր դասակարգի առջև նպատակ է դնում ստեղծել այնպիսի հասարակական կարգ, ուր բանվորական ուժը դադարում է որպես ապրանք վաճառվելուց, չի կարող ինքն իրեն ծնվել բանվորների և ձեռնարկատերերի միջև սահմանափակ տնտեսական պայքարի հարաբերությունների ոլորտում: Ռևոլյուցիոն գիտակցությունը պրոլետարիատի դասակարգային պայքարի մեջ պետք է դրսից մտցվի գիտության այն առաջավոր ներկայացուցիչների կողմից, որոնք կանգնել են բանվոր դասակարգի դիրքերի վրա, որովհետև այն ենթադրում է մարդկային հասարակության պատմության գիտակցումը ամբողջությամբ վերցրած: Եվ դա բանվոր դասակարգի ժամանակակից պայքարին տալիս է նրա ճշմարիտ նշանակությունը, պրոլետարիատին դարձնում է մարդու բոլոր նախորդ պատմական ճակատամարտերի ժառանգորդն ու շարունակողը և նրա առջև բացում է անդասակարգ հասարակության, առանց օտարման հասարակության, մարդկանց միջև իսկական մարդկային հարաբերությունների հասարակության հեռանկարը: Բանվոր դասակարգի նկատմամբ նոր բարոյականության դաստիարակման խնդիրը կատարում է Կոմունիստական պարտիան, որը նրան տալիս է գիտական սոցիալիզմ:

Այդ բարոյական իդեալը երկնքից չի ընկնում: Այն հանդիսանում է ինչպես անմիջական իրական դրության արտացոլումն ու գիտակցումը, այնպես էլ ընդհանրացումն ամբողջությամբ մարդկային ողջ պատմության՝ սկսած մարդու առաջացումից մինչև անդասակարգ, կոմունիստական հասարակությունը, որ-

տեղ պատմությունը կգտնա մարդկության զարգացումը գիտակցական պլանով։

Բոլոր մյուս դասակարգերի գաղափարախոսությունը սահմանափակ և հակասական է եղել. արտացոլելով պատմական իրողությունը, այն արդարացրել է օտարումը։ Գիտական սոցիալիզմը բոլոր մյուսներից տարբերվող գաղափարախոսություն է, որովհետև այն կյանքի է կոչվել մի դարաշրջանում, երբ կապիտալիզմի պայմաններում օտարումն ստանում է համընդհանուր բնույթ, և, հետևապես, կապիտալիզմը ոչնչացնող դասակարգը պատմության մեջ առաջին անգամ հնարավորություն է ստանում ոչնչացնել օտարումը։

Այսպիսով, ամենախոր պատմական անհրաժեշտությունն այն անհրաժեշտությունն է, որը բխում է հասարակության զարգացման ներքին դիալեկտիկայից, իրականացվում է բանվոր դասակարգի պայքարի միջոցով։ Հենց դրա համար էլ այն օբյեկտիվ վերջնական նպատակի մեջ, որի ուղին լուսավորում է մարքսիստական-լենինյան գիտությունը, ամեն ոք կարող է տեսնել իր անձնական խոր ձգտումները, որոնք համապատասխանում են մարդկության առջև իր պարտքը լրիվ կատարելու ցանկությանը։ Բանվոր դասակարգի նպատակները որպես իր անձնական նպատակներն ընկալելով միայն, բանվոր դասակարգի տեսակետին կանգնելով և նրա պայքարին անձնվեր մասնակցելով միայն կարելի է գործուն աշխատել մարդկության պայծառ ապագան ապահովելու համար։

Այդ իսկ իմաստով բանվորական շարժման և գիտական սոցիալիզմի միավորումը բարոյականության պատմության մեջ վիթխարի նշանակություն ունեցող թռիչք է։ Այն պահից, երբ բանվոր դասակարգն իր պատմական միսիան գիտակցելու շնորհիվ «իր մեջ դասակարգից» վերածվում է «իրեն համար դասակարգի», պատմությունը դադարում է պատճառների ու հետևանքների պարզապես տարերային միահյուսում լինելուց։ Այն գնալով ավելի է դառնում մարդու գիտակցական գործը, կյանքում նրա պլանների ու նրա կոչման մարմնավորումը։

Բանվոր դասակարգի բարոյական գերազանցությունը որոշվում է ոչ թե նրանով, որ արդի հասարակության դասակարգերի պատմական ընդհարման մեջ նա անխուսափելիորեն հաղթելու է, այլ նրանով, որ նա վերածնում է մարդկությունը և նրան տանում դեպի այնպիսի հասարակական կարգ, որը օտարման բոլոր ձևերի դեմ մղված պայքարում հազարամյա ջանքերի մարմնացումն է և տանում է դեպի մարդկային անձի ծաղկում։

Մարդկային բարոյականությունը ձեռք է բերում խոր գիտական հիմնավորում։ Մարդկային պատմության բանական էության գիտակցությունը մի ամբողջություն է կազմում այն գործողության հետ, որի օգնությամբ լուծվում է այդ բանական էությունն իրականության մեջ մարմնավորելու խնդիրը, մի ամբողջություն է կազմում պատմությունը մարդկային վերջնական նպատակին ենթարկելու և իր գոյության իրական իմաստը մարդու կողմից գիտակցորեն կյանքում մարմնավորելու գործում իր ջանքերի մասնիկը ներդնելու կամքի հետ։ Վերածնել ամբողջական մարդուն ազատ հասարակության մեջ՝ այսպիսին է բանվոր դասակարգի պատմական միսիան։

Պարտիան, որը բանվոր դասակարգի համար բացահայտում է պատմության իմաստը, նոր, սոցիալիստական հասարակության ստեղծման հեռանկարներն ու միջոցները, իսկական մարդկային ազատության նախագուշակն է։ Այդ



ազատությունը՝ կամայականություն չէ։ Այն չի առաջանում ոչնչից, ինչպես ազատությունը հայտնվում է էքզիստենցիալիստների, օրինակ, Սարտրի մոտ ընդհակառակը, այն պատվաստված է հասարակական իրական կեցության վրա, կամ ավելի շուտ այն այդ կեցության ստեղծագործական ու գիտակցական ծաղկումն է, որովհետև մարդը ոչ թե միայն իր անցյալն է, այլ ավելի մեծ չափով նա իր ապագան է։ Մարդը՝ ստեղծագործական ճիգ է, որն ուղղված է դեպի ժամանակակից կյանքի հակասությունների վերջնական և լիակատար լուծումը։ Այդ օբյեկտիվ հակասությունների գիտական իմացությամբ և բանվոր դասակարգի պատմական պայքարին ակտիվ մասնակցությամբ միայն հնարավոր է լուծել այդ հակասությունները։ Ազատությունը անհատի կամայականություն չէ, այլ անհատի ստեղծագործական մասնակցությունը պատմական անհրաժեշտության օբյեկտիվ դիալեկտիկային։

Մարքսիստական բարոյականությունը մարդուն բացահայտում է նրա ամբողջ ուժը, ինչպես նաև ամբողջ պատասխանատվությունը, որոնցից նրան զրկում էին օտարման բոլոր ձևերը։ Մարդուն պետք է սովորել ըմբռնել, հուշակեց Մաքսիմ Գորկին, որ նա աշխարհի արարիչն ու տերն է, որ նրա վրա պատասխանատվություն է ընկնում աշխարհի վրա եղած ամբողջ չարիքի համար, փառքը։ բայց որ նրան պատկանում է նաև կյանքի ամբողջ բարիքի

Այս խոսքերն արտասանելուց հետո անցած ժամանակաշրջանում մարդկության մեկ երրորդն արդեն ազատագրվել է անտագոնիստական հասարակության՝ մարդու օտարումը ծնող տարերային օրենքների տիրապետությունից։ Նոր հասարակական կարգը, որը հաղթանակել է երկրագնդի զգալի մասում, բարոյականորեն վերափոխում է մարդուն, կյանքում մարմնավորելով նրա լավագույն հոգեկան և ֆիզիկական հատկությունները։ Սոցիալիզմը հանգեցրել իսկապես մարդկային հարաբերությունների հաստատմանը մարդկանց միջև, որոնք իրենց ճակատագիրն իրենց ձեռքը վերցնելով, պատմության և ապագա սերունդների առջև բարձր պատասխանատվության գիտակցությամբ ամբողջ մարդկության համար ուղի են հարթում դեպի կոմունիստական գալիքը։

*Журнал «Проблемы мира и социализма», № 10, 1960 г.*

# ԽԱՂԱՂ ԳՈՅԱԿՑՈՒԹՅԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ ԿՀԱՂԹԱՆԱԿԻ

Հ. ԳԱԲՐԻԵԼՅԱՆ

Կոմունիստական և բանվորական պարտիաների ներկայացուցիչների 1960 թվականի նոյեմբերի խորհրդակցության ընդունած Հայտարարությունը և ամբողջ աշխարհի ժողովուրդներին ուղղված Դիմումը երկու սիստեմների խաղաղ գոյակցության հարցը համարելով սոցիալիստական երկրների արտաքին քաղաքականության անսասան հիմքը և բոլոր ժողովուրդների անվտանգության կենսական հարցը, կոչ են անում պայքարել սառը պատերազմի դեմ, սպառազինությունների մրցավազքի դեմ, ստեղծել պայքարի ընդհանուր ճակատ ընդդեմ իմպերիալիստների կողմից նախապատրաստվող նոր պատերազմի, որովհետև «մեր դարաշրջանում ժողովուրդներն ու պետություններն ունեն միայն մի ընտրություն՝ խաղաղ գոյակցություն և սոցիալիզմի մրցություն կապիտալիզմի հետ կամ մարդասպան միջուկային պատերազմ: Այլ ճանապարհ չկա»:

Մարդկության պատմության այս չափազանց պատասխանատու պահին կոմունիստները դիմում են բոլոր ժողովուրդներին, բոլոր նրանց, ովքեր չեն ցանկանում նոր, արյունահեղ պատերազմներ և կայուն խաղաղության են ձգտում, ավելի ակտիվ գործունեություն ծավալել, պահանջել անհապաղ պայմանագիր կնքել ընդհանուր, լրիվ և վերահսկվող զինաթափման մասին, որը տևական խաղաղության հաստատման լավագույն գրավականն է:

Կոմունիստները չեն կասկածում, որ մշտական խաղաղության համար սկսված ճակատամարտը հաղթանակով կպսակվի, քանի որ դրա ղեկավարությունը գտնվում է օրեցօր հզորացող սոցիալիստական պետությունների ու 36 միլիոն մարքսիստ-լենինյանների ձեռքում:

***

Կոմունիստների այս օպտիմիզմը բխում է մարդկային հասարակության զարգացման գիտական ըմբռնումից: Նրանք այն տեսակետին են, որ տարբեր արտադրաձևերի գոյակցության հարցը պատմական պրոցեսի օբյեկտիվ օրինաչափությունների հարց է: Բանն այն է, որ արտադրահարաբերությունների, սիստեմների փոփոխությունները ողջ աշխարհում կամ մի որևէ աշխարհամասի բոլոր երկրներում երբեք միաժամանակ չեն կատարվել: Փաստ է, օրինակ, երբ Անգլիան բուրժուական արդյունաբերական հեղաշրջում էր ապրում, Գեր-



մանիայում իշխում էր ֆեոդալիզմը: Մասնավոր սեփականության տիրապետությունը ծնել ու ծնում է տարբեր երկրների զարգացման անհամաչափություն: Նրա գերիշխանության հետևանքով հասարակության բարիքները անհավասար են բաշխվել ոչ միայն առանձին անհատների ու դասակարգերի, այլև ժողովուրդների միջև: Կապիտալիզմը, հատկապես նրա իմպերիալիստական ստադիան, որը մասնավոր սեփականության զարգացման ամենաբարձր ձևն է, առանձին երկրների տնտեսական, ուստի նաև կուլտուրական մակարդակի անհամաչափությունն անասելի չափերի հասցրեց: Այսպիսի պայմաններում, հասկանալի է, որ սոցիալիստական հեղաշրջումը ևս բոլոր երկրներում միաժամանակ կատարվել չէր կարող. սոցիալիզմը պետք է հաղթեր և իսկապես հաղթեց նախ մեկ, այն էլ կապիտալիզմի համեմատաբար թույլ օղակ հանդիսացող երկրում և ապա Ասիայի ու Եվրոպայի մի շարք երկրներում, վերածվելով համաշխարհային սիստեմի՝ կապիտալիստական սիստեմի կողքին: Տարբեր արտադրաեղանակների համատեղ գոյությունը պատմական անխուսափելիություն է եղել ինչպես անցյալում, այնպես նաև մեր օրերում, բայց սկզբունքորեն տարբեր հիմունքների վրա:

Մասնավոր սեփականության վրա հիմնված հասարակարգի պայմաններում պատերազմներն անցած շրջանում ոչ միայն օրինաչափ երևույթ են եղել, այլև պատմական անխուսափելիություն: Բանն այն է, որ մասնավոր սեփականությունը, մանավանդ դրա կապիտալիստական ձևը, միշտ էլ պատերազմներ է ծնել: Ազգերի պատմությունը լի է օրինակներով այն մասին, թե ինչպես մի կտոր հողի, երկրամասի, ազատ շուկայի կամ շահույթի մեկ այլ աղբյուրի համար ստրկատերերը, հողատերերը կամ կապիտալիստներն իրար կոկորդից են բռնել՝ արյան գետեր հոսեցնելով: Բայց այս չի նշանակում, թե ազգերի պատմությունը լոկ պատերազմների պատմություն է: Ամենից առաջ, ազգերը միայն շահագործողներից չեն կազմված, ուստի նրանց ողջ պատմությունը շահագործողների պատմության հետ նույնացնել չի կարելի: Ամեն մի ազգի հիմքն ամենից առաջ աշխատավոր մասսաներն են, որոնք բացարձակ մեծամասնություն են կազմում և զբաղված են երկրի բարգավաճման գործով: Երկրորդ՝ շահագործող դասակարգերը ևս, իրենց վերելքի շրջանում, ոչ միայն պատերազմել են, այլև տնտեսություն են կազմակերպել: Փաստ է, օրինակ, որ 17 և 18-րդ դարերի բուրժուական Անգլիան միշտ չէ, որ պատերազմական հարաբերությունների մեջ է եղել ֆեոդալական Եվրոպայի կամ Ասիայի հետ: Նրանց հարաբերությունների պատմության մեջ կան խաղաղ գոյակցության տարիներ, որի ընթացքում Անգլիան հզորացել ու գերիշխող ուժ է դարձել կապիտալիստական աշխարհում:

Առհասարակ խաղաղ գոյակցության հարցի դրական լուծումը միշտ էլ կախված է եղել հին և նոր արտադրաձևերի ուժերի փոխհարաբերությունից: Երբ նոր արտադրաեղանակն ունակ է իր համար ճամփա հարթել, պատմականորեն նրա հաղթանակն ապահովված է, իսկ հինն էլ անկարող է նրա ընթացքը կասեցնել, այդ դեպքում խաղաղ գոյակցությունը ռեալ հնարավորությունից դառնում է իրականություն: Լավ գիտենալով, որ իրերի օբյեկտիվ ընթացքն անխուսափելիորեն տանում է դեպի հնի պարտությունը, հասարակության առաջադեմ ուժի ներկայացուցիչները պատերազմների կողմնակից լինել չեն կարող, որովհետև պատերազմները պատմական պրոցեսի նորմալ ընթացքը խանգարում են ու դրանով արդեն վերածվում ռեակցիայի տիրապետու-

թյունը երկարացնելու միջոցի: Առաջինները կողմնակից են խաղաղությամբ իշխանազրկելու իրենց հակառակորդներին. վերջիններն են, որ հասարակությունը մղում են դեպի պատերազմներ: «Մեծ հաճույքով բուրժուազիան խաղաղ ճանապարհով ֆեոդալական թագավորությունը կվերածեր բուրժուական թագավորության: Ֆեոդալական պարտիայից խլելով իր բուրժուական հպարտությունը վիրավորող նրա գերբերն ու տիտղոսները, և բուրժուական սեփականությունը խախտող ֆեոդալական սեփականությունից բխող պարտավորությունները, նա մեծ հաճույքով կհաշտվեր ֆեոդալական պարտիայի հետ ու նրա հետ միասին կստրկացներ ժողովրդին: Բայց հին բյուրոկրատիան չի ուզում իջնել մինչև բուրժուազիայի աղախնու դերը, որի համար մինչև օրս նա բռնակալ դաստիարակ է եղել»,— գրում են Մարքսն ու Էնգելսը (Соч. изд. *I*, т. *VII*, стр *8*):

Լինելով ժամանակի առաջավոր ուժը՝ բուրժուազիան հաճախ փորձում էր խաղաղությամբ վերջ տալ ֆեոդալիզմին: Որպես շահագործող դասակարգ նա ձգտում էր այդ նպատակին հասնել ի հաշիվ աշխատավորության՝ համաձայնության գալով հողատերերի հետ: Ուրեմն, բուրժուական ու ֆեոդալական երկրների խաղաղ գոյակցությունը միաժամանակ շահագործող փոքրամասնության կռվի մի ձև էր շահագործվող մեծամասնության դեմ, վերջինի արյան ու քրտինքի միջոցով հարստություն կուտակելու մի եղանակ: Եվ բուրժուական հասարակությունը զարգացել է լայնորեն օգտագործելով և այդ զենքը:

Մեր դարաշրջանի ռևոլյուցիոն դասակարգը պրոլետարիատն է: Նրա նպատակը սոցիալիզմի-կոմունիզմի կառուցումն է: Կոմունիզմը նոր ֆորմացիա է: Եթե նախորդները (բացի նախնադարյան հասարակությունից) հիմնվել են մասնավոր սեփականության վրա, ապա սոցիալիզմ-կոմունիզմը դրա սկզբունքային ժխտումն է, դա այն հասարակությունն է, որի մեջ մարդկությունը լիակատար ազատություն է ձեռք բերում, ազատվելով բուրժուական հասարակության մղձավանջից. այս իսկ պատճառով էլ նրա հարաբերությունը կապիտալիզմի նկատմամբ իր էությամբ հակադիր է ֆեոդալիզմի հանդեպ կապիտալիզմի ունեցած վերաբերմունքին: Հաջորդելով ֆեոդալիզմին, կապիտալիզմը փոխեց մասնավոր սեփականության միայն ձևը, շարունակելով զարգացնել դրանով պայմանավորված դասակարգերի ու ժողովուրդների անտագոնիստական հարաբերությունները, որոնք պատերազմներն անխուսափելի են դարձնում: Սոցիալիզմ-կոմունիզմը մասնավոր սեփականության իսպառ բացասում է, հետևաբար նաև պատերազմների բացասում: «Սոցիալիզմը պատերազմի կարիք չունի: Հին և նոր կարգերի, սոցիալիզմի և կապիտալիզմի միջև պատմական պայքարը պետք է վճռվի ոչ թե համաշխարհային պատերազմի միջոցով, այլ խաղաղ մրցությամբ» (Դիմումից):

Ուստի, սոցիալիզմի առաջացումով հասարակական տարբեր ֆորմացիաների միջև ստեղծվում են բոլորովին նոր, մինչև այդ գոյություն չունեցած հարաբերություններ: Այս դեպքում գոյակցող ֆորմացիաներից մեկը միայն՝ կապիտալիզմն է, որ ծնում է պատերազմներ, իսկ մյուսը՝ սոցիալիզմը, ընդհակառակը, սկզբունքորեն ժխտում է այդպիսիք և իր հզորության աճման հետ միասին դառնում է տակավին գոյություն ունեցող կապիտալիզմը սանձահարող մի մեծ ուժ: Սոցիալիզմն այսօր այդ կարգի անպարտելի մի ուժ է:

Սոցիալիզմ-կոմունիզմը կառուցվում է աշխատանքով, հենվում է աշխատանքի վրա: Իսկ աշխատանքն ու պատերազմը բացարձակ հակադրություններ



են: Առաջինը ստեղծագործող ուժ է, երկրորդը՝ քայքայող, ոչնչացնող: Ուստի, սոցիալիզմն իր բնույթով դեմ է պատերազմին: Նրա նպատակը մարդկանց բարեկեցությունն է, որի համար անհրաժեշտ է զարկ տալ արտադրողական ուժերին, ծավալել նյութական ու հոգևոր բարիքների արտադրությունը: Պատերազմը արտադրողական ուժերի՝ մարդկանց, գործարանների, ֆաբրիկաների, մեքենաների և այլնի ոչնչացումն է, եղած միջոցների կործանումը: Բանվոր դասակարգը, աշխատավոր գյուղացիությունն ու ինտելիգենցիան պայքարում են հանուն սոցիալիզմի-կոմունիզմի վերջնական հաղթանակի, որպեսզի իրենց աշխատանքի արդյունքը երբեք պատերազմի ավար չդառնա, այլ ծառայի իրենց կարիքներին: Դրա համար էլ պատերազմի փոխարեն աշխատավոր մարդիկ տարբեր սիստեմների խաղաղ գոյակցության հարցն են դնում, արտահայտելով ժողովուրդների արդի հարաբերությունների պատմական ընթացքի օբյեկտիվ պահանջը:

Առհասարակ, խաղաղ գոյակցությունը սուբյեկտիվ, բուրժուա-պացիֆիստական ցանկություն չէ: Դա մեր դարաշրջանի գլխավոր հատկանիշից է բխում և պայմանավորված է նրանով: «Մեր դարաշրջանի գլխավոր հատկանիշն այն է,— ասում է Ն. Ս. Խրուշչովը,— որ սոցիալիզմը մեր երկրի շրջանակներից դուրս է եկել և վերածվել է համաշխարհային սիստեմի: Կապիտալիզմն անկարող եղավ խանգարելու համաշխարհային-պատմական այդ պրոցեսին: Համաշխարհային երկու հակադիր տնտեսական սիստեմների՝ կապիտալիստական և սոցիալիստական, որոնք տարբեր օրենքներով են զարգանում և հակադիր ուղղություններով, անժխտելի փաստ է դառել»: Անտեսել այդ փաստն անհնար է, իսկ ընդունել այդ նշանակում է հաշտվել այդ երկու սիստեմների գոյակցության փաստի հետ, որն ավելի քան քառասուն տարի անհերքելի իրողություն է դարձել:

Երբ պրոլետարական ռևոլյուցիան նոր էր հաղթանակել մեր երկրում, բուրժուազիան փորձեց պատերազմի միջոցով վերջ տալ սոցիալիզմին, բայց հակառակ արդյունք ստացվեց: Իմպերիալիստական պետությունների հակասովետական ինտերվենցիան վերջացավ ոչ միայն կապիտալիստական սիստեմի կողմնակիցների չարաչար պարտությամբ մեր երկրում, այլև ռևոլյուցիոն շարժումների չտեսնված վերելքով բուրժուական աշխարհում: Վիժեցին նաև Սովետական Միության դեմ ձեռնարկված տնտեսական շրջափակումները: Կապիտալիզմի վերականգնման փոխարեն սոցիալիզմը հաղթանակ տարավ նաև տնտեսության բնագավառում ու մեր երկիրը վերածվեց հզոր ինդուստրիալ պետության՝ իր սոցիալիստական գյուղատնտեսությամբ:

Համաշխարհային երկրորդ պատերազմը, որն իմպերիալիստների ծրագրով կոչված էր վերջ տալու սոցիալիզմին սովետական երկրում, ավարտվեց համաշխարհային սոցիալիստական մի ամբողջ սիստեմի ստեղծումով: Նոր պատերազմը, որ նրանք նախապատրաստում են, բուրժուական աշխարհի համար ավելի վատ հետևանքներ կունենա. դա կհասցնի կապիտալիզմի վերջնական կործանման: Կհամաձայնվե՞ն արդյոք բոլոր կապիտալիստները դրա հետ: Պատահական չէ, որ այդ դասակարգի ավելի խոհուն ներկայացուցիչները խաղաղ գոյակցությունը գերադասում են պատերազմից:

Դեռևս 1921 թվականին Լենինը նկատել է, որ առանց որոշ, այսինքն՝ խաղաղ փոխհարաբերությունների մեր ու կապիտալիստական պետությունների միջև վերջինների համար ամուր տնտեսական հարաբերություններ անհնար են

(տես, Երկեր, հ. 33, էջ 157): Այսօր, երբ սոցիալիզմը հաղթանակել է աշխարհի մեկ երրորդ մասում և կարճ ժամանակամիջոցում իր տնտեսական ուժով ևս գերազանցելու է կապիտալիզմին՝ տալով համաշխարհային արտադրության ավելի քան հիսուն տոկոսը, Լենինի հիշյալ թեզը հիմնավորվում է մի նոր փաստով ևս: Անշուշտ, խաղաղ գոյակցության դեպքում սոցիալիստական սիստեմի տնտեսական հզորացումն ավելի մեծ թափ կստանա արագացնելով կապիտալիզմի վերջնական անհետացումը երկրի երեսից: Բայց ո՞րն է լավը՝ պատերազմ հրդեհել և անհետանալ դրա մոխիրների մե՞ջ, թե՞ այսուհետև էլ շարունակել խաղաղ գոյակցել սոցիալիզմի հետ: Բանիմաց մարդիկ նախընտրում են երկրորդը, մանավանդ, որ պատերազմի արդի միջոցները՝ ջերմամիջուկային ռումբերը, զանազան տեսակների բակտերիաներն ու քիմիական թունավոր նյութերը փաստորեն մարդկության ու նրա ստեղծած քաղաքակրթության ոչնչացման միջոցներ են: Իսկ ինքնասպանությունը ոչ իմաստության նշան է և ոչ էլ որևէ չափով պրոգրեսի նախապայման: Դրա համար մարդկության բացարձակ մեծամասնությունը հրաժարվում է դրանից, պայքարելով խաղաղ գոյակցության համար:

Խաղաղությունը սոցիալիստական և կապիտալիստական սիստեմների առկայության պայմաններում այդ սիստեմների խաղաղ գոյակցությունն է: Տապալելով բուրժուազիային, ստեղծելով բանվոր դասակարգի դիկտատուրան, քաղաքացիական կռիվներում հաղթելով մեր հակառակորդներին և հարկադրելով կապիտալիստական պետություններին մեզ հետ խաղաղության պայմանագիր կնքել, դրանով արդեն մենք նվաճեցինք կապիտալիստական սիստեմի հետ միասին գոյություն ունենալու իրավունք, ասում է Լենինը (տես, Երկեր, հ. 31, էջ 385): Ամրացնել այդ իրավունքը նշանակում էր ընդունել խաղաղ գոյակցության սկզբունքը և պայքարել հանուն դրա իրականացման: Մեր պարտիայի և կառավարության ամբողջ գործունեությունն ընթացել է այդ ուղղությամբ:

Ամերիկյան թղթակցի այն հարցին, թե ի՞նչ է լինելու Սովետական պետության ծրագիրն Ասիայում, Լենինը պատասխանում է. «...նույնն են, ինչ որ Եվրոպայում. այն է՝ խաղաղ համակեցություն բոլոր ազգերի ժողովուրդների, բանվորների և գյուղացիների հետ...» (Երկեր, հ. 30, էջ 464):

Եթե խաղաղ գոյակցությունը հնարավոր էր այն ժամանակ, երբ դեռ սոցիալիզմը համաշխարհային սիստեմ չէր դարձել, երբ իմպերիալիզմը տնտեսական, քաղաքական, ինչպես նաև ռազմական տեսակետից մեր օրերի համեմատությամբ ավելի ուժեղ էր, երբ ժողովրդական մասսաներն ամենուրեք բավականաչափ չէին ակտիվացել ստեղծելու համար խաղաղության կողմնակիցների այսօրվա հուժկու շարժումը և, վերջապես, երբ ազգային-ազատագրական շարժումներն ու գաղութային տիրապետության սիստեմի փլուզումը մեր ժամանակների ծավալը չէր ստացել, ապա դա առավել ևս ռեալ հնարավորություն է այժմ, երբ այդ բոլոր դրական հանգամանքներն առկա են:

Բայց հնարավորությունը դեռևս իրականություն չէ, մանավանդ, որ խաղաղ գոյակցության կողքին կա մեկ այլ՝ համաշխարհային պատերազմի հնարավորություն: «Բոլոր երկրների ժողովուրդներին հայտնի է, որ նոր համաշխարհային պատերազմի վտանգը դեռ չի անցել»: Ընդհակառակը, «Պատերազմի սպառնալիքն ուժեղացել է»,— զգուշացնում են Հայտարարության հեղինակները:



Բանն այն է, որ թեև սոցիալիստական սիստեմի ստեղծման հետևանքով կապիտալիզմը թուլացել է, սակայն նա իր իմպերիալիստական բնույթը չի փոխել, ուստի պատերազմից, որպես իր տիրապետության շրջանակներն ընդլայնելու, շահագործման աղբյուրները մեծացնելու և ամեն տեսակի ազատագրական շարժումները ճնշելու միջոցի, չի հրաժարվել: Սակայն, պատերազմի ճակատագրական անխուսափելիություն գոյություն չունի: Իմպերիալիստական պետությունների ծրագրած պատերազմի խափանումը մեզանից է կախված: Խաղաղության ուժերն ավելի մեծ են և նրանք կհաղթեն: Դեռ անցյալ դարի 60-ական թվականներին Մարքսն ասել է. «Բանվորների միջազգային ընկերության կոնգրեսն ինքնին խաղաղության կոնգրես է, որքան որ տարբեր երկրների բանվոր դասակարգի միավորումը, վերջին հաշվով պետք է որ ժողովուրդների միջև պատերազմները անհնար դարձնի»: Կարելի՞ է ասել, թե մենք այսօր արդեն հասել ենք բանվոր դասակարգի կազմակերպվածության այն աստիճանին, երբ նա կարող է վերջ տալ պատերազմին: Այո՛, կարող ենք ասել: Այսօր աշխարհի 87 երկրներում պրոլետարիատն ունի իր մարքս-լենինյան պարտիաները՝ ավելի քան 36 միլիոն անդամներով, որոնք գլխավորելով պրոլետարիատի կռիվը բուրժուազիայի դեմ, տոն են տալիս բոլոր տեսակի ազատագրական շարժումներին: Սա այնպիսի մի ուժ է, որը կարող է նոր միլիոնավոր մասսաներին ոտքի հանելով լուծել մեր դարաշրջանի կարևորագույն՝ պատերազմի և խաղաղության հարցը:

Մեր դարաշրջանը կապիտալիզմի և սոցիալիզմի պայքարի դարաշրջան է, սոցիալիստական և ազգային ազատագրական ռևոլյուցիաների դարաշրջան, իմպերիալիզմի կործանման և գաղութային սիստեմի վերացման դարաշրջան, մի դարաշրջան, երբ բոլոր ճանապարհներն էլ տանում են դեպի կոմունիզմ: Այդ պրոցեսի ամենամեծ առաջատար ուժը սոցիալիստական սիստեմն է, որի արագ հզորացումը արմատական փոփոխություններ է առաջացրել հասարակության մեջ առաջին հերթին թուլացնելով իմպերիալիզմը: Բայց հետևո՞ւմ է արդյոք դրանից, թե «Կապիտալիստական հասարակական սիստեմն իր կլասիկ ձևով» արդեն «անցյալին է պատկանում», ինչպես այդ հավատացնում են Հարավսլավական Կոմունիստների Միության ծրագրի հեղինակները: Անշուշտ, ոչ: «Վերջին տարիների միջազգային իրադարձությունների ընթացքը բազմաթիվ նոր ապացույցներ է տվել այն բանի, որ ամերիկյան իմպերիալիզմը համաշխարհային ռեակցիայի գլխավոր հենարանն է ու միջազգային ժանդարմը, ամբողջ աշխարհի ժողովուրդների թշնամին», ասված է Հայտարարության մեջ: Իրենց գիշատիչ բնույթով ամերիկյան իմպերիալիստներից ետ չեն մնում անգլիական, ֆրանսիական և արևմտա-գերմանական կապիտալիստները:

1959 թ. դեկտեմբերի 12-ին հանդես գալով Զագրեբում, Ի. Տիտոն հայտարարեց. «Մենք մուտք ենք գործել մի դարաշրջան, երբ օրակարգում հանդես են եկել նոր հարցեր: Այդ հարցերը ոչ թե պատերազմի և խաղաղության, այլ համագործակցության, տնտեսական և ուրիշ հարցերն են»: Անկասկած, եթե կապիտալիզմը դադարած լիներ կապիտալիզմ լինելուց, եթե նա փոխած լիներ իր իմպերիալիստական բնույթը, այդ դեպքում իսկապես որ պատերազմի և խաղաղության հարցերը կդառնային ավելորդ և խաղաղասեր երկրների համագործակցությունը տնտեսական և այլ բնագավառներում կդառնար հիմնական հարց: Բայց չէ՞ որ նման փոփոխություն կապիտալիզմի հետ չի կատարվել, չէ՞

որ իր էությամբ այսօր էլ նա նույն իմպերիալիստական, ագրեսիվ ուժն է, նույն գիշատիչը, որն իր նպատակին հասնելու համար դավեր է նյութում խաղաղության դեմ։

Մի՞թե ԱՄՆ-ի «հասարակական սիստեմի» փոփոխման նշան է այն, որ նրանք սոցիալիստական երկրները շրջապատում են ռազմական բազաներով, լրտեսական ինքնաթիռներ են ուղարկում մեր երկիրը, հրաժարվում են զինաթափումից, ատոմային ռումբերի փորձարկումների դադարեցումից, դավեր են նյութում աֆրիկյան ժողովուրդների ազգային-ազատագրական շարժումների դեմ և այլն։ Կամ գուցե այդ մասին են վկայում Ալժիրում Ֆրանսիայի մղած արյունալի կռիվնե՞րը, թե՞ Արևմտյան Գերմանիայի բանակի սպառազինումը ատոմային ու ջրածնային ռումբերով։ Ինչպես տեսնում ենք, փաստերը ճիշտ հակառակն են ապացուցում. նրանք վկայում են այն մասին, որ «կապիտալիստական հասարակական սիստեմը» իր էությամբ մնացել է նույնը, այդ պատճառով էլ պետությունների փոխհարաբերությունների մեջ պատերազմի և խաղաղության հարցը մնում է որպես մեր օրերի հիմնական հարց։

Բայց հնարավո՞ր է արդյոք խաղաղություն իմպերիալիզմի առկայության պայմաններում։ Կյանքն ապացուցում է, որ դա հնարավոր է, եթե նկատի ունենանք հատկապես այն փոփոխությունները, որոնք միջազգային կյանքում տեղի են ունեցել համաշխարհային երկրորդ պատերազմից հետո։ Այդ պատերազմի հետևանքը եղավ այն, որ կապիտալիզմը թուլացավ նախ նրանով, որ այն ներկայացնող բավականաչափ հզոր պետությունները՝ ֆաշիստական Գերմանիան, Ճապոնիան և Իտալիան չարաչար պարտություն կրեցին և որպես ռազմական ուժեր որոշ ժամանակով ետ մղվեցին, երկրորդ՝ նրանով, որ մի շարք կապիտալիստական երկրներ սոցիալիստականի վերածվեցին և ստեղծվեց համաշխարհային սոցիալիստական սիստեմ, երրորդ՝ նրանով, որ այդ պատերազմում ավելի քան երբևէ բուրժուազիան իրեն վարկաբեկեց՝ ֆաշիստական երկրներում իր անպատմելի գազանություններով, մահվան ահռելի ճամբարներով, իսկ մյուս երկրներում՝ իր թաքուն ու ակնհայտ մասնակցությամբ ֆաշիստական պետությունների չարագործություններին և գաղութներում կատարած ոճրագործություններով։ Սովետական Միության մասնակցությունն այդ պատերազմին ու նրա խաղացած առաջավոր դերը ֆաշիզմի պարտության, մի շարք ստրկացված երկրների ազատագրման գործում, բուրժուազիայի վարկաբեկումը ժողովրդական մասսաների աչքում նոր բարձրության հասցրեց։ Չորրորդ՝ իմպերիալիզմը թուլացել է նաև նրանով, որ այսօր ստեղծվել է չեզոք երկրների մի մեծ խումբ՝ Հնդկաստանի, Ինդոնեզիայի, արաբական և մի շարք այլ երկրների մասնակցությամբ, որոնք չցանկանալով մասնակցել արևմտյան երկրների ագրեսիվ խմբավորումներին, մեծ չափով թուլացնում են պատերազմի հրձիգներին ու մեծացնում խաղաղության կողմնակիցների ուժը։ Ահա այս ամենը հնարավորություն են տալիս ագրեսորին մեկուսացնել, հարկադրելով նրան նահանջել պատերազմի իր ծրագրից։ 1956 թ. անգլո-ֆրանսիական ինտերվենցիայի վիժեցումը Եգիպտոսում, 1958 թ. ամերիկյան իմպերիալիստների Լիբանանի դեմ ուղղված ագրեսիայի տապալումը և Սիրիայի նկատմամբ եղած դավադրությունների կանխումը լավագույն ապացույցներ են այն բանի, որ մեր օրերի ագրեսիվ ուժերին սանձահարել, աշխարհումս խաղաղություն պահպանելու նպատակով, միանգամայն հնարավոր է։

Արդյոք խաղաղ գոյակցության մեր ձգտումը դասակարգային պայքարից



հրաժարվել չէ՞, բուրժուական պացիֆիզմ չէ՞, օպորտունիզմ չէ՞, մի խոսքով բանվոր դասակարգի շահերի դավաճանություն չէ՞։ Ընդհակառակը, հենց դա է պրոլետարիատի շահերի պաշտպանությունը։ Անշուշտ, իմպերիալիստական պատերազմը դասակարգային կռվի ձև է, բայց ծառայում է բուրժուազիային ոչ միայն իր նվաճողական քաղաքականությունն իրականացնելու համար, այլև խոշոր զենք է, ուղղված ամեն մի ռևոլյուցիոն շարժման դեմ։ Կռվելով պատերազմի դեմ, ձգտելով այն անհնարին դարձնել՝ մենք բուրժուազիայից խլում ենք պրոլետարական ռևոլյուցիոն շարժումների դեմ ուղղված նրա կարևոր զենքերից մեկը, բանվոր դասակարգի դասակարգային կռվի ծավալման համար մենք նոր հնարավորություններ ենք ստեղծում։ Դեռ ավելին, խաղաղության համար մղվող կռիվը դասակարգային կռիվ է, պրոլետարիատի դիրքերից ելնող դասակարգային կռիվ։ Խաղաղ գոյակցությունը բխում է պրոլետարիատի, աշխատավորների շահերից, այդ պատճառով էլ օպորտունիզմ է ոչ թե խաղաղության համար պայքարելը, այլ դրանից հրաժարվելը։

Արդյոք խաղաղ գոյակցության լոզունգը չի՞ հակասում սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի համար տարվող պայքարին արդի կապիտալիստական երկրներում։ Նման մտավախություն տեղին կլիներ, եթե կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու հնարավորությունը կապվեր միայն պատերազմների հետ։ Լենինն այն կարծիքին է, որ այդ կարգի հարցադրումը ոչ մի առնչություն չունի մարքսիզմի հետ։ Պատասխանելով 1918 թ. Բրեստի հաշտության պայմանագրի հակառակորդներին, Լենինը հարցնում է. «Գուցե հեղինակները կարծում են, որ միջազգային ռևոլյուցիայի շահերը պահանջում են առաջ մղել այն, իսկ այդպիսի առաջմղում կհանդիսանար միմիայն պատերազմը և ոչ երբեք հաշտությունը, որն ընդունակ է տպավորություն գործելու մասսաների վրա, ինչպես իմպերիալիզմի «օրինականացումը»։ Նման «թեորիան» կատարելապես հակառակ կլիներ մարքսիզմին, որը միշտ ժխտել է ռևոլյուցիաների «առաջմղումը», որոնք զարգանում են ռևոլյուցիաներ ծնող դասակարգային հակասությունների սրության հասնելուն համընթաց։ Նման թեորիան հավասարազոր կլիներ այն հայացքին, թե զինված ապստամբությունը պայքարի այնպիսի մի ձև է, որը պարտադիր է միշտ և ամեն տեսակ պայմաններում»։

Զինված ապստամբությունն անհրաժեշտություն է դառնում այն բանի հետևանքով, որ բուրժուազիան չցանկանալով իր գերիշխանությունը կորցնել, դիմում է զենքի։ Այսպիսով, պրոլետարիատը ոչ թե իր ցանկությամբ, այլ հարկադրված է բռնության դիմում, զենք գործածում իր դասակարգային հակառակորդների նկատմամբ։ Եթե այդ հարկադրանքը չլինի, նա պատրաստ է խաղաղությամբ իշխանությունը գրավել և անցնել սոցիալիզմի կառուցմանը։ Լենինն այդ բանը հնարավոր էր համարում Ռուսաստանում 1917 թ.։ Նա զգուշացնում էր, որ խաղաղ ռևոլյուցիան ընդհանրապես «պատմության մեջ» թեև «վերին աստիճանի հազվադեպ», բայց և այնպես «վերին աստիճանի արժեքավոր» երևույթ է (Երկեր, հ. 25, էջ 380), որի իրականացման համար արժե պայքարել առիթը բաց չթողնելով։

Եթե դեպքերն այլ ընթացք ստացան, ապա դրանում ոչ պրոլետարիատն է մեղավոր և ոչ էլ մարքսիզմը։ Դա միաժամանակ չի նշանակում, թե ռևոլյուցիան առհասարակ խաղաղ ընթացք ունենալ չի կարող։ Եթե ռևոլյուցիայի հիմնական խնդիրը հանգեր քաղաքացիական կռվին, այդ դեպքում նման հարցադրում ճիշտ կլիներ։ Բայց թե այդ բանն ասել չի կարելի։ Լենինը գրու-

նում է, որ ամեն մի ռևոլյուցիայի նպատակը պետական իշխանության նվաճումն է։ Պնդել, թե այդ նվաճումն ամենուրեք ու բոլոր ժամանակներում էլ կարող է միմիայն խաղաղ կամ էլ թե միմիայն քաղաքացիական կռիվների ձևով կատարվել, սխալ է, հարցի մետաֆիզիկական դրվածք։ Մեր օրերում պետական իշխանության՝ մի դասակարգից մյուսին անցնելու հիշյալ երկու ձևերն էլ ռեալ հնարավորություններ են։ Իսկ թե դրանցից ո՞ր մեկը և ո՞ր երկրում իրականություն կդառնա, դա արդեն կախված է պատմական կոնկրետ իրադրություններից։

Սակայն իրադրությունների զարգացման տեմպն ու ընթացքը կախված են մեզնից։ Չէ որ մարդն է իր պատմության կերտողը, նա է դրա ինչպես օբյեկտը, այնպես նաև սուբյեկտը։ Իսկ՝ գիտակից մարդը երբեք անխտրական արյունահեղության կողմնակից լինել չի կարող։ Նա խաղաղություն է ցանկանում, դրա համար էլ պայքարում է, որ Սովետական կառավարության ընդհանուր զինաթափման ծրագիրը իրականություն դառնա, որ մարդիկ այլևս իրար հետ պատերազմելու հնարավորություն չունենան և իրենց վեճերը լուծեն խաղաղ ճանապարհով։ Տարբեր սիստեմների խաղաղ գոյակցությունն է, որ կարող է ժամանակակից պայմաններում ապահովել ռևոլյուցիայի զարգացումը։ Խաղաղությունն է ամրացնում սոցիալիզմի դիրքերը, ընդլայնում է մասսաների վրա նրա ունեցած ազդեցության շրջանակները, մոբիլիզացնում է ժողովուրդներին իմպերիալիզմի դեմ մղվող պայքարում։ Այդ նշանակում է, որ խաղաղ գոյակցությունը դասակարգային սուր պայքար է, որի նպատակն է վերջ տալով կապիտալիզմին, ամենուրեք ստեղծել սոցիալիստական կարգեր, ապահովել սոցիալիստական երկրների անցումը դեպի կոմունիզմ։

---

# ՍՈՑԻԱԼԻԶՄԸ ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ՎԵՐԱՃԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Ռ. ՎԱՐԴԱՆՅԱՆ

Կոմունիստական և բանվորական պարտիաների ներկայացուցիչների խորհրդակցության Հայտարարությունը մեկ անգամ ևս հաստատեց ստեղծագործական մարքսիզմ-լենինիզմի եզրակացությունը, որ մեր դարաշրջանի հիմնական բովանդակությունը կապիտալիզմից սոցիալիզմին անցումն է։ Արդիականության հասարակական զարգացման դիալեկտիկան տանում է դեպի սոցիալիզմի և կոմունիզմի հաղթանակը համաշխարհային մասշտաբով։ Այդ ճանապարհին արդեն ձեռք են բերվել ամբողջ աշխարհի ժողովուրդներին ոգեշնչող հաղթանակներ։ Եվ դրանցից գլխավորը նոր հասարակարգի բարձունքները գրոհող սոցիալիզմի համաշխարհային սիստեմի կազմավորումն է։ Բնութագրելով սոցիալիզմի համաշխարհային-պատմական հաղթանակները՝ Հայտարարությունը մատնանշում է. «Համաշխարհային սոցիալիստական սիստեմը թևակոխել է իր զարգացման նոր փուլը։ Սովետական Միությունը հաջողությամբ իրագործում է կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցումը։ Սոցիալիստական լագերի մյուս երկրները հաջողությամբ սոցիալիզմի հիմքերն են դնում, իսկ նրանցից մի քանիսն արդեն թևակոխել են զարգացած սոցիալիստական հասարակարգի կառուցման ժամանակաշրջանը»։

Նոր հասարակարգի շինարարությունը դրսևորում է կոմունիզմի ստորին փուլից դեպի բարձրագույն փուլն ընթանալու և զարգանալու, սոցիալիզմը կոմունիզմի վերաճելու բոլոր ժողովուրդների համար ընդհանուր և պարտադիր օրինաչափությունները, օրինաչափություններ, որոնք իրենց թեորիական արտացոլումը գտան ՍՄԿԿ XXI համագումարի նյութերում և հանգում են հետևյալին։

## ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՕԲՅԵԿՏԻՎ ԱՆԽՈՒՍԱՓԵԼԻՈՒԹՅՈՒՆԸ

Մարդկությունն անխուսափելիորեն կապիտալիզմից անցնում է կոմունիզմին։ Բայց այդ անցումը օբյեկտիվ անխուսափելիությամբ կատարվում է կոմունիզմի ստորին փուլի՝ սոցիալիզմի միջով։ Ոչ մի երկիր չի կարող խուսափել սոցիալիզմից, որքան էլ այն զարգացած լինի։ Այդ մասին առաջին անգամ գրել է Կ. Մարքսը գրեթե հարյուր տարի առաջ։ Մատնացույց անելով այդ օրինաչափությունը՝ Վ. Ի. Լենինն ասել է. «Մարդկությունը կապիտալիզմից կարող է անմիջականորեն անցնել միայն սոցիալիզմին, այսինքն՝ արտադրության միջոցների հանրային տիրապետությանը և մթերքների բաշխմանն ըստ յուրաքանչյուրի կատարած աշխատանքի» (Երկեր, հ. 24, էջ 85)։ Հայտնի է, որ պատմությունը հաստատեց Վլադիմիր Իլյիչի հանճարեղ կանխատեսումը։

Հիրավի, մեր երկիրը սկզբում կառուցեց սոցիալիզմ, իսկ այնուհետև, սոցիալիզմի զարգացման բազայի վրա, սկսել է աստիճանաբար անցնել կոմունիզմին։ Յուրաքանչյուրի համար պարզ է, որ առանց վիթխարի նյութա-տեխնիկական, տնտեսական, քաղաքական և գաղափարական խնդիրների լուծման, խնդիրներ, որոնց լուծումը հնարավոր դարձավ միայն սոցիալիզմի հաղթանակի շնորհիվ, մենք չէինք կարողանա թևակոխել կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանը։ Հենց սոցիալիստական սկզբունքների հաղթանակի շնորհիվ մեր երկիրը կարողացավ մինչև այն աստիճան զարգացնել արտադրողական ուժերը, բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը, կատարելագործել հասարակության տնտեսական և քաղաքական կարգը, բարձրացնել մասսաների գիտակցականությունը, որ բացում է կոմունիզմի բարձրագույն փուլին անցնելու հստակ և ռեալ հեռանկարը։

Ելնելով ռեալ փաստերից՝ Ն. Ս. Խրուշչովը ՍՄԿԿ XXI համագումարում նշեց. «...զարգացման սոցիալիստական ստադիայից բարձրագույն փուլին անցնելը պատմական օրինաչափ պրոցես է, որը չի կարելի կամայականորեն խախտել կամ շրջանցել։ Մարքս-լենինյան պարտիաներն իրենց վերջնական նպատակը համարում են կոմունիստական հասարակարգի ստեղծումը։ Բայց հասարակությունը կապիտալիզմից դեպի կոմունիզմ չի կարող ցատկել առանց անցնելու զարգացման սոցիալիստական ստադիան»։

Բայց գուցե կոմունիզմի ստորին աստիճանն անխուսափելի է միայն զարգացման համեմատաբար ցա՞ծր մակարդակի երկրների համար, որոնց անհրաժեշտ է նյութական արտադրության մակարդակի շեշտակի բարձրացում։ Չէ՞ որ մեր երկրում սոցիալիզմի խնդիրներից մեկը հետամնաց Ռուսաստանը զարգացած ինդուստրիալ տերության մակարդակին հասցնելն էր։ Չէ՞ որ մենք դեռևս ԱՄՆ-ից ետ ենք մնում նյութական արտադրության մեջ և առանց որևէ կեղծ գոռոզության բացահայտ ընդունում և դնում ենք կոմունիզմին հասնելու ճանապարհին նյութական արտադրության մեջ այդ բարձր զարգացած երկրին հասնելու և անցնելու ոչ հեշտ խնդիրը։ Եվ, եթե ԱՄՆ-ը ու մի քանի ուրիշ կապիտալիստական երկրներ մեկ շնչին ընկնող արտադրանքի չափով արտադրության ավելի բարձր մակարդակ ունեն, քան արդեն դեպի կոմունիզմ գնացող սոցիալիզմի երկրները, ապա չի՞ վերանում արդյոք սոցիալիզմի օբյեկտիվ անխուսափելիությունն այդ երկրների համար։ Ո՛չ, չի վերանում, և ահա թե ինչու։

Փորձը ցույց է տալիս, որ մնալով կապիտալիստական, ոչ մի երկիր չի կարող հասնել նյութական արտադրության այն մակարդակին, որն անհրաժեշտ է կոմունիզմի սկզբունքները կիրառելու համար։ Ոմանք կարծում են, թե իբր ԱՄՆ-ում ձեռք բերված նյութական արտադրության մակարդակը, իշխանությունն աշխատավորների ձեռքն անցնելու դեպքում, թույլ կտար մի շարք կարևորագույն մթերքների սպառման գծով անմիջապես անցնել ըստ պահանջմունքի բաշխման սկզբունքին։ Դա նայիվ պատկերացում է, որը հաշվի չի առնում կոմունիստական բաշխման ո՛չ նյութական, առավել ևս, ո՛չ էլ էթիկական նախադրյալները։ Արտադրության նույնիսկ այդ մակարդակը, որին մենք կհասնենք առաջիկա տարիներին և որը բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի արտադրման չափով նշանակալի չափով կգերազանցի ԱՄՆ-ի ներկայիս մակարդակը, կլինի միայն կոմունիստական բաշխման սկզբունքին անցնելու նյութական ռեալ նախադրյալների ստեղծումը։ Բաշխման կոմունիստական սկզբունքի կիրառումը կպահանջի արտադրության ավելի բուռն զարգացում։ Ի վիճակի՞ են արդյոք կապիտալիստական երկրները, օրինակ, ԱՄՆ-ը, կատարելու այն թռիչքը նյութական արտադրության մեջ, որը պահանջում է կոմունիզմին անցնելը։ Յուրացման գոյություն ունեցող ձևի պայմաններում արտադրության բարձր մակարդակը ԱՄՆ-ի էկոնոմիկայի համար արդեն դարձել է հասարակության բոլոր ներքին հակասությունները սրող ճակատագրական բան։ Եվ զարգացման տենդենցը մեզ թույլ է տալիս ասելու, որ կապիտալիզմը պահպանվելու դեպքում արտադրության աճը վաղ թե ուշ պետք է է՛լ ավելի դանդաղի։ Միայն սոցիալիստական հարաբերությունների հաստատումը կարող է դուրս բերել ԱՄՆ-ը, ինչպես և կապիտալիզմի մյուս բոլոր երկրները, այն ճանապարհը, որը Էնգելսի խոսքերով ասած «...միակ նախնական պայմանն է արտադրողական ուժերի անընդհատ, շարունակ արագացվող զարգացման համար, իսկ դրա շնորհիվ՝ նաև հենց իր՝ արտադրության գործնականապես անսահման ավելացման համար» (Ֆ. Էնգելս, Անտի-Դյուրինգ, 1940, էջ 383)։

Այնուհետև։ Կոմունիզմը այնպիսի հասարակություն է, որտեղ հաղթահարված է աշխատանքի ժամանակակից բաժանումը, քաղաքի և գյուղի տարբերությունը, արմատապես փոխված է մարդու արտադրական դերը։ Դա ձեռք է բերվում կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի հիման վրա, որը բնութագրվում է, վերջին հաշվով, բոլոր արտադրական պրոցեսների կոմպլեքսային ավտոմատացմամբ։ Սակայն կապիտալիզմը և արտադրության լրիվ ավտոմատացումն անհամատեղելի են, որովհետև շահագործողական հասարակության զարգացման օբյեկտիվ օրենքները ստեղծում են այնպիսի արգելքներ, որոնք արդեն այժմ փակում են արտադրության ավտոմատացման ուղին։ Բացահայտելով այդ տենդենցը՝ Հայտարարությունը նշում է. «Կապիտալիստական աշխարհում արտադրողական ուժերի և արտադրական հարաբերությունների միջև եղած կոնֆլիկտը դեռևս երբեք այնքան խոր չի եղել։ Կապիտալիզմը ավելի ու ավելի մեծ չափով է խոչընդոտում ժամանակակից գիտության ու տեխնիկայի նվաճումները սոցիալական առաջադիմության շահերի համար օգտագործելուն»։ Կոմունիզմին անցնելու շրջանում կարևորագույն նշանակություն է ստանում մարդու դաստիարակումը, աշխատանքի նկատմամբ ունեցած նոր վերաբերմունքով, իր ընդունակությունների լրիվ կարողությամբ հասարակության բարօրության համար աշխատելու հասարակական բարձր պարտականության գիտակցմամբ։ Քաղցի կարգապահության փոխարեն, աշխատանքի նոր կարգապահության դաստիարակման պատմական մեծ միսիան, աշխատելու պահանջը որպես պատվի և փառքի գործ, որպես առողջ օրգանիզմի պահանջ, այդ միսիան իրագործելի է միայն սոցիալիզմի կողմից։ Մեր երկրում արդեն լայն տարածում գտած աշխատանքի կոմունիստական ձևերի զարգացումն իր հերթին նպաստում է բաշխման կոմունիստական ձևերի աստիճանական տարածմանը, կենցաղի և կուլտուրայի այն աճին, որին չի կարելի հասնել կապիտալիզմի ժամանակ և առանց որի անհնարին է կոմունիզմը։

Այնուհետև։ Կոմունիզմը ենթադրում է մարդու նյութական և հոգևոր պահանջմունքների բավարարման միանգամայն այլ ձևեր։ Դրանք «տնային սնահավատությամբ» և կենցաղի ֆետիշներով շրջապատված անհատական ձևերին փոխարինելու եկող երեխաների հասարակական դաստիարակության, սննդի, հանգստի, տրանսպորտի օգտագործման և այլն, նոր հասարակական ձևերն են։

Աստիճանաբար ձևավորվում է նոր հոգեբանություն, որի մեջ «իմը» հասկացությունն իր տեղը զիջում է «մերը» հասկացությանը, անհատականը՝ հասարակականին։ Սոցիալիզմը դուրս է մղում հասարակական կյանքի, թվում է թե, անհասանելի, անկյուններից դարերով արմատավորված ինդիվիդուալիզմը, անհատի ամբողջ բազմակողմանի կյանքը լուսավորելով կոլեկտիվիզմի կենարար ճառագայթներով։

Վերջապես, կոմունիզմը դա աշխատավորների ինքնակառավարվող ասոցիացիա է, որի կազմակերպման ձևերը կարող են ծնվել և հասունանալ միայն սոցիալիզմի ընդերքում։ Միայն սոցիալիստական դեմոկրատիայի ծաղկումը կարող է հասարակությանը մոտեցնել կոմունիստական ինքնակառավարմանը՝ պետության անխուսափելի մահացմամբ։

Առավել ընդհանուր գծերով սրանք են այն հանգամանքները, որոնք պայմանավորում են կապիտալիզմից անմիջականորեն կոմունիզմին անցնելու անհնարինությունը, իսկ հետևապես նաև՝ կոմունիզմին անցնելու ճանապարհին սոցիալիզմի օբյեկտիվ անհրաժեշտությունը, անխուսափելիությունը։

## Կոմունիզմը սոցիալիզմի ուղղակի շարունակությունն է

Կոմունիզմի բարձրագույն փուլը անշուշտ տարբերվում է ստորին փուլից, բայց միևնույն ժամանակ այդ երկու փուլերը միևնույն կոմունիստական ֆորմացիայի զարգացման աստիճաններն են։ Սոցիալիզմն ու կոմունիզմը հասարակական կարգի միևնույն որակի՝ կոմունիզմի դրսևորումն են, բայց նրա տարբեր հասունության դրսևորումը։ Ավելի որոշակի. սոցիալիզմը դեռևս ամբողջովին չհասունացած և իր էությունը, իր բոլոր ունակություններն ամբողջովին չբացահայտած նոր որակ է՝ կոմունիզմ, իսկ բարձրագույն փուլը արդեն միանգամայն և որոշակիորեն հասունացած, հին ֆորմացիաների «բնածին արատները» վերացրած, լուսավոր իդեալների և մարդկային գրավիչ հարաբերությունների ամբողջ հարստությունը լայնորեն ու բազմակողմանիորեն ծավալած նոր որակ է։

Այսպես են հարաբերում սոցիալիզմն ու կոմունիզմը, եթե դրանք համեմատենք նախկին ֆորմացիաների հետ։ Սակայն մեզ հուզում է օրվա հրատապ հարցը, իսկ այն գտնվում է սոցիալիզմի և կոմունիզմի, որպես հասարակության սպեցիֆիկ որակական վիճակների տարբերության մեջ։ Միասնության հետևում հարկավոր է տեսնել նրանց տարբերությունը, ինքնուրույն որակական որոշակիությունը։ Պահպանելով և զարգացնելով սոցիալիզմին հատուկ հանրային սեփականությունը, կոմունիզմն այնպես է դա ձևափոխում, որ նյութատեխնիկական ու կուլտուրական նվաճումների հիման վրա վերացնում է սոցիալիզմի օրոք դեռևս առկա դասակարգերը, քաղաքի և գյուղի տարբերությունը, աշխատանքի ժամանակակից բաժանումը և, վերջապես, մարդկանց տնտեսական ձևական հավասարությունից անցնում է փաստական հավասարության՝ ըստ պահանջմունքների բաշխման։

Սակայն «...որքան էլ կոմունիզմը տարբերվի սոցիալիստական ստադիայից, նրանց միջև չկա հասարակական զարգացման այդ փուլերը բաժանող ինչ-որ պատնեշ։ Կոմունիզմը աճում է սոցիալիզմից, հանդիսանում է նրա ուղղակի



շարունակությունը» (Ն. Ս. Խրուշչով)։ Կոմունիզմը քայլ առ քայլ իրագործվում է դեռ սոցիալիզմի շրջանում, ծնվելով նրա եռացող առօրյայի թանձրույթում։ Այլ կերպ ասած՝ սոցիալիզմը վերաճում է կոմունիզմի։ Իսկ բուն վերաճումը տեղի է ունենում անընդհատ և աստիճանաբար։

Կոմունիզմը սոցիալիզմից աճում է մշտապես, անընդհատ, առանց սոցիալիզմի զարգացման որևէ ընդմիջման, առանց սոցիալիզմի և կոմունիզմի միասնության խզման։

Մեր հասարակության մեջ արդեն շատ կան կոմունիզմի տեսանելի գծեր, որոնք անընդհատ աճում են և ապագայում կդերիշխեն հասարակական կյանքի ամբողջ ասպարեզում։ Կոմունիստական աշխատանքի համար պայքարող աշխատավորների բազմամիլիոն բանակ, դրուժիննիկների, Սովետներին և իշխանության այլ օրգաններին կից զանազան հանձնաժողովների անդամների, սկզբնական պարտիական, կոմերիտական, արհմիութենական կազմակերպությունների, ղեկավար օրգանների անդամների մեծամասնության կողմից հասարակական պարտականությունների անվճար կատարում, Վալենտինա Գագանովայի կամ Ս. Ամիրխանյանի հազարավոր հետևորդներ—ահա սոցիալիստական այսօրվա հզոր ծառի վրա ծաղկող ապագան։ Բաշխման ոլորտում կոմունիզմը երևում է արդեն այժմ հասարակական սննդում, գիշերօթիկ դպրոցներում, անվճար բուժսպասարկման մեջ, մանկապարտեզներում ու մանկամսուրներում, կենսաթոշակներում ու թոշակներում։ Արդեն այժմ ծնվում և անընդհատ զարգանում են ինքնակառավարման կոնկրետ ձևերը՝ դրուժինաները, ընկերական դատարանները, ֆիզկուլտուրայի և սպորտի, կուլտուրային գործի ղեկավարումը արհմիությունների և այլ ոչ-պետական օրգանների միջոցով։

Սոցիալիզմը կոմունիզմին օրինաչափորեն վերաճելու մեջ է՛լ ավելի մեծ դեր է խաղում այդ պրոցեսի աստիճանականությունը։ Մենք աստիճանաբար, և ոչ թե միանգամից ենք կերտում կոմունիզմի նյութա-տեխնիկական բազան, արտադրական հարաբերությունները, հասարակական կառավարումը և այլն։ Սակայն աստիճանական զարգացումն ամենևին չի նշանակում հասարակության կյանքից թռիչքների դուրս վանում։ Ընդհակառակը, կոմունիզմի կառուցման պրոցեսում արտադրության, բաշխման, կուլտուրայի, կենցաղի, հասարակական կառավարման բնագավառներում կատարվում են մեծագույն թռիչքներ։ Բայց այդ թռիչքները կատարվում են աստիճանաբար, որը և դրանց յուրահատկությունն է։

Խոսելով դեպի կոմունիզմ շարժվելու աստիճանականության մասին, չափազանց հետաքրքրական է պարզել, թե ինչով է պայմանավորվում աստիճանականությունը և ինչպիսի շրջաններ է ապրում հասարակությունը սոցիալիզմից կոմունիզմին աստիճանաբար անցնելու պրոցեսում։

Ոմանք կարծում են, թե կոմունիզմին անցնելու աստիճանականության համար օբյեկտիվ հիմք են հանդիսանում սոցիալիզմի այնպիսի առավելությունները, ինչպիսիք են հակամարտ հակասությունների բացակայությունը արտադրողական ուժերի և արտադրական հարաբերությունների, դասակարգերի միջև և կոմունիզմի շինարարությունը ղեկավարող իսկական ժողովրդական իշխանության առկայությունը։ Դրա շնորհիվ հարկ չի լինում, ասում են նրանք, ջարդելու գոյություն ունեցող կարգը, այլ ստեղծվում է հնարավորություն աստիճանաբար անցնելու մեկ փուլից մյուսին։

Սակայն այդ գործոնները անմիջականորեն չեն պայմանավորում աստիճանականությունը: Սոցիալիզմից կոմունիզմին անցնելիս դրանք պայմանավորում են միայն քաղաքական ու տնտեսական բախումների և գոյություն ունեցող կարգը ջարդելու շարժառիթների բացակայությունը։ Բայց բախումների բացառումը դեռևս աստիճանականության անհրաժեշտություն չէ։ Մենք ուրախ կլինեինք անմիջապես անցնելու կոմունիզմին, բայց այսօր այդպիսի հնարավորություն չունենք։ Եվ դա ամենևին էլ ոչ թե սոցիալիզմի առավելությունների շնորհիվ, այլ այն «թերությունների» պատճառով, որոնք հատուկ են արտադրողական ուժերի, տնտեսության և գիտակցության զարգացման օրինաչափություններին։ Տվյալ դեպքում ամեն ինչ կախված է այդ երեք գործոնների զարգացման աստիճանից։ Եվ կոմունիզմի համար անհրաժեշտ նրանց զարգացման մակարդակը ձեռք չի բերվում առանց ջանքի, հանդես չի գալիս անմիջապես, հանկարծակի, ինչպես առասպելական Աթենաս-Պալասը Զևսի գլխից։ Սոցիալիզմի առավելությունները ամեն կերպ արագացնում են անցման աստիճանականությունը և որոշ երկրներում, հնարավոր է, այն կհասցնեն մինիմում ժամկետի։ Այսպես, օրինակ, սոցիալիզմ կառուցած Չեխոսլովակիան պատմական չափազանց կարճ ժամանակամիջոցում կարող է ստեղծել կոմունիզմի նյութական և հոգևոր նախադրյալները։ Չէ՞ որ այդ ոչ մեծ սոցիալիստական երկիրը բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի արտադրության չափով արդեն այժմ բարձր է կանգնած Անգլիայից, Ֆրանսիայից, ԳՖՌ-ից, իսկ արտադրանքի որոշ տեսակների գծով նաև ԱՄՆ-ից։ Պարզ է նույնպես, որ երբ ԱՄՆ-ում հաղթանակի ռևոլյուցիան, ապա նա շատ արագ կանցնի աստիճանաբար կոմունիզմին անցնելու ժամանակաշրջանը։ Տնտեսական զարգացման օրենքներն ընդհանրապես պայմանավորում են կոմունիզմին անցնելու աստիճանականության օբյեկտիվ անխուսափելիությունը, իսկ տվյալ կոնկրետ երկրում տնտեսության զարգացման աստիճանը՝ այդ աստիճանականության տեմպերը։

Իսկ ի՞նչ ժամանակաշրջաններ են ապրում երկրները սոցիալիզմից կոմունիզմին աստիճանաբար անցնելու պրոցեսում։ ՍՍՌՄ-ի փորձը թույլ է տալիս եզրակացնելու, որ կոմունիզմի ճանապարհին սոցիալիստական երկիրը անցնում է երեք հիմնական շրջան։ Առաջինը կոմունիզմի ծավալուն կառուցման նյութա-տեխնիկական, տնտեսական, քաղաքական և կուլտուրական նախադրյալների պատրաստման շրջանն է։ Այս շրջանը մեզ մոտ տևել է 1936—1938 թթ. մինչև 1958 թվականը։ Այդ ժամանակաշրջանում հատկապես նշանավոր դեր խաղաց 1953—1958 թթ. հնգամյակը, երբ իրականացվեցին, հիրավի, ռևոլյուցիոն միջոցառումներ արտադրողական ուժերի, արտադրական հարաբերությունների և սոցիալիստական հասարակության վերնաշենքի զարգացման ուղղությամբ։

«Ստեղծագործական լենինիզմի հաղթական հարձակումը» (ինչպես դիպուկ կերպով ասել է ընկ. Ա. Նովոտնին) բերեց այնպիսի սահմանի, որը դարձավ ելակետային նոր, դեռևս չեղած հարձակման համար։ Պարտիայի XXI համագումարը աշխարհին ազդարարեց՝ ՍՍՌՄ-ի կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանը թևակոխելու մասին։ Դա կոմունիզմին անցնելու պատմության մեջ մեր երկրորդ խոշոր ուղենիշն է։ Մեր ապրած ժամանակաշրջանի գլխավոր պրակտիկ խնդիրներն են՝ կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծումը և նոր մարդու դաստիարակումը։ Գործնական նպա-



տակ է դրվում — արտադրողական ուժերի ամեն կերպ զարգացման միջոցով հասնել և անցնել ԱՄՆ-ին բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի արտադրության գծով։ Յոթնամյակը վճռական էտապ է այդ խնդիրները կատարելու գործում։ Արդեն 1965 թվականին մեր երկիրը արդյունաբերական արտադրանքի մի շարք տեսակների գծով կմոտենա դրանց ժամանակակից արտադրությանը ԱՄՆ-ում։ Եվս հինգ կամ ավելի քիչ տարիներ հետո մենք կհասնենք նրանց և, կանգ չառնելով, ավելի ու ավելի արագ տեմպ վերցնելով, կգնանք դեպի նյութական արտադրության այն բարձունքները, որոնք անհրաժեշտ են կոմունիզմի լուսավոր գաղափարները կենսագործելու համար։

Դրա հետ միասին մենք լուծում ենք նաև սոցիալ-քաղաքական այլ խնդիրներ, որոնք, սակայն, տվյալ ժամանակաշրջանում գլխավոր չեն և չեն կարող լրիվ վճռվել։ Դրանց թվին են պատկանում այնպիսի մեծագույն սոցիալական պրոբլեմներ, ինչպիսիք են՝ տարբերությունների վերացումը քաղաքի և գյուղի, մտավոր և ֆիզիկական աշխատանքի միջև, դասակարգային տարբերությունների վերացումը, պետության մահացումը և այլն։ Եվ դրանց շարքում ամենից գլխավորը՝ աշխատանքի նկատմամբ նոր վերաբերմունքի լիակատար տիրապետությունը — աշխատանքը որպես առողջ օրգանիզմի պահանջմունք, աշխատանքը առանց վարձատրման հաշվենկատության։ Այդ պրոբլեմները հասարակությունը կարող է լրիվ լուծել միայն կոմունիզմի նյութական և հոգևոր հիմքերը ստեղծելուց հետո, այսինքն՝ դուրս գալով կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանի շրջանակներից։

Բայց դրանց իրականացման այն աստիճանը, որը հնարավոր է կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանի նյութա-տեխնիկական և գաղափարական նվաճումների բազայի վրա, արդեն հանգեցնում է հասարակական կառուցվածքի էական տեղաշարժերի։ Նյութական բարիքների առատությունը, պահանջմունքների բավարարման հասարակական ձևերի տիրապետությունը, նյութական և հոգևոր բարիքների անվճար բաշխման բաժնի մեծացումը ներկայիս 25 տոկոսի փոխարեն մինչև 50 տոկոսի, աշխատանքի բարոյական խթանների՝ առաջին պլանի վրա մղվելը, պետական և կոլտնտեսային-կոոպերատիվ սեփականությունը միասնական կոմունիստական սեփականության մեջ հիմնականում ձուլվելը, հետևապես, դասակարգային տարբերությունների, քաղաքի և գյուղի տարբերությունների հաղթահարումը հիմնականում և ուրիշ շատ սոցիալական վերափոխություններ կհանգեցնեն, ինչպես նշում էր Ն. Ս. Խրուշչովը, «Պրավդա»-ի թղթակցին տված պատասխաններում, կոմունիզմի կառուցմանը հիմնականում:

Այն ժամանակ կսկսվի նոր ուղենիշ՝ կոմունիզմի կառուցումն ավարտելու ժամանակաշրջանը, որը պսակվում է կոմունիզմի սկզբունքների լիակատար հաղթանակով, բոլոր բարիքների անվճար բաշխումով։

Այսպիսով, անընդհատ և աստիճանաբար անցնելով զարգացման օբյեկտիվորեն անխուսափելի օրինաչափ շրջաններով՝ սոցիալիստական հասարակությունը անկասելի անհրաժեշտությամբ կհասնի երբեմնի ուտոպիական իդեալ, իսկ այժմ ամենահումանիստական և տեսանելի պրակտիկ նպատակին՝ կոմունիզմին։

## Պատմական պրոցեսի արագացումը

Դեպի կոմունիզմ անընդհատ և աստիճանական շարժումը, սակայն, չի նշանակում դանդաղ զարգացում։ Ընդհակառակը, սոցիալիզմից կոմունիզմին անցնելու ժամանակաշրջանը, ինչպես ասվում է ՍՄԿԿ XXI համագումարում Ն. Ս. Խրուշչովի զեկուցման մեջ, «...ժամանակակից ինդուստրիայի, խոշոր մեքենայացված գյուղատնտեսության, ամբողջ էկոնոմիկայի և կուլտուրայի արագ զարգացման ժամանակաշրջանն է՝ կոմունիստական հասարակարգի միլիոնավոր ու միլիոնավոր կառուցողների ակտիվ ու գիտակցական մասնակցությամբ»։ Կյանքը հաստատել է սոցիալիզմի ստեղծագործական ուժերի հիկատմամբ պայծառ լավատեսությամբ և մեծ հավատով լի Վ. Ի. Լենինի այն կանխատեսումը, որ «...միմիայն սոցիալիզմից է սկսվելու արագ, իրական, իսկապես մասսայական, բնակչության մեծամասնության, ապա նաև ամբողջ բնակչության մասնակցությամբ տեղի ունեցող առաջընթաց շարժումը հասարակական ու անձնական կյանքի բոլոր ասպարեզներում»։ (Երկեր, հ. 25, էջ 615)։ Պատմական պրոցեսի այդ արագացումն ամենևին էլ չի ծնվել մարդկանց միայն սուբյեկտիվ ցանկերով։ Դա պայմանավորված է նաև օբյեկտիվորեն ա դրանում է կոմունիզմի մեծագույն ուժը։

Ինչի՞ց է քաղում դեպի կոմունիզմ գնացող հասարակական էվոլյուցիան իր արագացման անսպառ ուժը։ Նախ, պետք է մատնանշել ժամանակակից արտադրողական ուժերի առանձնահատկությունները։ Նրանց էությունն ու բնույթն այնպիսին են, որ անհրաժեշտաբար իրենց մեջ կրում են արտակարգ արագ, երբեմն ֆանտաստիկ, նյութական արտադրության, իսկ, հետևապես, հասարակության ընդհանրապես, զարգացման հնարավորություններ։ Սակայն ժամանակակից արտադրողական ուժերը հատուկ են ո՛չ միայն սոցիալիզմին, այլև կապիտալիզմին։ ԱՄՆ-ը, օրինակ, տեխնիկայով ու կադրերով զինված է ոչ վատ, քան ՍՍՌՄ-ը։ Բայց դրանց գործողության արդյունքները ծայրահեղորեն հակադիր են։ ԱՄՆ-ը սողում են արտադրության տարեկան 2—3 տոկոս աճով, մենք սրընթաց կերպով թռչում ենք առաջ արտադրության տարեկան 10—12 տոկոս աճով։ Ուրեմն աճի հնարավորությունը մի բան է, իսկ իրական աճը՝ մի այլ բան։ Այդ պատճառով էլ, Երկրորդ, մենք պետք է մատնանշենք կոմունիզմի կառուցման դարաշրջանում զարգացումն արագացնող սուբյեկտիվ պատճառը՝ դեպի նշված նպատակը գիտակցական, մարդկային բարձր գաղափարներով ոգեշնչված մասսաների ձգտումը։ Արտադրողական ուժերը հմտորեն և մաքսիմում ձևով օգտագործող և զարգացնող սոցիալիզմի մարդկանց ակտիվ գործունեությունն էլ հենց նպաստում է արտադրողական ուժերի առաջադիմության հնարավորությունների առավել լիակատար դրսևորմանը։

Բայց, եթե կանգ առնենք կոմունիզմի կառուցման դարաշրջանում հասարակության զարգացումն արագացնող մատնանշված երկու գործոնների վրա, ապա նրա իսկական աղբյուրներից ամենից էականը կմնա ստվերում։ Չի կարելի, ինչպես այդ անում են մեր փիլիսոփաներից ոմանք, ամեն ինչ հանգեցնել սոցիալիզմի նյութա-տեխնիկական բազային և մարդկանց ակտիվ գործունեությանը։ Ժամանակակից նյութա-տեխնիկական բազան այս կամ այն չափով, ինչպես մենք ասացինք, հատուկ է նաև կապիտալիզմին, իսկ մասսաների ակտիվ գործունեությունն ինքն է իր աղբյուրի բացատրման կարիքն զգում։ Ինչ-որ մի առիթով վերլուծելով մարդկային գործունեության դրդիչ շարժառիթները, Էնգելսը ցույց է տվել, որ մարդու գործունեության անմիջական պատճառը կրքով կամ դատողությամբ որոշվող կամքն է։ Բայց կանգ առնել մարդկանց գործունեության իդեալական պատճառների վրա նշանակում է ոչինչ չասել, ղեռ ավելին, նշանակում է աղավաղել իրականությունը։ Եվ Էնգելսը մեզ տանում է դեպի մարդկային գործունեությունը դրդող խոր և վերջնական, հիմնական ուժերը։ Դրանք մարդկանց նյութական շահերն են, արտադրության տնտեսական պայմանները, որոնք որոշում են մասսաների պատմական ստեղծագործությունը։ Այդ պատճառով էլ կոմունիզմին անցնելու ժամանակ պատմության մեջ չտեսնված արագ շարժման օբյեկտիվ հիմքն են հանդիսանում սոցիալիստական արտադրական հարաբերությունները։ Հենց դա էլ այն տընտեսական ձևն է, որը լայն ասպարեզ է բացում արտադրողական ուժերի զարգացման համար և կյանքի է կոչում մասսաների ակտիվ, ամեն ինչ հաղթահարող գործունեության հզոր նյութական և բարոյական շարժառիթները։ Խոր կերպով բացահայտելով մեր հասարակության արագ շարժման հիմքը, աղբյուրը՝ 1960 թվականի հուլիսին ուսուցիչների Համառուսաստանյան համագումարում Ն. Ս. Խրուշչովն ասում էր. «Բազմաթիվ օբյեկտիվ դիտորդներ փորձել են... բացահայտել այն արագացուցիչը, որը Սովետական Միությանը թույլ է տալիս չտեսնված սրընթաց տեմպերով առաջ շարժել գիտությունն ու տեխնիկան։

Այո՛, այդպիսի արագացուցիչ կա։ Եվ դրանում ոչ մի գաղտնիք չկա։ Դա մեր երկրում հաղթանակած սոցիալիզմն է»։

Արտադրության միջոցների հանրային սեփականություն և դրանից բխող մարդու կողմից մարդու շահագործման բացակայություն, արտադրության ամեն մի առաջընթաց տեղաշարժից բոլոր աշխատավորների համար մաքսիմում օգուտ, հասարակական հարստության աճի անմիջական և զգալի արտացոլում հասարակության անդամների նյութական պայմանների բարելավման մեջ, անվճար կրթություն, բուժում, երեխաների պաստիարակություն, ապահովված ծերություն և ուրիշ շատ բաներ՝ ահա թե որն է արտադրության սրընթաց զարգացման ուղղությամբ մասսաների ստեղծագործական ակտիվության ամուր ու մշտապես գործող հիմքը։ Եվ, եթե դրան ավելացվի նաև տնտեսության պլանային վարումը, հասարակության զարգացման օրենքների իմացությամբ զինված պարտիայի և պետության ղեկավարությունը, մարքսիստական-լենինյան գաղափարների ոգեշնչող ուժը, ապա պարզ կդառնա, թե որտեղ է գտնվում դեպի կոմունիզմ մեր հասարակության զարգացման՝ մարդկությանը զարմացնող տեմպերի սկզբնապատճառը։ Միայն սոցիալիզմն է ի վիճակի իմպերիալիզմի կապանքներում սառած ժամանակակից արտադրողական ուժերին հաղորդելու այն կենարար ազդակները, որոնք հնարավորություն են տալիս հասնելու հասարակական պրոգրեսի հիրավի արծվային թռիչքի։

Դեպի կոմունիզմ շարժման արագացումը, սակայն, չի կարող կամայականորեն, մարդկանց ցանկությամբ հասցվել այս կամ այն արագության։ Դա նույնպես պայմանավորված է օբյեկտիվ գործոններով՝ առկա նյութա-տեխնիկական բազայով և կադրերի կուլտուր-տեխնիկական մակարդակով։ Որքան բարձր է դրանց զարգացումը, այնքան բարձր է շարժման արագությունը։ Բայց սոցիալիզմից մինչև կոմունիզմն ընկած տարածությունն անցնելու համար ամեն մի երկրի անհրաժեշտ է մինիմում ժամանակ։

Այստեղ, այսպիսով ծագում է կոմունիստական շինարարության ավարտման հավանական ժամկետների հարցը, մասնավորապես, մեր երկրում։ Տըն-

տեսական ծրագրերը թույլ են տալիս այդ մասին անելու որոշ եզրակացություններ և, Օ. Վ. Կուուսինենի խոսքերով ասած, «Եթե արտասահմանյան սինոլոգներից որևէ մեկը կարծում է, թե մեր հերոսական ժողովուրդը մինչև XX դարի վերջը չի հասցնի կառուցել կոմունիստական հասարակություն, ապա նա սխալվում է։ Ամեն մի սովետական բանվոր համոզված և հաստատ նրան կպատասխանի. մենք այդ խնդիրը ևս կկատարենք ժամկետից շուտ»։

Ճիշտ է «քաղաքակրթության դարաշրջանի» շատ ժառանգություններ՝ ազգերը, լեզուների տարբերությունը, ընտանիքի ժամանակակից ձևը, աշխատանքի գոյություն ունեցող բաժանման որոշ կողմեր և այլն, դեռևս հնարավոր չի լինի լիովին հաղթահարել։ Բայց դա ամենևին չի խանգարի կոմունիզմի արմատական սկզբունքների հաստատմանը։

Եվ մենք վստահ ենք, որ հեռու չէ այն ժամանակը, երբ մեր ժողովուրդը կկառուցի կոմունիզմի պայծառ ու հոյակապ շենքը, որի պատերի վրա շնորհակալ սերունդները «կգրեն մեր անունները», դարերով կփառաբանեն հերոսական, ռևոլյուցիոն ռոմանտիկայով պսակված, և միևնույն ժամանակ ոչ հեշտ, փորձանքներով ու զրկանքներով լի, անհոգի էգոիզմի ու շահագործման, մարդկանց աղաղակող անհավասարության ու դժբախտության դարավոր նստվածքների միջով գցված ճանապարհը դեպի իսկական մարդկային հարաբերությունների ջերմությամբ տաքացված երջանկության պայծառ բևեռը՝ կոմունիզմը։

---

# ՏԵԽՆԻԿԱԿԱՆ ՊՐՈԳՐԵՍԸ ԲՈՒՐԺՈՒԱԿԱՆ ՄՏՔԻ ԾՈՒՌ ՀԱՅԵԼՈՒՄ

Հ. ԱՍԼԱՆՅԱՆ

Քսաներորդ դարը սոցիալական խոշորագույն վերափոխումների, գիտության և տեխնիկայի աննախընթաց զարգացման դար է։ Սովետական Միության համաշխարհային-պատմական մեծ հաջողությունները գիտության ու տեխնիկայի զարգացման ասպարեզում ամբողջ աշխարհի հիացմունքն են առաջացրել։ Նոր տեխնիկական պրոգրես է ապրում մարդկությունը, հատկապես երկրորդ համաշխարհային պատերազմից հետո։ «Մարդու միտքն ու ձեռքերը,— ասում է Ն. Ս. Խրուշչովը,— ստեղծել են կոսմիկական նավը, որը շարժվում է Երկրի շուրջը։ Նա ընդունակ է արդեն մարդիկ ուղարկելու մեր մոլորակից շատ հեռու։ Մենք ճեղքել ենք ատոմը և թափանցում ենք սպիտակուցի բջջի մեջ։ Մենք շարժվում ենք երկրի վրա և երկրից վեր զարմանալի արագությամբ, և մեր իմացության սահմաններն այնքան լայն են, որ մենք ինքներս ենք դրա վրա զարմանում»։ Ամենաարագ մեքենաներ, մեխանիզմներ, հաստոցներ, ձեռնարկությունների ու արտադրության ամբողջ ճյուղերի ավտոմատացում, էլեկտրոնիկայի և կիսահաղորդիչների արմատավորում, զարմանալի քիմիական սինթեզներ և արդյունաբերության նոր ճյուղերի առաջացում, մաթեմատիկական հաշվիչ մեքենաներ, որոնք իրենց աշխատանքով հիշեցնում են մարդկային ուղեղը, ատոմային (իսկ մերձավորագույն ապագայում նաև ջերմամիջուկային) էներգիայի օգտագործում և այլն, և այլն—այս է մեր ժամանակների գիտա-տեխնիկական պրոգրեսի սխեմատիկ պատկերը, ժամանակներ, երբ կապիտալիզմը կազմալուծվում է, իսկ կոմունիզմը մեծագույն հաղթանակներ տանում երկրի վրա։

Ինչպե՞ս է արտացոլվում պատմական այս մեծ պրոգրեսը մարդկանց. դասակարգերի, նրանց գաղափարախոսների գիտակցության մեջ։

Ակնհայտ է, որ երկու սիստեմների և երկու իդեոլոգիաների-սոցիալիստական և բուրժուական-պայքարի ու մրցության, կապիտալիզմի սիստեմում պրոգրեսի ու ռեակցիայի ուժերի պայքարի մեր դարաշրջանում միասնական հայացք այդ պրոցեսի նկատմամբ, տեխնիկական պրոգրեսից մարդկության համար բխող պրոբլեմների և ուղիների վերաբերյալ միասնական տեսակետ չկա և լինել չի կարող։

Ներկա հոդվածում մենք մտադիր ենք համառոտակի բնութագրել բուրժուական սոցիոլոգիայի վերաբերմունքը տեխնիկական պրոգրեսի նկատմամբ. այդ սոցիոլոգիայի մի քանի դրսևորումների և կոնցեպցիաների առնչությամբ։

Սկզբից ևեթ նկատենք, որ տեխնիկական պրոգրեսի և հասարակական պրոգրեսի նկատմամբ ընդհանրապես, ինչպես Ֆոկուսի մեջ, դրսևորվում է ժամանակակից բուրժուական մտքի հիմնական գծերից մեկը՝ սոցիալական խոր պեսիմիզմը, իդեալական տարրնթացության փաստը բուրժուական սոցիոլոգների շրջանում։ Նրանցից ոմանք, օրինակ՝ ծայրահեղ պեսիմիստներն ու նիհիլիստները, արդի շպենգլերականները մարգարեություններ են անում այն մասին, թե անխուսափելի է համաշխարհային քաղաքակրթության կործանումը, ընդ որում այդ կործանումը կապում են ժամանակակից տեխնիկայի պրոգրեսի հետ։ Կապիտալիզմի մյուս գաղափարախոսները վերջին տարիներս առաջ են քաշել, այսպես կոչված, «տեխնոկրատիայի» կամ «տեխնիկական դետերմինիզմի» մոդայական կոնցեպցիան։ Երրորդ, ավելի լրջմիտ մտածողները ցավագին կերպով արձանագրելով տեխնիկական պրոգրեսի վտանգավոր հետևանքները կապիտալիզմի պայմաններում, որտեղ տեխնիկայի նվաճումները օգտագործվում են միլիտարիստական նպատակների համար, այդ մտածողներն իրենց քննադատական ելույթներն իրավացիորեն ուղղում են միլիտարիզմի քաղաքականության դեմ։

Շպենգլերականները կապիտալիզմի արատները տեսնում են ոչ թե մոնոպոլիաների տիրապետության, այլ գիտության ու տեխնիկայի բուն պրոցեսի մեջ։ Գերմանական սոցիոլոգ Օտտո Ցայտր իր «Փախուստ ազատությունից» գրքում (Մյունխեն, 1947) սոցիալական ցնցումների մեղքը, ցնցումներ, որ առաջացրել է կապիտալիզմը, դցում է արտադրողական ուժերի անչափ շատ զարգացման վրա։ Դրա հետևանքով, կարծում է նա, մարդկությունը պետք է ապրի քաղաքակրթության պարբերական խորտակումներ և կատաստրոֆներ։ Նյութական պրոգրեսը, հայտարարում է նա, բարօրությունից վեր է ածվել նզովքի. տեխնիկայի աճը, նրա կարծիքով, այլասերման հայթահակ է։ Այստեղից արվում է այն հետևությունը, թե պատերազմները, ճգնաժամերը և այլ սոցիալական աղետներ, իմպերիալիստների գիշատիչ քաղաքականության արդյունքը չեն, այլ արտադրողական ուժերի, որպես այդպիսիների, զարգացման հետևանք, մի բուռ միլիոնատերերի և միլիարդատերերի ձեռքում հարստության կուտակման հետևանք չեն, այլ տեխնիկայի ինչ-որ միստիկական հատկությունների հետևանք։

Ատոմային դարը պայթեցրեց արևմտյան քաղաքակրթության հիմնական նախադրյալներից մեկը՝ պրոգրեսի անխուսափելիության նկատմամբ եղած հավատը—հայտարարում է ամերիկյան սոցիոլոգ Մ. Ամոայնը։ Գիտության և տեխնիկայի պրոգրեսն այս մտածողը դիտում է զուտ որպես խորտակիչ ուժ, անկախ այն բանից, թե ինչ հասարակարգում է գործում այդ տեխնիկան։ Այս ոգով են գրված նաև անգլիական հայտնի գրող Օլդոս Հաքսլիի վեպերը։ «Կապիկը և էությունը» իր գրվածքում նա այն միտքն է անցկացնում, թե բոլոր սոցիալական չարիքների աղբյուրը մարդու ձգտումն է իմանալ անիմանալին, իմանալ պատմական պրոցեսը և ներգործել դրա վրա։ Գիտությունը և տեխնիկան մեղադրելու ոգով հանդես եկան մի շարք բուրժուական իդեոլոգներ նաև Քաղաքական գիտությունների ասոցիացիայի 4-րդ միջազգային կոնգրեսում (Հռոմ, 1958, սեպտեմբեր)։ Նույնիսկ որոշ լուրջ մտածողներ պնդում են, թե սոցիալական աղետների աղբյուրը գիտությունն է, թե գիտնականները նորանոր հայտնագործություններ անելով, վտանգավոր խաղ են խաղում։ Բուրժուական հայտնի տնտեսագետ Ստ. Չեյզը հարձակվում է նոր տեխնիկական հայտ-



նագործիչների վրա՝ խորհուրդ տալով խափանել կամ կոնսերվացիայի ենթարկել այդ հայտնագործությունները։ Բուրժուական հասարակարգը և դրա հետ միասին կապիտալիզմի իդեոլոգիան այնքան ռեակցիոն են դարձել, որ այդ իդեոլոգներից ոմանք նույնիսկ առաջարկում են կախաղան հանել գիտնականներին ու ինժեներներին։

Նման հայացքների պրոպագանդիստները տեխնիկայի և, ընդհանրապես. հասարակական պրոգրեսի նկատմամբ ունեցած իրենց թշնամանքը փորձում են հիմնավորել «գիտական» փաստարկումներով։ Ռուս փախստական պրոֆեսոր Ն. Բերդյաևը, որը նույնիսկ մարքսիզմի հակառակորդների շրջանում հայտնի է որպես միջնադարի մունետիկ ու միստիցիզմի գաղափարախոս, հարձակվում է տեխնիկայի վրա, ասելով, թե դա է գլխավոր վտանգը, որ սպառնում է մարդկության գոյությանը։ Ֆրանսիական սոցիոլոգ Ժ. Ֆրիդմանն իր «Պրոգրեսի ճգնաժամը» գրքում այսպես է հաղորդում Բերդյաևի և նրա նմանների տրամադրությունները ու գաղափարները։ Տեխնիկան դառնում է ինքնուրույն ուժ, միանգամայն անկախ հասարակության տնտեսական կառուցվածքից ու պետությունների քաղաքականությունից։ Ըստ Բերդյաևի մարգարեությունների, մերձավորագույն ապագայում վրա է հասնելու մի դարաշրջան, երբ մեքենաները լիակատար իշխելու են մարդկանց վրա. նրանք կգերիշխեն ամբողջ տիեզերքի վրա. ավտոմոբիլներն ու օդանավերը կհաղթահարեն արագությունը, ժամանակն ու տարածությունը, ռադիոն օդը կլցնի մեռած ձայների երաժշտությամբ. վերջին մարդիկ, անօգուտ դառնալով, անընդունակ կլինեն շնչել ու ապրել, տեխնիկական այդ մղձավանջում կանհետանան, իրենցից հետո թողնելով հրեշավոր տիեզերքը, որը ստեղծված է հենց իրենց, մարդկանց բանականությամբ ու ձեռքով։ Այս ոգով է դատողություններ անում նաև գերմանական ռեակցիոն փիլիսոփա, էքզիստենցիալիստ Կարլ Յասպերսը։ Նման վկայությունների թիվը կարելի է շատացնել։

Դժվար չէ նկատել, որ այս մռայլ դատողություններում արտահայտվում է, մի կողմից՝ բուրժուական ինտելլիգենցիայի վախը հասարակական նոր պրոգրեսի նկատմամբ, մյուս կողմից՝ տեխնիկայի ֆետիշիստական ըմբռնումը հասարակության ճակատագրի գործում։ Կոծկելով տեխնիկայի ու գիտության զարգացման պայմանների այլանդակությունը կապիտալիզմի ժամանակ, այս վերջինիս գաղափարախոսներն իրենց թշնամանքը պրոգրեսի, կոմունիստական քաղաքակրթության նկատմամբ հաճախ քողարկում են այն բանով, թե տեխնիկան, իբր, ավտոմատ կերպով որոշում է ամեն ինչ, ինքնըստինքյան պայմանավորում հասարակական զարգացման ամբողջ ընթացքը։ Այդ մտածողները թյուրում են բուրժուական հասարակության բարդ ու հակասական իրադրության մեջ և դրսևորում են իրենց անզորությունը գլուխ հանելու այնպիսի կարևորագույն պրոբլեմում, ինչպիսին է տեխնիկայի ու արտադրողական ուժերի, արտադրողական ուժերի ու արտադրական հարաբերությունների, տնտեսակարգի և քաղաքական ու գաղափարական վերնաշենքի հարաբերակցության պրոբլեմը։ Ուստի և նրանք առաջարկում են զանազան ուտոպիական դեղատոմսեր՝ հաղթահարելու դժվարությունները, ձեռք չտալով կապիտալիզմի հիմքերին։ Կարլ Յասպերսն, օրինակ, դատողություն է անում այն մասին, թե վախը տեխնիկայի նկատմամբ կարելի է հաղթահարել, երբ անհատը վերադառնա ինքն իրեն, թե տեխնիկան պետք է գրավի իր տեղը և այլն, և այլն։

Հայտնի է, որ այս էքզիստենցիալիստը կոմունիզմի խիստ թշնամի է և ինդիվիդուալիզմի գովերգու։

Մշուշապատ ֆրազներով քողարկելով ու արդարացնելով մոնոպոլիաների տիրապետությունը, գաղութատիրությունը և այլն՝ իմպերիալիզմի պաշտպանները փորձում են վարկաբեկել բուն գիտությունն ու տեխնիկան, որոնցով առաջավոր մարդկությունը պարծենալ կարող է միայն։

Սակայն բուրժուական աշխարհում կան ո՛չ միայն պեսիմիստներ, միստիկներ ու նիհիլիստներ։ Կան և հակառակ ուղղությամբ մտածող և գործող ուժեր, պրոգրեսիվ հոսանքներ։ Լրջմիտ բուրժուական մտածողները, նույնիսկ կոմունիզմին չհամակրողները, ավելի ու ավելի են զգում, հասկանում արտադրողական ուժերի զարգացման և կապիտալիզմի տնտեսական ու սոցիալական հարաբերությունների միջև գոյություն ունեցող անհաշտելի հակասությունները։ Գնալով նրանք ավելի շատ են գիտակցում, որ չարիքը տեխնիկայի ու գիտության մեջ չէ, որոնց հետևանքները պայմանավորված են այն հանգամանքով, թե ինչպե՛ս են կիրառվում, ո՛ւմ դեմ են ուղղվում դրանք։ Բուրժուական խոշոր գրող Ժյուլ Ռոմենն իր «Ո՞ւր ենք գնում մենք, այս մոլորակի ճամփորդներս» (Փարիզ, 1959) աշխատության մեջ հաղորդում է այն զրույցի մասին, որ տեղի է ունեցել իր և հայտնի ֆիզիկոս Օպենհայմերի միջև։ Գրողի այն հիացմունքի առթիվ, որ նա արտահայտել է նորագույն ֆիզիկական հայտնագործությունների կապակցությամբ, գիտնականն այն պեսիմիստական միտքն է հայտնում, թե մեծագույն գիտական հայտնագործություններն ու տեխնիկական կատարելագործումները, որոնք կոչված են բարելավելու և գեղեցկացնելու մարդկանց կյանքը, հաճախ հանգեցնում են անմխիթար հետևանքների։

Լուրջ մտահոգությունների օրինակ կարելի է համարել Նյու-Յորքի սոցիոլոգ Քելլերի դատողություններն իր «Պրոգրեսի նշանակությունը» (Նյու-Յորք, 1955) բրոշյուրում։ Նա դառնությամբ արձանագրում է, որ Ամերիկայում կորցրել են հավատը պրոգրեսի նկատմամբ։ Արժեքավոր են ԱՄՆ-ի տնտեսական և քաղաքական կյանքի որոշ կողմերի նրա քննադատությունը, սոցիալիզմի և կապիտալիզմի պայմաններում տեխնիկայի զարգացման բնույթի վերաբերյալ նրա մտքերը։ Այս հեղինակը չի կարող չնկատել Սովետական Միության տեխնիկական զարգացման համամարդկային ու մարդասիրական բնույթը, և ընդհակառակը՝ տեխնիկայի միլիտարիստական գործադրումը ԱՄՆ-ում։ Նրա խոսքերի համաձայն «նյութականի և բարոյականի միաձուլումը Սովետական Միությանը հեղինակություն բերեց սկսած 1920-ական թվականներից և երկրորդ համաշխարհային պատերազմի ժամանակ, քանի որ արտասահմանում առաջացավ այն զգացումը, թե ռուսներն իրենց նյութական ռեսուրսները զարգացնում են ամենալայն նպատակների իրագործման համար, ամբողջ մարդկության շահերի համար։ Մյուս կողմից, ամերիկացիների մասին ասում են, թե դրանց հետաքրքրությունը ընդարձակ նյութական բարիքներ տվեց իրենց, բայց որական իդեալներ մշակելու անկարողությունը զրկում է նրանց այդ բարիքները օգտագործել այնպիսի նպատակների համար, որոնք դուրս են գալիս անմիջական մեխանիկական օգտագործման շրջանակներից» (էջ 55)։ Այս հեղինակը դատապարտում է ԱՄՆ-ի իշխող դասակարգերի բարոյական այլասերումը, դրական իդեալների բացակայությունը։ Իհարկե, խնդիրը միայն «բարոյական հետամնացության» մեջ չէ, այլ կապիտալիզմի նեխածության, պատմական դատապարտվածության մեջ։



Առարկելով այսպես կոչված ավտոմատիկ պրոգրեսի թեորիային, Քելլերը գրում է, թե Ամերիկյան պետությունը սպառազինման մրցավազքի իր քաղաքականությամբ տեխնիկայի հիանալի հայտնագործությունները դարձնում է մեծագույն չարիք։ Այդպիսի ծրագրի (ատոմային էներգիան խաղաղ նպատակներով օգտագործելու ծրագրի — Հ. Ա.) փոխարեն մենք այս պահին, երբ գրվում են այս տողերը, ունենք սպառազինությունների մրցավազքի ծրագիր, որը կարող է միայն խորացնել մեր նյութական տիրապետության և մեր բարոյական սնանկացման միջև եղած անդունդը» (Նույն տեղում, էջ 57)։ Հեղինակի այս դատողությունների իրավացիության համոզիչ ապացույցը ճապոնական քաղաքների վրա ամերիկյան ատոմային ռումբեր նետելն էր և առհասարակ ամերիկյան իմպերիալիզմի՝ «պատերազմի եզրի», «ուժի դիրքերից» պրովոկացիոն ու ագրեսիվ քաղաքականությունը։

Տեխնիկա-արտադրական պրոգրեսի և կապիտալիստական տնտեսակարգի միջև եղած աճող հակասությունները վախի ու տագնապի զգացումներ են առաջացնում առաջավոր ինտելիգենցիայի մեջ հենց ԱՄՆ-ում և այլ տեղերում։ Այդ բանը արձանագրում է ամերիկյան սոցիոլոգ Մորիս Կոենը։ Ամերիկյան հասարակական մտքին նվիրված իր քննադատական ակնարկում նա գրում է. «Այն բանի ցայտուն արտահայտություններից մեկը, որ սովորաբար պրոգրես են անվանում, մեքենաների կիրառման աճն է, որը, ինչպես ասում են, բարձրացնում է մարդկանց իշխանությունը բնության վրա, և այդպիսով մեզ համար փառավոր ապագա է ապահովում» (Մ. Կոեն, «Ամերիկյան միտք», Մոսկվա, 1958, էջ 64)։ Սակայն, շատ ամերիկացիներ, արձանագրում է հեղինակը, կասկածում են և նույնիսկ տագնապ ապրում, թե ինչպիսին է լինելու այդ «փառավոր ապագան»։ Ուստի և Կոենը շարունակում է. «Այնուամենայնիվ վերջերս Ամերիկայում պրոգրեսի առկայությունը կասկածանքի տակ առնվեց, իսկ մեքենաները սկսել են անհանգստություն առաջացնել մարդկանց մեջ» (Նույն տեղը)։ Գիտությունը բոլորովին անմեղ է մարդկանց դժբախտությունների գործում, հայտարարում է իտալական փիլիսոփա Գեյորոն։

Այսպիսի խոստովանություններ շատ կան։ Դրանցում հստակ կամ աղոտ կերպով, համարձակորեն կամ երկչոտությամբ, վրդովմունքով կամ ամոթխածությամբ արտահայտվում է այն միտքը, որ չարիքը բոլորովին էլ գիտությունից ու տեխնիկայից չի գալիս, այլ դրանց ոչ խելացի (կարդա միլիտարիստական) օգտագործումից։ Վառ կերպով այդ մասին ասել է մեր դարաշրջանի մեծ ֆիզիկոս, հումանիստ և դեմոկրատ Ալբերտ Էյնշտեյնը։ Նա չէր կարող չնկատել, որ կապիտալիստական էկոնոմիկայի շարժառիթը ոչ թե հոգատարությունն է ժողովրդի նկատմամբ, այլ անձնական շահը։ Դիմելով ուսանողներին, նա դառնությամբ արձանագրում էր, որ տեխնիկական հաջողություններն ու գիտելիքների զարգացումը, որոնք կարող են և պետք է անսահման հեշտացնեն մարդկային աշխատանքը, քիչ բարօրություն և ուրախություն են բերում բուրժուական հասարակության մեջ։ Ինչո՞ւ։ Որովհետև, ըստ Էյնշտեյնի արտահայտության, մարդիկ չեն սովորել հիանալի հայտնագործություններից քաղել դրանց խելացի իմաստը։ Բավական չէ հասկանալ, որ գիտությունն ու տեխնիկան կարող են բազմապատկել հասարակական բարիքը։ Գիտնականների ու կոնստրուկտորների հոգատարության գլխավոր առարկան պետք է լինի մարդը, նրա ճակատագիրը։ Դիագրամների ու հավասարումների հետևը չպետք է մոռանալ մարդուն։ Հարաբերականության թեորիայի հիմնադիրը մոտենում է,

կարելի է ասել, այն բանի ըմբռնմանը, որ միմիայն սոցիալիզմն է ելք տալիս բոլոր չարիքներից ու դժվարություններից: «Ես համոզված եմ,— գրում է նա,— որ չարիքի այդ բոլոր ձևերը ոչնչացնելու մի եղանակ կա միայն: Այդ եղանակը սոցիալիստական էկոնոմիկայի կառուցումն է կրթության այնպիսի սիստեմի համակցությամբ, որն իր առաջ կդնի հանրօրեն օգտակար նպատակներ» (Ա. Էյնշտեյն, «Իդեաներ և կարծիքներ», Լոնդոն, 1956, էջ 158):

Եթե սոցիալական պեսիմիստները վհատություն են սերմանում չորս կողմը, ամբողջ քաղաքակրթության ճակատագրական կործանման գուշակություններ են անում, դա բացատրելով տեխնիկական միջոցների զարգացմամբ, եթե լրջմիտ, կամ առաջավոր մտածողները սկսում են հասկանալ, որ վտանգն ինքնին տեխնիկայի մեջ չէ, ապա կապիտալիզմի անզուսպ ջատագովները վերջին ժամանակներս առաջ են քաշել, այսպես կոչված՝ տեխնոկրատիայի թեորիան: Դա արվում է զանազան ձևերով. այդ կոնցեպցիայի որոշ կողմնակիցներ այն միտքն են տարածում, թե տեխնիկական ինտելիգենցիան, որը կկանգնի, կամ արդեն կանգնել է արտադրության ու պետության գլուխ, կփոխի կապիտալիզմի ընթացքը դեպի լավը, մյուսները պաշտպանում են այն կոնցեպցիան, թե XX դարի տեխնիկական տեղաշարժերը առաջացրել են արդյունաբերական երկրորդ հեղաշրջում, որը կապիտալիզմին պրոգրեսիվ բնույթ է տալիս: Ըստ «տեխնոկրատական սոցիոլոգիայի», տեխնոկրատական մասնագետները կազմում են նոր, հատուկ սոցիալական դասակարգ — «միջին դասակարգ», որը իբր թե կախում չունի ձեռնարկատերերից, հսկայական ուժ է ձեռք բերել, ընդունակ է արմատապես փոխելու կապիտալիզմի բնույթը և նյութական բարիքների արտադրությունը ծառայեցնելու ամբողջ հասարակությանը:

Այդ կոնցեպցիայի էությունն այսպես է ձևակերպում ֆրանսիական սոցիոլոգ Ժան Լուի Կոռիեն իր «Տեխնոկրատիան նոր իշխանություն է» գրքում. «Ապագայում ինժեներները կմտնեն հասարակության ղեկավարների շարքը. հասարակություն, որն ամբողջապես հագեցած կլինի տեխնիկայով»: Տեխնոկրատիան, տեսե՛ք, բուրժուական պետության և պրոֆմիությունների օգնությամբ, «օրինակելի» կապիտալիստների հետ համագործակցելով, կհաղթահարի տեխնիկայի վնասակար հետևանքները կապիտալիզմի ժամանակ՝ գործազրկությունը, բանվոր դասակարգի որոշ շերտերի դեգրադացիան, ճգնաժամերը, աղքատությունը և այլն: Մի խոսքով տեխնոկրատիան հանգիստ ու խաղաղ ճանապարհով կապիտալիզմը կվերածի «ժողովրդական», «դեմոկրատական», «մարդասիրական» կապիտալիզմի: Այս է տեխնոկրատիայի վերջին խոսքը: Ռեֆորմիստներն ու ռևիզիոնիստները, թութակի պես կրկնելով կապիտալիզմի ջատագովների այս կեղծ գիտական դրույթները, «զարգացնում» են դրանք և բարբաջում այն մասին, թե այդ ճանապարհով կապիտալիզմը վերափոխվում է սոցիալիզմի:

«Տեխնոկրատական սոցիոլոգիան» սոցիալական կյանքի, էկոնոմիկայի, կուլտուրայի կարևորագույն պրոբլեմները դիտում է բացառապես տեխնիկական մասնագետների իբր թե վճռական դերի այս տեսանկյունով: Ֆրանսիական սոցիոլոգ Ա. Ֆրիշի կարծիքով տեխնիկական ինտելիգենցիայի տիրապետությունն արտադրության ու սոցիալական կյանքում անխուսափելի է և պատմականորեն անհրաժեշտ. ապագան նրան է պատկանում: Մարդկությունն անզուսպ կերպով մտնում է «տեխնոկրատիայի դարաշրջանը»: Դա կլինի, ինչպես հավաստացնում է նա, ամբողջ մարդկության նոր, հզոր պրոգրեսի գործոն,



անկախ այն բանից, թե ո՛ր դասակարգն է իշխում, ո՛ւմ շահերն են ուղղություն տալիս արտադրողական ուժերի զարգացմանը: Տեխնիկական անձնակազմի վերափոխիչ գործունեության հետևանքով, ասում է նա, և բուրժուական պետության բարեբար աջակցությամբ վերջին 20—30 տարվա ընթացքում կապիտալիստական աշխարհում տեղի են ունեցել հետևյալ սոցիալական տեղաշարժերը. անհետանում է ձեռնարկատերերի ու բանվորների շահերի հակադրությունը, որովհետև էլեկտրոնային հաշվիչ մեքենաները և մյուս մեխանիզմները ավտոմատիկ կերպով մերձեցնում են նրանց, կապիտալիստները այլևս չեն ձգտում առավելագույն շահույթներ ստանալ, վերջինս իբր թե դառնում է ավելի ու ավելի պատրանքային: Եթե հավատանք այդ սոցիոլոգին, ստացվում է, որ կապիտալիստն արդեն կապիտալիստ չէ, իսկ բանվորը բանվոր չէ: «Բանվորը սկսում է դիտել ձեռնարկությունը որպես ընտանեկան ֆիրմա, որտեղ նա առայժմ երկրորդ կարգի պարտնյոր է, սպասելով այն մոմենտին, երբ լիակատար իրավահավասարություն կստանա» (Ա. Ֆրիշ «Պատասխան պատմության մարտահրավերին», 1954, էջ 48—49): Այսպիսով, այդ իդիլիայի ճանապարհը տեխնիկական մասնագետների՝ ինժեներների, դիրեկտորների իշխանության հաստատումն է, որոնք իբր թե ընդունակ են սահմանափակել մոնոպոլիաների տիրապետությունը, վերաբաշխել բուրժուական հասարակության ազգային եկամուտը, ապահովել աշխատավորների բարեկեցությունը:

Այս կերպ դատում են նաև «տեխնոկրատական» մտքի այլ ներկայացուցիչներ: Տեխնիկական մասնագետների շերտը համարելով ուրույն միջին դա-
սակարգ, ֆրանսիական փիլիսոփա Պ. Դյուկասեն պնդում է, թե այդ միջին
դասակարգը ընդունակ է մեղմացնելու, կամ նույնիսկ հաղթահարելու կապի-
տալիզմի դժվարություններն ու խոցերը և պլանաչափ բնույթ հաղորդելու հա-
սարակության զարգացմանը: Այս սուբյեկտիվ իդեալիստական կոնցեպցիայի
համաձայն «տեխնոկրատիան» այնքան հզոր է, որ կարող է խուսափել տեխնի-
կական պրոգրեսի բացասական հետևանքներից կապիտալիզմի պայմաններում
և դրանով իսկ փրկել կապիտալիզմը խորտակումից: Ինչպես տեսնում ենք,
այս դատողություններում «տեխնիկական դետերմինիզմը», փաստորեն՝ տեխ-
նիկական ֆատալիզմը միահյուսվում է զտագույն վոլյունտարիզմի հետ: Նման
դեղատոմսերի անհիմնությունն ու ուտոպիականությունը ապացուցված է կա-
պիտալիզմի ամբողջ պատմությամբ և ժամանակակից իրականությամբ: Ակն-
հայտ է, որ որքան էլ նշանակալից լինի դիրեկտորների ու ինժեներների դերը
կապիտալիստական ձեռնարկության մեջ, նրանք մնում են որպես մոնոպոլիա-
ների ծառաներ, և ձեռնարկությունների ճակատագիրը որոշում են ոչ թե նրանք,
այլ նրանց իսկական տերերը՝ մոնոպոլիստները:

Ավելի գիտականակերպ է թվում, այսպես կոչված՝ նոր կամ «երկրորդ արդյունաբերական հեղաշրջման» վերաբերյալ թեորիան: Դրա պրոպագանդիստները պատմական էքսկուրսներ են կատարում, անալոգիա անցկացնում XVIII դարի արդյունաբերական հեղաշրջման և XX դարի բուրժուական երկրներում կատարվող տեխնիկական պրոգրեսի միջև: Մոտիկից քննելով, սակայն, տեսնում ենք, որ նոր արդյունաբերական հեղաշրջման կոնցեպցիայի հեղինակները աղավաղում են թե՛ մեկ և թե՛ մյուս հեղաշրջումների ընդհանուր գծերը և առանձնահատկությունները, վերջին տասնամյակների տեխնիկական տեղաշարժերը կապիտալիստական երկրներում հրամցնելով որպես կապիտալիզմի նոր սոցիալական պրոգրես: Այդ կոնցեպցիայի էությունը հակիրճ կերպով կա-

րելի է այսպես արտահայտել. մարդկությունը տեխնիկական հեղաշրջում է ապրում, որը հեղաշրջում է նաև դասակարգերի փոխհարաբերությունը բուրժուական աշխարհում։ Այդ պրոցեսը, հավատացնում են մեզ, ո՛չ միայն տեխնոլոգիական պրոցես է, այլև խոր սոցիալական պրոգրես, այսինքն՝ բուրժուական տնտեսական հարաբերությունների արմատական վերակառուցում։

Այստեղից այն հետևությունն է արվում, թե նորագույն տեխնիկան՝ ատոմային էներգիայի օգտագործումը, արտադրության ավտոմատացումը, էլեկտրոնիկան և այլն, ընդհանուր բարօրություն է հաստատում։ Գերմանական բուրժուական սոցիոլոգ Ֆրից Շտերնբերգը իր «Ռազմական և արդյունաբերական ռևոլյուցիա» գրքում (Բեռլին, 1957) գրում է, թե ռազմական տեխնիկայի ազդեցությամբ լիակատար արդյունաբերական հեղաշրջում է կատարվում կապիտալիզմի զարգացած երկրներում, որը արմատապես փոխում է իբր թե նաև սոցիալական խմբերի, դասակարգերի հարաբերակցությունը։ Այդ տեխնիկան հաղորդել է կապիտալիզմին նոր որակ, դարձնելով այն «ժողովրդական կապիտալիզմ»։ Մյուսները հավատացնում են, թե կապիտալիստական հասարակությունն ինքն ընդունակ է վերացնելու տեխնիկայի զարգացման բացասական հետևանքները՝ գործազրկությունը, աղքատությունը, մասնավոր սեփականությունը։ Ուրիշները պնդում են, թե կապիտալիստական հարաբերությունները վերակառուցվում են նորագույն գիտության ու տեխնիկայի մակարդակին համապատասխան։ Այդ բոլոր կոնցեպցիաներն ու հայացքները լիովին բաժանում են ռեֆորմիստներն ու ռևիզիոնիստները, տալով դրանց սոցիալիստական գունավորում։

Հատուկ ջանք չի պահանջվում համոզվելու համար, որ «տեխնոկրատական» այդ բոլոր կոնցեպցիաներն անհիմն են և արհեստական։ Չի կարելի նույնացնել կապիտալիստական երկրներում տեղի ունեցող տեխնիկական տեղաշարժերը սոցիալական պրոգրեսի հետ։ Մարքսն իր ժամանակին բացատրել է, որ կա տեխնիկական հեղաշրջում և կա արդյունաբերական հեղաշրջում։ XVIII դարի արդյունաբերական հեղաշրջումն իր մեջ առնում է և՛ տեխնիկական, և՛ սոցիալական պրոգրես, վերացնելով ֆեոդալիզմի մնացորդները և կյանքի բոլոր բնագավառներում հաստատելով կապիտալիստական հարաբերություններ։ Այսպիսով, արդյունաբերական հեղաշրջումն ունի ո՛չ միայն տեխնիկական, այլև լայն սոցիալ-տնտեսական բովանդակություն, որ նշանակում է անցում մի հասարակարգից մյուսը, սոցիալական կյանքի ցածր աստիճանից բարձր աստիճանը։ Այն հայացքը, թե այսօրվա տեխնիկական պրոգրեսը կապիտալիստական երկրներում միաժամանակ և սոցիալական պրոգրես է, քննադատության չի դիմանում նաև այն տեսակետից, որ տեխնիկական հեղաշրջումներ կապիտալիզմի հաստատումից հետո շատ են տեղի ունեցել. տեխնիկան, որպես արտադրության առավել դինամիկ էլեմենտ, անընդհատ փոփոխվում է, պարբերաբար հեղաշրջումներ է ապրում։ Բայց ո՞վ կարող է ապացուցել, թե դրա հետևանքով անընդհատ հեղաշրջվում է կապիտալիզմի սոցիալական բնույթը, դրա արտադրական հարաբերությունների էությունը, թե տեխնիկան ավտոմատիկաբար վերացնում կամ սահմանափակում է կապիտալիստական խոշոր մասնավոր սեփականությունը, շահագործումը, վերաբաշխում եկամուտները և այլն։

Տեխնիկայի զարգացումը, անկասկած, առաջացնում է և չի կարող չառաջացնել խոր սոցիալական հետևանքներ։ Հենց արտադրողական ուժերի զար-



գացումով է (որոնց մեջ տեխնիկան մտնում է որպես բաղկացուցիչ էլեմենտ), որ առաջացել է հասարակության սոցիալիստական վերափոխման պատմական անհրաժեշտությունն ու հնարավորությունը, կապիտալիզմի վերացման պահանջը։ Բայց դա նշանակում է, որ տեխնիկայի զարգացումը պահանջում է դուրս գալ կապիտալիզմի սահմաններից, հաստատել սոցիալիստական հարաբերություններ և իրոք վերածվել սոցիալական մեծ պրոգրեսի։ Իսկ կապիտալիզմի սահմաններում արդի տեխնիկայի զարգացումն առաջացնում է, իհարկե, սոցիալական փոփոխություններ, բայց դա այն չէ, ինչ պնդում են «տեխնոկրատիայի» պրոպագանդիստները. հզոր մոնոպոլիաների տիրապետության պայմաններում տեխնիկան ավտոմատիկ կերպով ոչ միայն չի վերացնում կապիտալիզմի բնույթն ու էությունը, այլ խորացնում է նրա հակասությունները։ Եվ իրոք, ոչ միայն մարքսիստների, այլև շատ թե քիչ օբյեկտիվ, զգաստ սոցիոլոգների ու տնտեսագետների գրվածքներում հսկայական նյութ կա, որն ապացուցում է, որ ժամանակակից տեխնիկական պրոգրեսը ԱՄՆ-ում, Արևմտյան Գերմանիայում և կապիտալիզմի այլ խոշոր երկրներում, ընդարձակելով մարդու տիրապետության ոլորտը բնության նկատմամբ, միևնույն ժամանակ ծանր սոցիալական ներգործություն է ունենում աշխատավորների վրա և մարդու ստրկացման նոր ձևեր է հարուցում։

Իմպերիալիստները մարդկային հանճարի, գիտա-տեխնիկական մտքի մեծագույն նվաճումները օգտագործում են որպես զենք աշխատավորական մասսաների, գաղութային ժողովուրդների ազատագրական շարժման դեմ, ծառայեցնում են ագրեսիվ պատերազմների համար։ Ժամանակակից տեխնիկայի զարգացման սոցիալական հետևանքներ են գործազրկության աճը բանվորների շրջանում, ինչպես նաև հենց տեխնիկական ինտելիգենցիայի շրջանում, որն իբր թե կանգնում է արտադրության ու պետության գլուխ և պիտի որոշի կապիտալիզմի ճակատագիրը։ Սոցիոլոգների 3-րդ միջազգային կոնգրեսում (Ամստերդամ, 1956) Վիլյամ Ֆոնսի և Հարոլդ Շեպարդի զեկուցման մեջ համոզիչ փաստեր են բերված, որոնք հաստատում են այդ դրույթը։ Ավտոմատացումը տեխնիկական պրոգրեսի բարձրագույն ձևն է, ասում են նրանք։ Բայց այդ փաստի դրական գնահատման հետ միասին զեկուցողները կամա թե ակամա բացահայտեցին այնպիսի սոցիալական խոցեր, որոնք «տեխնոկրատական» կոնցեպցիայից քարը քարի վրա չեն թողնում։

Նախ և առաջ գործազրկությունը։ Այսպես, օրինակ պատեֆոնի ձայնապնակ արտադրող ֆիրմայում նոր տեխնիկայի ներդրման հետևանքով մեկ բանվորը փոխարինում է 500 բանվորի։ Մյուս ձեռնարկության մեջ մի բանվորը մի ժամում արտադրում էր 7—8 ավտոդետալ. ավտոմատացման հետևանքով նա նույն ժամանակում արտադրում է 750 հատ։ Սա իրոք որ տեխնիկական հեղաշրջում է. մի բանվորը փոխարինում է 500—700—1000, կամ նույնիսկ մի քանի հազար բանվորների։ Այդ մարդիկ փողոց են նետվում, մնում են առանց կենսամիջոցների ու բնակարանի. ծիծաղելի է, իհարկե, դա անվանել սոցիալական պրոգրես։ Բուրժուական մի շարք սոցիոլոգներ արձանագրում են, որ զբաղվածության պրոբլեմը ստվերի պես ուղեկցում է կապիտալիզմին։ Տեխնիկական պրոգրեսը և սոցիալական պրոգրեսը ներկայումս բուրժուական հասարակության մեջ անջատված են իրարից մի ամբողջ անդունդով. որպեսզի առաջինը վերածվի երկրորդի, անհրաժեշտ է բուրժուական տնտեսակարգի արմատական ոչնչացում, արտադրության միջոցների մասնա-

վոր սեփականության և շահագործման վերացում: Անհրաժեշտ է սոցիալիստական ռևոլյուցիա, որը մարդկությանը կազատագրի իր դարն ապրած կապիտալիզմի շղթաներից:

Այսպիսով, ժամանակակից կապիտալիզմի մասին կարելի է միայն ասել, որ այնտեղ տեխնիկական տեղաշարժեր անպայման տեղի են ունենում, բայց տնտեսական հեղաշրջման մասին խոսք լինել չի կարող, քանի որ կապիտալիզմի հիմքերը, նրա արտադրական հարաբերությունները պահպանվում են: Ավելին, այդ հարաբերություններն իրենք են կաշկանդում և սահմանափակում տեխնիկական զարգացման հնարավորությունները, չեն թույլ տալիս մարդկության բարօրության համար օգտագործելու գիտության և տեխնիկայի փայլուն նվաճումները: Ժամանակակից տեխնիկան կապիտալիզմի շրջանակներում ավելի շատ նման է կաշկանդված հսկայի, շղթայված Պրոմեթեոսի, որն օժտված է վիթխարի ուժով և կարող է այդ ուժը լրիվ դրսևորել միայն սոցիալիզմի պայմաններում: Այստեղ Պրոմեթեոսի շղթաները փշրվում են, և բացվում են սոցիալական պրոգրեսի անծայրածիր հորիզոններ:

Բուրժուական որոշ սոցիոլոգներ ու տնտեսագետներ տեխնիկայի վերաբերյալ արած իրենց դատողություններում մերթ ընդ մերթ ակամա բացահայտում են կապիտալիզմի տեխնիկական զարգացման շատ խոցելի կողմեր: Այսպես, օրինակ, «տեխնոկրատական սոցիոլոգիայի» ականավոր ներկայացուցիչ ամերիկյան սոցիոլոգ Լուիս Մեմֆորդը տրտնջում է, թե տեխնիկան նրա տերերի ձեռքում վեր է ածվում ստոր, դաժան, խորտակիչ ուժի՝ հակառակ վեհ ու ստեղծագործական սկզբունքի: Իր «Հանուն բանականության» գրքում (Նյու-Յորք, 1954) նա գրում է. «Գիտնականների ստեղծած իդեալական աշխարհում մեքենաներն ավելի ու ավելի են գրավում մարդկանց տեղը, որոնց հանդուրժում են այն չափով, որչափով նրանք դառնում են մեքենաների կցորդներ, զրկվում են կրքերից, էմոցիաներից և մոռացության են մատնում բարոյական արժեքները» (էջ 118): Մեմֆորդը ցավում է, որ ժամանակակից տեխնիկայի անզուսպ զարգացման պայմաններում իշխում է վախի և շփոթության մթնոլորտը. այն եզրակացությունն է արմատավորվում, թե քաղաքակրթությանը կործանման վտանգ է սպառնում: Բարոյական անկման, բարոյական արժեքների «մոռացման» փայլուն օրինակ բուրժուական աշխարհում Մեմֆորդը համարում է այն հանգամանքը, որ ԱՄՆ-ում շատ սառնարյուն կերպով դատողություններ են անում ատոմային պատերազմի հնարավորության և նույնիսկ անխուսափելիության մասին: Մեմֆորդի վկայությամբ, ապահումանիզմը թափանցում է բուրժուական քաղաքակրթության շատ ոլորտներ, մասնավորապես արվեստի և գրականության մեջ: «Դաժանության փառաբանումը բնորոշ է ժամանակակից (կարդա բուրժուական — Հ. Ա.) ամբողջ արվեստի համար» (նույն տեղ, էջ 150): Մեմֆորդի գրքում մի շարք քննադատական դիտողություններ կան ԱՄՆ-ի ամբողջ քաղաքականության դեմ:

Ատոմաբանության գովերգու Յասպերսը իր «Մարդը ժամանակակից դարաշրջանում» գրքում հետևյալ դատողություններն է անում. ժամանակակից քաղաքակրթության մեջ հասարակական հարաբերությունների վրա տիրապետում է տեխնիկան, որը մարդկային անհատին վեր է ածում ֆունկցիայի կատեգորիայի: Մեքենան բոլոր չարիքների աղբյուրն է, այն ոչնչացնում է գեղեցիկ զգացմունքը, մարդկանց զրկում է մտածելու և տենչալու անհրաժեշտությունից, ուժեղացնում է աղքատությունն ու գործազրկությունը և այլն: Արտադրո-



ղական ուժերի զարգացումը, ըստ Յասպերսի, հանգեցրել է այն բանին, որ մեխանիկական ստրուկները, այսինքն՝ մեքենաները, խռովություն են սարքել իրենց տերերի դեմ: Տեխնիկան դիվային ուժ է դարձել՝ քաղաքակրթությանը կործանում սպառնալով:

Այն փաստը, որ տեխնիկան կապիտալիզմի պայմաններում ճնշում է գործում մարդու անձնավորության վրա, ամլացնելով նրա ստեղծագործական մարդկային հատկությունները, այդ մասին խոսում է նաև մեր կողմից վերը հիշատակված ամերիկյան սոցիոլոգ և փիլիսոփա Մ. Կոենը:

Մտքերի, զգացմունքների ու տրամադրությունների խուճապ, սոցիալական խոր հոռետեսություն — ահա թե ինչն է բնորոշ բուրժուական արդի մտքի համար: Անզոր լինելով հասկանալու կապիտալիզմի առաջացրած սոցիալական ցնցումների պատճառը, բուրժուական ինտելիգենցիան արձանագրում է տեխնիկայի զարգացման տարերային, կործանարար հետևանքները կապիտալիզմի պայմաններում և այստեղ կանգ է առնում, լավագույն դեպքում մոգոնելով կապիտալիզմի փրկության զանազան դեղատոմսեր, որոնք նույնքան ուտոպիական են, որքան և ռեակցիոն:

Այսպիսով, բուրժուական միտքը անզոր հանդիսացավ ըմբռնելու և լուծելու մարդու և տեխնիկայի փոխհարաբերության պրոբլեմը հասարակական պրոգրեսի ընթացքում, չի կարողանում դրանից ճիշտ եզրակացություններ անել: Միայն մարքսիզմ-լենինիզմը խորապես բացահայտեց և լուծեց այդ պրոբլեմը, հիմնավորելով հասարակական-պատմական պրոգրեսի օբյեկտիվ օրենքը, մատնանշեց մարդկությանը սոցիալական պրոգրեսի լայն հրապարակ դուրս գալու ճիշտ ուղիները:

Անդրադառնալով կապիտալիզմի հակամարտություններին՝ Մարքսը գրել է. «Մեր ժամանակ ամեն ինչ կարծես թե հղի է իր հակադրությամբ: Մենք տեսնում ենք, որ մեքենաները, որոնք օժտված են մարդկային աշխատանքը կրճատելու և արդյունավետ դարձնելու հրաշալի ուժով, մարդկանց բերում են սով և հյուծվածություն: Հարստության նոր, մինչև այժմ անհայտ աղբյուրները ինչ-որ տարօրինակ, անհասկանալի կախարդանքի շնորհիվ դառնում են աղքատության աղբյուր: Տեխնիկայի հաղթանակներն ասես թե ձեռք են բերվել բարոյական դեգրադացիայի գնով: Թվում է, թե որչափով մարդկությունն իրեն է ենթարկում բնությունը, այդ չափով մարդը դառնում է մյուս մարդկանց ստրուկը, կամ էլ՝ իր սեփական ստորության ստրուկը: Նույնիսկ գիտության պայծառ լույսը չի կարող ըստ երևույթին շողշողալ այլ կերպ, քան տգիտության մռայլ ֆոնի վրա: Մեր բոլոր հայտնագործություններն ու մեր ամբողջ պրոգրեսը ասես թե հանգեցնում են այն բանին, որ նյութական ուժերին օժտում են ինտելեկտուալ կյանքով, իսկ մարդկային կյանքը, զրկվելով իր ինտելեկտուալ կողմից, իջեցվում է սոսկ նյութական ուժի աստիճանի: Մի կողմից՝ ժամանակակից արդյունաբերության ու գիտության և մյուս կողմից՝ ժամանակակից աղքատության ու անկման միջև գոյություն ունեցող այս անտագոնիզմը, մեր դարաշրջանի արտադրողական ուժերի և հասարակական հարաբերությունների միջև գոյություն ունեցող այս անտագոնիզմը շոշափելի, անխուսափելի ու անվիճելի փաստ է» (Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, Երկեր, հատ. 12, էջ 4):

Մարքսի այս խոսքերը կարծես թե հենց այսօր են գրված՝ XX դարում, երբ կապիտալիզմի պաշտպանների շրջանում իսկ և իսկ նույն պրոցեսն է տեղի ունենում, միայն թե անհամեմատ ավելի մեծ մասշտաբներով և աննախընթաց

խոր ուժով։ Ըստ երևույթին, ճիշտ է այն ասացվածքը, թե պատմությունը կրկնվում է, բայց յուրաքանչյուր անգամ կապիտալիզմի համար ավելի վատ պայմաններում։

Զարգացնելով Մարքսի միտքը բուրժուական պրոգրեսի այլանդակ, հակասական բնույթի վերաբերյալ իմպերիալիզմի պայմաններում, Լենինը գրել է. «Որ կողմ որ նայում ես, ամեն քայլափոխին հանդիպում ես խնդիրների, որ մարդկությունը ի վիճակի է լրիվ լուծել անհապաղ։ Խանգարում է կապիտալիզմը։ Նա կուտակել է հարստության կույտեր—և մարդկանց դարձրել այդ հարստության ստրուկներ։ Նա լուծել է տեխնիկայի շատ բարդ հարցերը և կասեցրել տեխնիկական բարելավումների կիրառումը կյանքում բնակչության միլիոնների աղքատության և տգիտության պատճառով, մի բուռ միլիոնատերերի գծուծության պատճառով» (Երկեր, հ. 19, էջ 478)։ «Կապիտալիզմը գնալով ավելի է արգելակում ժամանակակից գիտության ու տեխնիկայի նվաճումները սոցիալական պրոգրեսի համար օգտագործելու գործը։ Մարդկային հանճարի հայտնագործությունները նա շուռ է տալիս մարդկության՝ իրեն դեմ, դրանք վեր է ածում բնաջնջող պատերազմի ահեղ միջոցների» — ասված է կոմունիստական ու բանվորական պարտիաների ներկայացուցիչների խորհրդակցության վերջերս հրապարակած Հայտարարության մեջ։

Բոլորովին այլ ուղղությամբ է գնում և միանգամայն այլ սոցիալական հետևանքների է հանգեցնում տեխնիկական պրոգրեսը և հասարակական պրոգրեսն ամբողջությամբ սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման ժամանակ։ Այստեղ գիտությունն ու տեխնիկան մարդու ստրկացման միջոցից դարձել են նրա բարօրության ու հզորության բարձրացման միջոց։ Շղթայազերծ արված գիտությունն ու տեխնիկան այստեղ զարգացման աննախընթաց թափ են ստացել։ Սոցիալիստական հասարակությունը դրանից վախենալու հիմք չունի. շահերի, ձգտումների, նպատակների միասնությամբ միավորված, շահագործման ու ճնշման բոլոր ձևերից ազատագրված մարդիկ կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ պլանաչափորեն հաղթահարում են տեխնիկական պրոգրեսի ընթացքում ծագող հակասությունները և այն դիվային ուժից վեր են ածում իրենց հլու ծառայի։ Այստեղ տեխնիկայի, արդյունաբերության յուրաքանչյուր քայլ միևնույն ժամանակ սոցիալական մեծ պրոգրես է, կոմունիզմի լիակատար հաղթանակի ճանապարհին արված մի նոր քայլ։

---

# ԱՇԽԱՏԱՆՔԻ ԱՐՏԱԴՐՈՂԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԱՃԸ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՄԵՋ

Հ. ԹՈՒՄԱՆՅԱՆ

Կապիտալիզմի նկատմամբ սոցիալիզմի հաղթանակի ամենագլխավոր պայմանը հանդիսացել և հանդիսանում է աշխատանքի արտադրողականության անշեղ աճը։ Նկատի առնելով աշխատանքի արտադրողականության բարձրացման բացառիկ նշանակությունը, Վ. Ի. Լենինը գրել է. «Աշխատանքի արտադրողականությունը, վերջին հաշվով, ամենակարևորը, ամենագլխավորն է նոր հասարակարգի հաղթանակի համար։ Կապիտալիզմն ստեղծեց ճորտատիրության օրոք չտեսնված աշխատանքի արտադրողականություն։ Կապիտալիզմը կարող է վերջնականապես հաղթվել և կհաղթվի նրանով, որ սոցիալիզմն ստեղծում է նոր, շատ ավելի բարձր՝ աշխատանքի արտադրողականություն» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 29, էջ 523)։

Կապիտալիզմի նկատմամբ սոցիալիզմի հաղթանակի ապահովման համար աշխատանքի արտադրողականության բարձրացման բացառիկ նշանակության մասին Վ. Ի. Լենինը գրել է 1919 թվականի կեսերին, այսինքն՝ տնտեսական փլուզման և կոնտրռևոլյուցիայի դեմ Ռուսաստանի պրոլետարիատի կենաց ու մահու պայքարի ամենածանր օրերին։ Սոցիալիստական շինարարության հաղթական երթը մեր երկրում լիովին հաստատեց լենինյան այդ դրույթի ճշմարտացիությունը։ Աշխատանքի արտադրողականությունը ՍՍՌՄ արդյունաբերության մեջ 1958 թվականին, 1913 թվականի համեմատությամբ բարձրացավ ավելի քան տասն անգամ։ Նույն ժամանակամիջոցում աշխատանքի արտադրողականությունը ԱՄՆ-ում աճեց 2,4 անգամ, Անգլիայում՝ 1,4 անգամ, Ֆրանսիայում՝ 2,1 անգամ։ Աշխատանքի արտադրողականության բարձրացման տեմպերը ՍՍՌՄ-ում ԱՄՆ-ից բարձր է ավելի քան չորս անգամ, Անգլիայից՝ մոտ 7,1 անգամ, Ֆրանսիայից՝ 5,5 անգամ։ Աշխատանքի արտադրողականության այդպիսի բարձր տեմպերի շնորհիվ ՍՍՌՄ-ը աշխատանքի արտադրողականության բացարձակ մակարդակով աշխարհում գրավեց երկրորդ տեղը, ԱՄՆ-ից հետո։ Եթե 1913 թվականին ԱՄՆ-ում աշխատանքի արտադրողականության մակարդակը Ռուսաստանից բարձր էր 9 անգամ, ապա ներկայումս այդ տարբերությունը կազմում է 2—2,2 անգամ։

Ի՞նչ բան է աշխատանքի արտադրողականությունը։ Այն պայմանավորում է սպառողական արժեքների այն գումարը, որն արտադրվում է որոշակի ժամանակում։ Այլ կերպ ասած, աշխատանքի արտադրողականությունն արտահայտվում է արտադրանքի այն քանակով, որն ստեղծում է աշխատողը ժա-

ժամանակի միավորի ընթացքում, մեկ ժամում, մեկ օրում, մեկ տարում և այլն։ Աշխատանքի արտադրողականությունն արտացոլում է աշխատանքի կոնկրետ բնույթը, նրա օգտակարությունը։ «Աշխատանքի արտադրողական ուժի բարձրացում ասելով մենք այստեղ հասկանում ենք ընդհանրապես աշխատանքի պրոցեսի ամեն մի փոփոխություն, որը կրճատում է տվյալ ապրանքն արտադրելու համար հասարակականորեն անհրաժեշտ աշխատաժամանակը. այսպիսով աշխատանքի մի ավելի փոքր քանակ ընդունակություն է ձեռք բերում սպառողական արժեքի մի ավելի մեծ քանակ արտադրելու» (Կ. Մարքս, Կապիտալ, հ. 1, էջ 331—332, Հայպետհրատ, 1954 թ.)։

Յուրաքանչյուր արդյունքի մեջ պարունակվող հասարակայնորեն անհրաժեշտ աշխատաժամանակը բաղկացած է կենդանի աշխատանքից, որն ստեղծում է նոր արժեք և առարկայացած աշխատանքից, որը կենդանի աշխատանքի կոնկրետ բնույթի շնորհիվ փոխանցվում է արդյունքին։ Աշխատանքի արտադրողականության բարձրացման ըմբռնումը ենթադրում է աշխատանքի պրոցեսում կատարվող ամեն մի փոփոխություն, որով կրճատվում է տվյալ արտադրանքի արտադրության վրա ծախսվող հասարակայնորեն անհրաժեշտ աշխատաժամանակը։ Որքան բարձր է աշխատանքի արտադրողականությունը, այնքան ավելի փոքր է այն աշխատաժամանակը, որ հասարակայնորեն անհրաժեշտ է արտադրանքի արտադրության համար, այնքան ավելի շատ արդյունք է արտադրվում ժամանակի միավորի ընթացքում։

Աշխատանքի արտադրողականության բարձրացման էությունը Կ. Մարքսը բանաձևել է այսպես. «Աշխատանքի արտադրողականության բարձրացումը հենց այն է, որ կենդանի աշխատանքի բաժինը նվազում է, իսկ անցյալ աշխատանքինը՝ աճում, բայց աճում է մի այնպիսի հարաբերությամբ, որ արդյունքի մեջ պարունակվող աշխատանքի ամբողջ գումարը նվազում է, որ ուրեմն կենդանի աշխատանքն ավելի շատ է նվազում, քան անցյալ աշխատանքն ավելանում է» (Կ. Մարքս, Կապիտալ, հ. 3, մասն 1, էջ 244)։ Այսպես՝ ենթադրենք, որ մի որևէ արտադրանքի վրա ծախսվել է հարյուր միավոր կենդանի և առարկայացած աշխատանք, որի մեջ կենդանի աշխատանքի բաժինը 80 է, իսկ առարկայացվածը՝ 20։ Աշխատանքի արտադրողականությունը 10 տոկոսով բարձրացնելու դեպքում արտադրանքի վրա կծախսվի արդեն ոչ թե հարյուր, այլ 90 միավոր, բայց այնպես, որ կենդանի աշխատանքի բաժինը կազմի 70 տոկոս, կամ 63 միավոր, իսկ առարկայացած աշխատանքինը՝ 27 միավոր, կամ 30 տոկոս։ Հասկանալի է, որ աշխատանքի արտադրողականության բարձրացման շնորհիվ հասարակությունը հնարավորություն է ստանում իր ունեցած աշխատանքային ռեսուրսներով ավելի շատ նյութական բարիքներ արտադրելու։

Մարդկային հասարակության զարգացման պատմությունը միաժամանակ աշխատանքի ցածր արտադրողականությունից դեպի բարձր արտադրողականությունն անցնելու պատմություն է, ուստի աշխատանքի արտադրողականության աճն ընդհանուր տնտեսական օրենք է։ Սակայն այդ օրենքի գործողությունները անմիջական կախման մեջ են գտնվում տվյալ հասարակության զարգացման առանձնահատուկ տնտեսական օրենքներից և, ամենից առաջ՝ այդ հասարակության հիմնական տնտեսական օրենքից։ Օրինակ, կապիտալիզմի պայմաններում աշխատանքի արտադրողականության աճի օրենքը ունի սահմանափակ գործողություն և ոչ անպայման նշանակություն, ուստի և աշ-



խատանքի արտադրողականությունը չի բարձրանում անշեղորեն։ Այն մերթ բարձրանում է, մերթ ընդհատվում, իսկ երբեմն նույնիսկ իջնում։ Սոցիալիզմի ժամանակ տնտեսական այդ օրենքի գործողությունն ունի սիստեմատիկ, անպայման նշանակություն և դրսևորվում է աշխատանքի արտադրողականության անշեղ աճի մեջ։ Ահա թե ինչու սոցիալիստական շինարարության տարիներին ՍՍՌՄ-ում աշխատանքի արտադրողականության բարձրացման տեմպերը մի քանի անգամ գերազանցում են կապիտալիստականին։

* * *

Ցարական Ռուսաստանում աշխատանքի արտադրողականության խիստ ցածր մակարդակի ընդհանուր ֆոնի վրա աշխատանքի արտադրողականությունը շատ ավելի ցածր էր ծայրամասերում, ինչպես և Հայաստանում։

1913 թվականին Հայաստանի խոշոր արդյունաբերության մեջ զբաղված բանվորների ընդհանուր թիվը հասնում էր մոտ 5000-ի։ Աշխատանքի ծանր պայմանները, աշխատավորներին անխնա շահագործելը, ինչպես նաև արտադրության տեխնիկայի ու տեխնոլոգիայի խիստ հետամնացությունը պայմանավորում էին Հայաստանի արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականության առավել ցածր մակարդակը։ 1913 թվականին Հայաստանի խոշոր արդյունաբերության համախառն արտադրանքը, 1926/1927 թվականների անփոփոխ գներով հաշված, կազմում էր 15,5 միլիոն ռուբլի։ Եթե համախառն արտադրանքի այդ ծավալը հարաբերենք բանվորների ընդհանուր թվին, յուրաքանչյուր բանվորի տարեկան արտադրանքը կկազմի 3100 ռուբլի։ Հենց այդ էլ արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականության բացարձակ մակարդակն էր։ Աշխատանքի արտադրողականության հիշյալ մակարդակը, համեմատած Ռուսաստանի արդյունաբերության մեջ եղած աշխատանքի արտադրողականության մակարդակի հետ, ցածր էր մոտ 40 տոկոսով։

Սոցիալիստական արտադրահարաբերությունների ստեղծումը Հայաստանում անսահման հնարավորություններ ստեղծեց աշխատանքի արտադրողականության սիստեմատիկ բարձրացման համար։ Դեռևս ժողովրդական տնտեսության վերականգնման և նախապատերազմյան հնգամյակների տարիներին սոցիալիստական էկոնոմիկայի զարգացումը Հայաստանում ուղեկցվեց բանվոր դասակարգի ստեղծման, նրա աշխատանքային ակտիվության ու նախաձեռնության բարձրացմամբ։ Դրան հաջորդեց աշխատանքի արտադրողականության անշեղ աճը, որը բացահայտում են հետևյալ տվյալները.

| | 1913 թ. | 1928 թ. | 1932 թ. | 1937 թ. | 1940 թ. |
|---|---|---|---|---|---|
| Խոշոր արդյունաբերության համախառն արտադրանքը միլիոն ռուբլիներով 1926—1927 թվականների անփոփոխ գներով | 15,5 | 19,4 | 85,6 | 214,3 | 350,6 |
| Արդյունաբերական բանվորների թիվը (հազարներով) | 5,0 | 6.1 | 14,9 | 22,0 | 23,8 |
| Մեկ բանվորի տարեկան արտադրանքը (ռուբլիներով) | 3100 | 3200 | 5700 | 9700 | 14700 |
| Աշխատանքի արտադրողականության աճը 1913 թվականի համեմատությամբ (1913=100) | 100 | 100 | 184 | 313 | 474 |

Այսպիսով, մինչև առաջին հնգամյակի սկիզբը հնարավոր դարձավ բանվորների թվի ավելացման ճանապարհով արդյունաբերության համախառն արտադրանքի չափով անցնել 1913 թվականից, սակայն աշխատանքի արտադրողականությունը 1928 թվականին հասել էր միայն 1913 թվականի մակարդակին։ Նախապատերազմյան հնգամյակների 13 տարիների ընթացքում աշխատանքի արտադրողականությունը Հայաստանի արդյունաբերության մեջ բարձրացավ 4,7 անգամ։

Եթե Հայաստանի խոշոր արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականության մակարդակը 1940 թվականին մնացած լիներ 1928 թվականի մակարդակին, ապա 1940 թվականին կպահանջվեր ոչ թե 23,8 հազար, այլ 109600 բանվոր. այդ նշանակում է, որ աշխատանքի արտադրողականության բարձրացման շնորհիվ տնտեսվել է 85,8 հազար աշխատող ձեռք։ Նախապատերազմյան հնգամյակների տարիներին արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին արտադրվել է 274,4 միլիոն ռուբլու համախառն արտադրանք կամ արդյունաբերության համախառն արտադրանքի 78 տոկոսը։

Հայաստանի գյուղատնտեսության մեջ 1913 թվականին աշխատանքի արտադրողականությունն արդյունաբերության համեմատությամբ ցածր էր մոտ 23 անգամ։ Այսպես, նախասովետական շրջանում Հայաստանի գյուղատնտեսության մեջ աշխատել են 480 հազար մարդ, իսկ գյուղատնտեսության համախառն արտադրանքը, ըստ պաշտոնական վիճակագրության, կազմել է (1926/27 թվականի անփոփոխ գներով) 65,8 միլիոն ռուբլի։ Այդ նշանակում է, որ յուրաքանչյուր աշխատողի տարեկան արտադրանքը կազմել է 137 ռուբլի։ Գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցումը, նրա տեխնիկական բազայի ամրապնդումը կարևոր դեր խաղացին աշխատանքի արտադրողականության բարձրացման համար։ 1940 թվականին Հայաստանի գյուղատնտեսության համախառն արտադրանքի ծավալը հասել էր 103 միլիոն ռուբլու, իսկ նրանում աշխատողների թիվը՝ պակասել էր և հասել 360 հազար մարդու. այդ նշանակում է, որ աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 2,1 անգամ։

Հայաստանի ժողովրդական տնտեսության մեջ աշխատանքի արտադրողականության հետագա բարձրացման համար լայն հնարավորություններ ստեղծվեցին, մասնավորապես հետպատերազմյան տարիներին։ Նախ, ռեսպուբլիկայի հետագա ինդուստրացման բազայի վրա ինտենսիվ կերպով աճեց արդյունաբերության մեջ զբաղված բանվորների թիվը։ Ի տարբերություն նախապատերազմյան շրջանի, երբ արդյունաբերության մեջ ներգրավվում էին ավելի ցածր որակավորում ունեցող բանվորներ, հետպատերազմյան տարիներին արդյունաբերությունը բանվորական ուժով համալրելու գլխավոր աղբյուրը դարձավ աշխատանքային ռեզերվների սիստեմը։ 1946 թվականից մինչև 1958 թվականը տեխնիկական, արհեստագործական և մասնագիտական ուսումնարաններն արդյունաբերական ձեռնարկություններին տվել են 26 հազար որակյալ բանվորներ։ Բացի դրանից արդյունաբերական ձեռնարկություններում աշխատանքի են անցել տասնամյա դպրոցն ավարտած շատ երիտասարդներ ու աղջիկներ։ Եթե նկատի ունենանք, որ ռեսպուբլիկայի արդյունաբերության մեջ



զբաղված բանվորների թիվը 1940—1958 թվականների ընթացքում ավելացել է ավելի քան 70 հազար մարդով, ապա դրանց մի մասն աշխատանքային ռեզերվների ուսումնարանների, մի մասը յոթնամյա և տասնամյա դպրոցների շրջանավարտներն են, իսկ մի մասն էլ բուն իսկ արդյունաբերության մեջ զանազան դասընթացներ անցած բանվորներ։ Այդ ցույց է տալիս, որ հետպատերազմյան տարիներին նշանակալից չափով բարձրացավ բանվորների կուլտուր-տեխնիկական մակարդակը, որը վճռական նշանակություն ունեցավ աշխատանքի արտադրողականության բարձրացման համար։

Բանվորների կուլտուր-տեխնիկական մակարդակի բարձրացման հետ միասին, հետպատերազմյան շրջանում տեղի ունեցավ Հայաստանի արդյունաբերության հիմնական արտադրական ֆոնդերի նորացում և ընդլայնում, որի հետևանքով բարձրացավ բանվորների տեխնիկական զինվածության աստիճանը։ Այսպես, 1958 թվականին Հայաստանի արդյունաբերության արտադրական ֆոնդերը, 1940 թվականի համեմատությամբ, ավելացան 7,2 անգամ։ Նույն ժամանակամիջոցում արդյունաբերության մեջ աշխատողների թիվն ավելացավ մոտ երեք անգամ, որը նշանակում է, թե աշխատանքի տեխնիկական զինվածությունը բարձրացավ 2,4 անգամ։

Աշխատանքի արտադրողականության բարձրացման համար կարևոր գործոն հանդիսացավ աշխատանքի էներգազինվածության մակարդակը։ Եթե 1940 թվականը ընդունենք 100, ապա 1958 թվականին այն կկազմի 200 տոկոս։

Բանվորների աշխատանքի տեխնիկական և էներգազինվածության բարձրացումը կանխորոշեցին աշխատանքի արտադրողականության անշեղ վերելքը Հայաստանի արդյունաբերության մեջ, որը երևում է հետևյալ տվյալներից։

Ամբողջ արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականության բարձրացման տեմպերը մեկ բանվորի հաշվով. 1940 թ. համար եթե ընդունենք 100 տոկոս, ապա 1945 թ.՝ 93, 1950 թ.՝ 137, 1955 թ.՝ 181, 1956 թ.՝ 191, 1957 թ.՝ 198, 1958 թ.՝ 210, 1959 թ.՝ 228 տոկոս։ Այսպիսով, աշխատանքի արտադրողականությունը Հայաստանի արդյունաբերության մեջ հետպատերազմյան տասներեք տարիների ընթացքում բարձրացել է 2,3 անգամ։

Նույն ժամանակամիջոցում աշխատանքի արտադրողականությունը Հայաստանի գյուղատնտեսության մեջ աճեց անհամեմատ ավելի դանդաղ։ ՍՄԿԿ Կենտկոմի 1953 թ. Սեպտեմբերյան պլենումի որոշումների, ապա պարտիայի XX և XXI համագումարների մշակած մի շարք միջոցառումների կիրառմամբ հնարավոր դարձավ հաղթահարել գյուղատնտեսության ետ մնալը և բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը կոլտնտեսային արտադրության մեջ։

Աշխատանքի արտադրողականության բարձրացումը ամբողջ ժողովրդական տնտեսության մեջ իր արտացոլումը գտավ ռեսպուբլիկայի ազգային եկամտի աճման ցուցանիշներում։ Այսպես, 1955—1959 թվականներին Հայաստանի ազգային եկամուտն աճեց 40 տոկոսով, մինչդեռ նյութական արտադրության ճյուղերում զբաղված անձնակազմն ավելացավ ընդամենը 13 տոկոսով։ Այդ նշանակում է, որ Հայաստանի նյութական արտադրության ճյուղերում աշխատանքի արտադրողականությունը հինգ տարվա ընթացքում բարձրացել է 27 տոկոսով, կամ տարեկան միջինը՝ 5,5 տոկոսով։

***

Հայաստանի ժողովրդական տնտեսության մեջ աշխատանքի արտադրողականության բարձրացման համար նոր հնարավորություններ են ստեղծվում 1959—1965 թվականների յոթնամյա պլանով, որը լայն հեռանկարներ է բաց անում Հայաստանի ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի զարգացման համար։ Բավական է նշել, որ արդյունաբերության արտադրանքը 1965 թվականին, 1958 թվականի համեմատությամբ, ավելանալու է 2,3 անգամ, դրան համապատասխան արդյունաբերության արտադրանքի միջին տարեկան աճը կազմելու է 12,8 տոկոս։ Արդյունաբերության նման զարգացումը պայմանավորված է երկու գլխավոր գործոններով։ Նախ՝ կապիտալ ներդրումների, ապա՝ աշխատանքի արտադրողականության անշեղ աճով։

Կապիտալ ներդրումների աճն առանձին վերցրած, իհարկե, չի կարող կարգավորել ժողովրդական տնտեսության ճյուղերի հարաբերակցությունները, մասնավորապես այն չի կարող աշխատանքային ռեսուրսների աճման և դրանց ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերի միջև բաշխելու միակ չափանիշը լինել։ Կապիտալ ներդրումների համապատասխան աճի պայմաններում աշխատանքային ռեսուրսների աճման տեմպերի և ժողովրդական տնտեսության մեջ աշխատողների թվի ավելացման կարգավորողը աշխատանքի արտադրողականության անշեղ աճի տնտեսական օրենքն է։ 1959—1965 թվականներին Հայկական ՍՍՌ-ի արդյունաբերական շինարարության ծավալն ավելի քան կրկնապատկվելու է և համախառն արտադրանքը աճելու է 2,3 անգամ, որի շնորհիվ աշխատուժի քանակն արդյունաբերության մեջ ավելանալու է միայն 63 տոկոսով, հասնելով 192 հազար մարդու։

Հասկանալի է, որ եթե աշխատանքի արտադրողականության մակարդակը 1965 թվականին մնար 1958 թվականի մակարդակի վրա, արդյունաբերության մեջ աշխատողների պահանջը կլիներ ոչ թե 192 հազար, այլ 271 հազար մարդ։ Բայց, քանի որ ըստ աշխատանքի արտադրողականության անշեղ աճի օրենքի յոթնամյակի ընթացքում Հայաստանի արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականությունը բարձրանալու է 45—50 տոկոսով, ուստի համապատասխանաբար կիջնի աշխատուժի պահանջը։ Այսպիսով, 1959—1965 թվականների աշխատանքի արտադրողականության բարձրացումը Հայաստանի արդյունաբերության մեջ երկակի դեր է խաղալու։ Մի կողմից՝ նրա հաշվին խոշոր չափով ավելանալու է արդյունաբերության համախառն արտադրանքը, իսկ մյուս կողմից՝ այն ծառայելու է որպես աշխատուժի բալանսը կարգավորող։ Աշխատանքի արտադրողականության բարձրացման շնորհիվ յոթնամյակում կատարվում է աշխատօրվա տևողության կրճատում և հնարավորություն է ստեղծվում հասարակության բոլոր անդամների բազմակողմանի զարգացման։

Աշխատանքի արտադրողականության բարձրացման պայմանները յոթնամյակի ընթացքում Հայաստանի արդյունաբերության տարբեր ճյուղերում տարբեր են լինելու. ուստի անհրաժեշտ է, թեկուզ ընդհանուր գծերով, քննության առնել աշխատանքի արտադրողականության բարձրացման հեռանկարները ռեսպուբլիկայի արդյունաբերության գլխավոր ճյուղերում։

Ռեսպուբլիկայի արդյունաբերության և ամբողջ էկոնոմիկայի մեջ վճռական դերը պատկանում է մեքենաշինությանը։ Մեքենաշինության դերը յոթնամյակում ավելի է բարձրանում։



Արդյունաբերության այս ճյուղի համախառն արտադրանքը յոթնամյակում ավելանալու է 4,5 անգամ։ Հայաստանի մեքենաշինական արդյունաբերության զարգացման առանձնահատկություններից մեկն այն է, որ յոթնամյակում ավելի մեծ չափով են ընդարձակվում մեքենաշինության առավել աշխատատար ճյուղերը։

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանով մեքենաշինության ճյուղերն ու ձեռնարկությունները ՍՍՌՄ-ի տերիտորիայի վրա տեղաբաշխելիս, բացի այլ պարագաներից, հաշվի է առնվել նաև, որ Հայկական ՍՍՌ-ն ունի բնակչության և աշխատանքային ռեսուրսների հարաբերականորեն բարձր խտություն, ուստի և աշխատուժի լրիվ զբաղվածությունն ապահովելու անհրաժեշտությունից ելնելով, այստեղ ստեղծվում են մեքենաշինության աշխատատար ճյուղեր։ Չնայած դրան, տեխնիկական առաջադիմության, մեքենաշինության մասնագիտացման ու կոոպերացման, աշխատանքի լավագույն կազմակերպման միջոցով, մեքենաշինական և մետաղամշակման արդյունաբերության ճյուղերում աշխատանքի արտադրողականությունը յոթնամյակում բարձրանալու է առնվազն 75 տոկոսով։ Արդյունաբերության այդ ճյուղի արտադրանքի աճի մոտ $^{2}/_{3}$-ը կստացվի ի հաշիվ աշխատանքի արտադրողականության բարձրացման։ Աշխատանքի արտադրողականության այդպիսի բարձրացման պայմաններում էլ մեքենաշինության և մետաղամշակման արդյունաբերության նշանակությունը շատ մեծ է ռեսպուբլիկայի աշխատանքային ռեսուրսների բալանսի կարգավորման գործում։

Բավական է նշել, որ արդյունաբերության այդ ճյուղի կողմից ներկայացվող աշխատուժի լրացուցիչ պահանջը յոթնամյակում կկազմի ռեսպուբլիկայի աշխատունակ բնակչության աճի 30 տոկոսը։

Աշխատանքի արտադրողականության բարձրացման գործում յոթնամյակի տարիներին շատ մեծ դեր է խաղալու քիմիական արդյունաբերությունը։ Քիմիական արդյունաբերության թողարկած արտադրանքի մի շարք տեսակներ օգտագործվելու են ժողովրդական տնտեսության բազմաթիվ ճյուղերում որպես տեխնիկական առաջադիմության կարևոր գործոն։ Դրա հետ միասին մարդկային աշխատանքը թեթևացնելու, նրա արտադրողականությունը բարձրացնելու նպատակով յոթնամյակի տարիներին Հայաստանի քիմիական արդյունաբերության խոշորագույն ձեռնարկություններում կավտոմատացվեն արտադրական շատ պրոցեսներ, ինչպես, օրինակ, էլեկտրոլիզի և պոլիմերիզացման պրոցեսները, քիմիական մի շարք նյութերի ստացման պրոցեսները։ Դրա շնորհիվ, մի կողմից կբարձրանա աշխատանքի անվտանգության աստիճանը, մյուս կողմից էլ՝ աշխատանքի արտադրողականությունը։ Աշխատանքի արտադրողականության բարձրացմանը մեծ չափով կօգնի քիմիական մի շարք նյութերի ստացման տեխնոլոգիական սխեմաների փոփոխումը, կապված քիմիական արդյունաբերության մեջ բնական գազի լայն կիրառման հետ։

Հայաստանի քիմիական արդյունաբերության ձեռնարկությունները միմյանց հետ կոոպերացնելը, ինչպես նաև մի շարք ձեռնարկությունների կոոպերացումն ու կոմբինավորումը գունավոր մետալուրգիայի ձեռնարկությունների հետ, հսկայական չափով կխթանեն աշխատանքի արտադրողականության բարձրացմանը։

Աշխատանքի արտադրողականությունն ավելի մեծ չափերով բարձրանալու է Հայաստանի գունավոր մետալուրգիայի արդյունաբերության մեջ։ Յոթնամ-

յակում խնդիր է դրվում արմատական փոփոխություն մտցնել հանքաքարի հայթայթման վերամշակման մեթոդների մեջ, արմատավորել առաջավոր մեթոդները, որպեսզի հնարավոր դառնա աշխատանքի նվազագույն ծախսումով հանքաքարից կորզել նրա մեջ եղած բոլոր օգտակար կոմպոնենտները։ Յոթնամյակում հանքաքարի հայթայթումը հնարավորության սահմաններում կկատարվի բաց եղանակով, իսկ նրա վերամշակման պրոցեսները կավտոմատացվեն, որը կտա աշխատանքի մեծ խնայողություն։ Այդ և լեռնամետալուրգիական ձեռնարկությունների աշխատողների աշխատանքային ակտիվության բարձրացումը հնարավորություն կտա 75—80 տոկոսով բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը արդյունաբերության այս ճյուղում։

Հայաստանի ծանր արդյունաբերության ճյուղերում աշխատանքի արտադրողականությունը յոթնամյակում կբարձրանա 50—61 տոկոսով։ Ծանր արդյունաբերության համախառն արտադրանքի աճը, որ կազմելու է առնվազն 6,5 միլիարդ ռուբլի, կստացվի, գլխավորապես, ի հաշիվ աշխատանքի արտադրողականության բարձրացման։

Արդյունաբերության ժողովրդական սպառման առարկաներ արտադրող ճյուղերում աշխատանքի արտադրողականությունը յոթնամյակում կբարձրանա առնվազն 45—50 տոկոսով և աշխատողների թվի ավելացման հետ միասին կապահովվի համախառն արտադրանքի աճը 70 տոկոսով։

Շինարարական աշխատանքների հետագա ինդուստրացումը, շինարարության մեջ աշխատանքի առաջավոր մեթոդների ներդրումը հնարավորություն կտան ժողովրդական տնտեսության այդ կարևոր ճյուղում աշխատանքի արտադրողականությունը բարձրացնել մինչև 58 տոկոսով։

Երկաթուղային տրանսպորտի էլեկտրիֆիկացումը, նրա շարժական կազմի լավագույն օգտագործումը, բեռնման և բեռնաթափման աշխատանքների մեքենայացումը հնարավորություն կտան յոթնամյակի ընթացքում երկաթուղային տրանսպորտում աշխատանքի արտադրողականությունը բարձրացնել առնվազն 50 տոկոսով։ Ավտոմոբիլային տրանսպորտում աշխատանքի արտադրողականությունը կբարձրանա մոտ 70 տոկոսով։

Չնայած վերջին տարիներին գյուղատնտեսության վերելքն ապահովող խոշոր միջոցառումներին, և այդ ուղղությամբ արդեն ձեռք բերված ակնհայտ նվաճումներին, այնուամենայնիվ, աշխատանքի արտադրողականությունը գյուղատնտեսության մեջ, արդյունաբերության հետ համեմատած, դեռևս շատ ցածր է։ Այսպես, եթե 1958 թվականին Հայաստանի արդյունաբերության և գյուղատնտեսության մեջ աշխատողների ընդհանուր թվում արդյունաբերության աշխատողների տեսակարար կշիռը կազմում էր ընդամենը 22,3 տոկոս. այդ նույն ժամանակ արդյունաբերական արտադրանքի տեսակարար կշիռը արդյունաբերության և գյուղատնտեսության համախառն արտադրանքի մեջ կազմում էր 72,7 տոկոս։ Հետևապես, 1958 թվականին աշխատանքի արտադրողականությունը Հայաստանի գյուղատնտեսության մեջ արդյունաբերության համեմատությամբ ցածր էր հինգ անգամ։

Յոթնամյա պլանով Հայաստանի գյուղատնտեսության համախառն արտադրանքը 1965 թվականին, 1958 թվականի համեմատությամբ, կավելանա 85 տոկոսով, այդ թվում բուսաբուծության արտադրանքը համարյա կկրկնապատկվի։ Ամենամեծ չափերով կավելանա այգեգործության և պտղաբուծության համախառն արտադրանքը։



Հայաստանի գյուղատնտեսության զարգացման յոթնամյա պլանի առաջադրանքները կատարելու գործում վճռական նշանակություն ունի աշխատանքի արտադրողականության բարձրացումը։ Գյուղատնտեսական հումքի և մթերքների արտադրությունն ավելացնելու երկու հիմնական ուղիներ գոյություն ունեն։ Առաջին՝ երբ երկրում առկա են չօգտագործվող հողային ընդարձակ տարածություններ, որոնք տնտեսական շրջանառության մեջ դնելով, հնարավոր է դառնում ավելացնել գյուղատնտեսության արտադրանքը։ Երկրորդ՝ երբ գոյություն չունեն կամ գրեթե գոյություն չունեն չօգտագործվող հողային տարածություններ. արտադրության զարգացումը այս դեպքում պետք է ընթանա գյուղատնտեսության ինտենսիվացման հաշվին, գյուղատնտեսության մեջ աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին։ Հասկանալի է, որ առաջին դեպքում էլ աշխատանքի արտադրողականության բարձրացումը չի բացառվում, սակայն այն առավել մեծ չափերով պետք է բարձրացնել հատկապես երկրորդ դեպքում։

Հայաստանի գյուղատնտեսության զարգացման առանձնահատկություններից մեկը յոթնամյակում այն է, որ գյուղատնտեսական մի շարք կուլտուրաների ծավալման հնարավորությունները շատ սահմանափակ են. ուստի և արտադրանքի աճման պետք է հասնել բացառապես աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին։

Այգեգործության և պտղաբուծության արտադրանքը յոթնամյակում եռապատկվելու է. դրա մի մասը ձեռք է բերվելու պտղատու այգիների կրկնապատկման հաշվին, իսկ մի մասը՝ աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին։ Անասնաբուծական մթերքների արտադրությունն ավելացնելու ասպարեզում ռեսպուբլիկան ունի դեռևս չօգտագործված ռեզերվներ, որոնց զուգորդումը աշխատանքի արտադրողականության բարձրացման հետ հնարավորություն կտա անասնաբուծական մթերքների արտադրությունն ավելացնել 71 տոկոսով։ Այսպիսով, յոթնամյակում Հայկական ՍՍՌ-ի գյուղատնտեսության զարգացման հիմնական բանալին նրա բոլոր ճյուղերի գծով աշխատանքի արտադրողականության բարձրացումն է՝ գյուղատնտեսության հետագա մեքենայացման բազայի վրա։ Հասկանալի է, որ աշխատանքի արտադրողականության մակարդակը գյուղատնտեսության մեջ կախում ունի, մի կողմից՝ գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունից, անասունների մթերատվությունից և մեկ հեկտարի մշակության ու անասունների պահպանման վրա ծախսվող աշխատանքի քանակից։

Նկատի ունենալով այդ, յոթնամյա պլանով մշակված են մի շարք միջոցառումներ, որոնց կիրառումը կխթանի աշխատանքի արտադրողականության բարձրացմանը։ Այսպես, նախատեսված է 1965 թվականին վարի բոլոր տեսակները մեքենայացնել 90 տոկոսով, հացահատիկային կուլտուրաների ցանքը՝ 94 տոկոսով, բերքահավաքի աշխատանքները՝ 90 տոկոսով։ Անասնաբուծության մի շարք աշխատատար պրոցեսների մեքենայացումը հասցվելու է մինչև 80—100-ի և այլն։ Այդ և աշխատանքների կազմակերպման ու նորմավորման բարելավումը, մասնավորապես կոլտնտեսություններում, կնպաստեն աշխատանքի արտադրողականության բարձրացմանը։

Չի կարելի չնկատել, որ գյուղատնտեսական արտադրանքի մեկ ցենտների արտադրության վրա ծախսված աշխատանքի քանակությունը Հայկական ՍՍՌ-ում ավելի բարձր է, քան միջինը ՍՍՌՄ-ում։

1957 թվականին կոլտնտեսություններում գյուղատնտեսական արտադրանքի մեկ ցենտների վրա ծախսվել է աշխատանքի հետևյալ քանակությունը (մարդ ժամերով).

| | ՍՍՌՄ | Հայկական ՍՍՌ |
|---|---|---|
| Հացահատիկ | 7,3 | 24 |
| Կարտոֆիլ | 5,1 | 15 |
| Շաքարի ճակնդեղ | 3,1 | 7 |
| Բամբակի հումք | 43,8 | 64 |
| Կաթ | 14,7 | 42 |

Այսպիսով, Հայկական ՍՍՌ-ում ՍՍՌՄ միջին տվյալների համեմատությամբ հացահատիկի մեկ ցենտների վրա ծախսված աշխատանքի քանակությունը մեծ է 3,5 անգամ, կարտոֆիլի վրա՝ մոտ 3 անգամ, շաքարի ճակընդեղի վրա՝ ավելի քան 2 անգամ, բամբակի հումքի վրա՝ 1,5 անգամ, կաթի արտադրության վրա՝ 3 անգամ և այլն: Այստեղից էլ հետևում է, որ յոթնամյակի տարիներին լրջորեն պետք է բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը Հայաստանի գյուղատնտեսության մեջ: Ըստ այնմ 1965 թվականին, 1958 թվականի համեմատությամբ, աշխատանքի արտադրողականությունը գյուղատնտեսության ճյուղերում կբարձրանա հետևյալ չափերով (տոկոսներով). հացահատիկային կուլտուրաների արտադրության մեջ՝ 68, բանջարեղենի և կարտոֆիլի՝ 75, բամբակի՝ 100, ծխախոտի և ճակնդեղի՝ 40, այգեգործության՝ 70, անասնաբուծության՝ 36 և այլն:

Գյուղատնտեսության համախառն արտադրանքը 87 տոկոսով աճելու պայմաններում, 1965 թվականին գյուղատնտեսության մեջ աշխատողների թիվը, 1958 թվականի համեմատությամբ, կավելանա միայն 5 տոկոսով: Այդ նշանակում է, որ յոթնամյակի վերջում աշխատանքի արտադրողականությունը գյուղատնտեսության մեջ, 1958 թվականի համեմատությամբ, կաճի ավելի քան 80 տոկոսով: Անհրաժեշտ է նշել, որ աշխատանքի արտադրողականությունը կոլտնտեսություններում մոտավորապես կկրկնապատկվի:

Աշխատանքի արտադրողականության անշեղ աճը Հայաստանի ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում այն կարևոր գրավականն է, որի շնորհիվ կկենսագործվեն յոթնամյա պլանով նախատեսված՝ արտադրական, շինարարական աշխատանքների և աշխատավորների բարեկեցության անշեղ վերելքի ծրագիրը: Աշխատանքի արտադրողականության բարձրացումը հնարավորություն կտա ՍՍՌՄ-ում կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման պրոցեսն արագացնելու, որը կապիտալիզմի նկատմամբ կոմունիզմի հաղթանակն ապահովելու անհրաժեշտ պայմանն է: Ինչպես գրել է Վ. Ի. Լենինը՝ կապիտալիզմի դագաղի վերջին մեխը խփած կլինենք այն ժամանակ, երբ կստեղծենք նրա նկատմամբ առավել բարձր աշխատանքի արտադրողականություն:

---

# ՍՍՌՄ ՕԳՆՈՒԹՅՈՒՆԸ ՏՆՏԵՍԱՊԵՍ ԹՈՒՅԼ ԵՐԿՐՆԵՐԻՆ

## Հ. ՍԱՐԳՍՅԱՆ

Համաշխարհային երկու սիստեմների՝ սոցիալիզմի և կապիտալիզմի մրցությունը թևակոխել է զարգացման նոր փուլ: Խաղաղ գոյակցության և տնտեսական մրցության սկզբունքը, որ մշակել է Վ. Ի. Լենինը և որը զարգացվել է ՍՄԿԿ-ի որոշումներում ու Ն. Ս. Խրուշչովի ելույթներում, արժանացել է բարի կամքի բոլոր մարդկանց պաշտպանությանը, դառնում է երկու սիստեմների փոխհարաբերությունների հիմքը: Այդ մրցության ելքը կախված է շատ գործոններից, այդ թվում նաև այնպիսի գործոններից, ինչպիսիք են իմպերիալիզմի ամբողջ գաղութային սիստեմի փլուզումը և Արևելքի երկրների ներքին ու արտաքին զարգացման ընթացքը, որոնք այժմ առաջնակարգ նշանակություն են ստանում:

Գաղութային սիստեմի փլուզումը ներկայումս տեղի է ունենում ամբողջ թափով: Այդ սիստեմի վերջնական լիկվիդացիան դարձել է օրակարգի հարց: ՄԱԿ-ի Գլխավոր Ասամբլեայի 15-րդ սեսիայում ընկ. Խրուշչովը մեր պետության կողմից առաջարկեց մեկընդմիշտ վերջ դնել գաղութակալությանը: Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո սոցիալիզմի համաշխարհային-պատմական հաղթանակների պայմաններում, արդեն մոտ չորս տասնյակ նախկին գաղութային և կախյալ երկրներ հնարավորություն են ստացել ընթանալու ինքնուրույն զարգացման ուղիով: Այժմ Ասիայի ու Աֆրիկայի ժողովուրդները չեն բավարարվում միայն քաղաքական անկախություն ձեռք բերելով: Արևելքի ժողովուրդները ձգտում են նաև տնտեսական ազատության, սեփական ազգային էկոնոմիկայի ստեղծման:

Արդյունաբերությամբ հետամնաց նախկին գաղութային ու կախյալ երկրների տնտեսական և քաղաքական անկախության շահերը պահանջում են մերձենալ սոցիալիստական լագերի երկրներին, նրանց հետ բարեկամական կապեր հաստատել:

Սովետական Միությունը և սոցիալիստական լագերի բոլոր երկրները ընդառաջում են Աֆրիկայի ժողովուրդների այդ ցանկություններին: Եվ դա հասկանալի է: Լենինի պատգամներին հավատարիմ Սովետական Միությունը միշտ աջակցել է ազատության և անկախության համար գաղութային ժողովուրդների մղած պայքարին: Դա բխել ու բխում է սոցիալիստական սիստեմի բուն էությունից: Այդ աջակցությունն առաջ արտահայտվում էր գլխավորապես բարոյա-քաղաքական ձևով, իսկ այժմ ՍՍՌՄ-ի և սոցիալիստական ամ-

բողջ լագերի հզոր աճման զուգընթաց, դա արտահայտվում է միաժամանակ նաև տնտեսական, նյութական ձևով:

Անկախություն ձեռք բերելուց հետո Արևելքի երիտասարդ պետությունների առջև ծառացած առաջին հարցը գաղութատիրության ծանր հետևանքներն արագորեն վերացնելու հարցն էր: Հարկավոր է առաջին հերթին ստեղծել սեփական արդյունաբերություն: Միայն այդ ճանապարհով կարելի է առաջավոր կապիտալիստական երկրներից տնտեսապես անկախ դառնալ, ամրապնդել պետական սուվերենությունը, պաշտպանվել գաղութային տերությունների ագրեսիվ ոտնձգություններից:

Բայց ինչպե՞ս: Միայն սեփական ուժերով երկրի ինդուստրացումը, նրա համար համապատասխան կադրերի ստեղծումը նշանակում է կորցնել շատ տարիներ, մեծ դժվարություններ կրել, շարունակելով մնալ զարգացած իմպերիալիստական պետությունների հումքի և վաճառահանության շուկա: Մնում էր մի բան. օգնության համար դիմել ուրիշ երկրների: Արևելքի շատ երկրներ դիմեցին Սովետական Միության օգնությանը:

Ի՞նչ նկատառումներով են ղեկավարվում այդ երկրների կառավարությունները՝ դիմելով ՍՍՌՄ-ին և սոցիալիստական լագերի մյուս երկրներին: Նրանք գիտակցում են, որ Սովետական Միությունը շահագրգռված է իրենց պետական սուվերենության ամրապնդմամբ, որ նա օգնություն է ցույց տալիս արդարացի, անշահախնդիր սկզբունքներով: Այնուհետև, ՍՍՌՄ-ը պատմական կարճ ժամկետում հետամնաց ագրարային երկրից վերածվելով առաջավոր ինդուստրիալ երկրի, կուտակել է հսկայական գործնական փորձ, որը այս կամ այն չափով կարող են օգտագործել նաև իրենք: Փաստերը ցույց են տալիս, որ Արևելքի երիտասարդ պետություններին Սովետական Միության կողմից ցույց տրվող տնտեսական ու տեխնիկական օգնությունը նրանց անկախության ամրապնդման կարևոր գործոնն է:

Ներկայումս Սովետական Միությունը տնտեսական և տեխնիկական օգնություն է ցույց տալիս աշխարհի 24 երկրների, որոնք հիմնականում գտնվում են Ասիայում ու Աֆրիկայում: Հետամնաց երկրների և Սովետական Միության միջև կնքված տնտեսական ու տեխնիկական համագործակցության վերաբերյալ համաձայնագրերի հիման վրա ՍՍՌՄ-ը այդ պետություններին, նրանց էկոնոմիկայի զարգացման պլաններն իրագործելու համար, օգնում է ինչպես անհրաժեշտ մեքենաներ ու սարքավորում մատակարարելով, այնպես էլ տեխնիկական միջոցներով և նշված մատակարարումների վճարի դիմաց երկարաժամկետ վարկեր տրամադրելով:

Արդյունաբերական տեսակետից հետամնաց երկրներին Սովետական Միության կողմից ցույց տրվող տնտեսական օգնությունը շատ նշանակալից է: Այդ օգնության ծավալն ու մասշտաբը պատկերացնելու համար բավական է ասել, որ 1960 թվականին իրականացվում է 383 արդյունաբերական, գյուղատնտեսական ձեռնարկությունների և այլ օբյեկտների կառուցումը աշխարհի 24 երկրներում:

Տեսնենք, թե Արևելքի երկրներում արդյունաբերական և գյուղատնտեսական ինչպիսի օբյեկտներ են կառուցվում Սովետական Միության տնտեսական և տեխնիկական օգնությամբ:

Սովետական Միությունը մեծ օգնություն է ցույց տալիս Հնդկական ռեսպուբլիկային, որը ձեռնամուխ է եղել իր ազգային էկոնոմիկայի կազմա-



կերպման դժվարին գործին: Սովետական Միությունը Հնդկաստանին տրամադրել է մոտ 5 միլիարդ ռուբլու վարկ, որը ծախսվում է Բհիլայիի մետալուրգիական, Ռանչինի ծանր մեքենաշինության, նավթաթորման գործարանների, ջերմաէլեկտրակայանների, քարածխի հանքահորերի և մի շարք այլ օբյեկտների կառուցման վրա:

Բհիլայիի մետալուրգիական գործարանը խոշորագույնն է Հնդկաստանում: Նրա զանազան սարքավորումների պատրաստմանը մասնակցել են սովետական 400 ձեռնարկություններ: Գործարանի լրիվ գործարկումից հետո պողպատի ձուլումը Հնդկաստանում 1955 թվականի համեմատությամբ կաճի երկու անգամ: Սովետական Միության օգնությամբ Հնդկաստանը ստեղծում է նավթարդյունաբերություն: Անգլիական գաղութարարները շահագրգռված չէին Հնդկաստանում նավթարդյունաբերության զարգացմամբ և այն վեր էին ածել նավթի վաճառահանման ընդարձակ շուկայի:

ՍՍՌՄ-ը Հնդկաստանին մատակարարեց առաջնակարգ սարքավորում՝ գեոֆիզիկական հետազոտումների համար և նավթահանքերի հորատման սարքավորումներ՝ 13,5 միլիոն հնդկական ռուփի արժողությամբ: Հնդկաստան մեկնեցին Բաքվի և Բաշկիրիայի նավթագործները: Հնդիկ բարեկամների և սովետական մասնագետների միացյալ ջանքերով շուտով երկրի առանձին վայրերում խփեցին նավթի հզոր շատրվաններ:

Սովետական կառավարության ղեկավար Ն. Ս. Խրուշչովի Հնդկաստանում գտնված ժամանակ (1960 թվականի փետրվարի 12-ին) Դելիում ՍՍՌՄ-ի և Հնդկաստանի ռեսպուբլիկայի միջև կնքվեց նոր համաձայնագիր, ըստ որի ՍՍՌՄ-ը Հնդկաստանին տրամադրեց 1,5 միլիարդ ռուբլու (180 կրոր. ռուփի) վարկ: Այդ առթիվ հրապարակված կոմյունիկեում ասված էր, որ համաձայնագրով սահմանվում է Հնդկաստանում երրորդ հնգամյակում կողմերի համագործակցությամբ ավելացնել կառուցվող ձեռնարկությունների թիվը: Դրանց շարքին են պատկանում Բհիլայիի մետալուրգիական, Ռանչի քաղաքի ծանր մեքենաշինության և Դարգպուր քաղաքի լեռնահանքային սարքավորման գործարանների ընդարձակումը և սարքերի արտադրությունը: Ծավալվելու է նաև ջերմաէլեկտրակայանների և Կաբեր քաղաքի էլեկտրասարքավորման ու ճշգրիտ պրիբորների գործարանների շինարարությունը:

Սովետական Միությունն օգնություն է ցույց տալիս արաբական շատ երկրների: Առանձնապես նշանակալից է Միացյալ Արաբական Ռեսպուբլիկային ցույց տրվող օգնությունը: ՄԱՌ-ի Եգիպտական և Սիրիական շրջաններում Սովետական Միության օգնությամբ կառուցվում են շատ օբյեկտներ: Ասուանի ամբարտակը դրանցից մեկն է, որը բացառիկ կարևոր դեր է խաղալու երկրի էկոնոմիկայի հետագա զարգացման գործում: Նախնական հաշվումներով ՄԱՌ-ի Եգիպտական շրջանի ազգային եկամուտը ամբարտակի ավարտումից հետո կաճի 50 տոկոսով: Հենց միայն այդ թիվը բավականաչափ պերճախոս կերպով ցույց է տալիս ՄԱՌ-ի կյանքում Ասուանի ամբարտակի տնտեսական հսկայական նշանակության մասին: Ըստ նախագծի Ասուանի ամբարտակի բարձրությունը գետի մակերևույթից կկազմի 110 մետր, կառույցի երկարությունը՝ 5 հազար մետր, հիմքի լայնությունը՝ 1,3 հազար մետր: Բացի ամբարտակից Նեղոսի վրա կկառուցվեն հզոր էլեկտրակայան, 130 միլիարդ խորանարդ մետր տարողությամբ ջրամբար և էլեկտրահաղորդման գիծ Ասուանից մինչև Կահիրե: Այդ վիթխարի կառուցումը ՄԱՌ-

-ին զգալի չափով կօգնի՝ լուծելու բնակչության զբաղվածության պրոբլեմը և կբարձրացնի նրա կենսամակարդակը, կհեշտացնի Եգիպտոսի ինդուստրացման խնդիրը։

Ասուանի շինարարության հետ մեկտեղ Սովետական Միության օգնությամբ ՄԱՀ-ի Եգիպտական շրջանում կառուցվում են 90 արդյունաբերական ձեռնարկություններ, որոնց թվում մետալուրգիական, նավթամշակման, քիմիական և մեքենաշինական գործարաններ, թեթև ու սննդի արդյունաբերության ձեռնարկություններ։

ՄԱՀ-ի Սիրիական շրջանում կառուցվում են մի քանի ամբարտակ և էլեկտրակայան, որոնցից մեկը՝ Եփրատ գետի վրա — 100 հազար կիլովատ կարողությամբ։ Սովետական Միության օգնությամբ իրականացվող իռիգացիոն կառուցումների շնորհիվ Սիրիայում կյուրացվեն հսկայական չափերի խոպան հողեր։

1959 թվականի մարտի 16-ին Մոսկվայում Իրաքի ռեսպուբլիկայի և Սովետական Միության միջև կնքվեց տնտեսական ու տեխնիկական համագործակցության համաձայնագիր, ըստ որի ՍՍՌՄ-ը պարտավորվեց Իրաքին աջակցություն ցույց տալ ծանր, մեքենաշինական, քիմիական, սննդի ու թեթև արդյունաբերության ձեռնարկությունների կառուցման գործում։ Ֆինանսավորման նպատակով Իրաքին տրամադրվեց 550 միլիոն ռուբլու վարկ։

1960 թվականի փետրվարի 14-ին Բաղդադի արվարձան Դորայում տեղի ունեցավ Բաղդադ—Բասրա 570 կիլոմետր երկարությամբ երկաթուղու կառուցման հանդիսավոր բացումը։ Երկաթուղու կառուցման նախագծումը կատարված է տնտեսական և տեխնիկական համագործակցության սովետաիրաքյան համաձայնագրով։ Ուժեղ թափով առաջ է գնում մեկ նավաշինարանի և երկու շտեմարանի կառուցումը։ Կառուցվող ձեռնարկություններից կարելի է նշել մետալուրգիական, էլեկտրատեխնիկական, էլեկտրալամպերի, ապակու, գյուղատնտեսական մեքենաշինության, ազոտային պարարտանյութերի, ինչպես նաև պահածոյի գործարանները, բամբակագործվածքային կոմբինատը, գուլպա-տրիկոտաժի ֆաբրիկան և այլն։

Սովետական Միությունը Իրաքի ռեսպուբլիկային օգնություն է ցույց տալիս նաև առողջապահության գործի կազմակերպման, նավթի, գազի, սև և գունավոր մետաղների և այլ օգտակար հանածոների հայտաբերման, ազգային կադրերի պատրաստման ուղղությամբ։

Հաջողությամբ են զարգանում տնտեսական հարաբերությունները ՍՍՌՄ-ի և Ինդոնեզիայի միջև։ Անկախության նվաճումից հետո Ինդոնեզիան տրանսպորտի միջոցների սուր կարիք զգաց՝ երեք հազարից ավելի կղզիների միջև կանոնավոր կապ հաստատելու համար։ Այդ բոլորը հաշվի առնելով, Սովետական Միությունը 1956 թվականի սեպտեմբերի 15-ին Ինդոնեզիայի հետ կնքած տնտեսական և տեխնիկական համագործակցության առաջին գլխավոր համաձայնագրի հիման վրա նրան տրամադրեց տասը առևտրական նավ և երկու խոշոր տանկեր, ինչպես նաև 470 միլիոն ռուբլու վարկ։

Սովետական մասնագետների միջոցով և սովետական սարքավորումներով կառուցվում են երկու մետալուրգիական գործարան՝ տարեկան 100 հազար տոննա պողպատի արտադրությամբ, ավտոմոբիլային ճանապարհներ՝ 862 կիլոմետր երկարությամբ, սուպերֆոսֆատի գործարան՝ տարեկան 100



հազար տոննայի արտադրական կարողությամբ, կազմակերպված է բրնձի մշակման մեքենայացված երկու տնտեսություն՝ յուրաքանչյուրը 10 հազար հեկտար տարածության վրա։

Ն. Ս. Խրուշչովի Ինդոնեզիա այցելած ժամանակ՝ 1960 թվականի փետրվարի 28-ին Սովետական Միության և Ինդոնեզիայի ռեսպուբլիկայի միջև կնքվեց տնտեսական և տեխնիկական համագործակցության երկրորդ գլխավոր համաձայնագիրը։ Ըստ այդ համաձայնագրի ՍՍՌՄ-ը Ինդոնեզիայի կառավարությանը տրամադրեց 250 միլիոն դոլար վարկ։ Սովետական Միությունը Ինդոնեզիայի ռեսպուբլիկայի հետ համագործակցում է արդյունաբերական ու այլ օբյեկտների՝ այդ թվում սև ու գունավոր մետալուրգիայի, քիմիական արդյունաբերության և գյուղատնտեսական օբյեկտների կառուցման գործում, որոնք խիստ անհրաժեշտ են երկրի զարգացման համար։

Բիրմայում ՍՍՌՄ-ի օգնությամբ կառուցվում են տեխնոլոգիական ինստիտուտ, հյուրանոցներ և հիվանդանոցներ։ Սովետական նախագծային կազմակերպությունները Բիրմայի բարեկամներին օգնեցին իռիգացիոն երկու կառույցների նախագծման գործում, իսկ սովետական տնտեսագետները օգնեցին նախագծելու Բիրմայի ժողովրդական տնտեսության զարգացման պլանը։

Կամբոջայում կառուցվում է հինգհարյուր մահճակալանոց մի հոսպիտալ՝ օրական 500 հիվանդի սպասարկող պոլիկլինիկայի հետ միասին։ Սովետական մասնագետները Նեպալում կառուցում են շաքարի գործարան, սիգարների ֆաբրիկա, հիդրոէլեկտրակայան և այլ ձեռնարկություններ։

Սովետական Միության օգնությամբ Ցեյլոնում կառուցվում են արդյունաբերական և գյուղատնտեսության տասնվեց օբյեկտներ։ Ցեյլոնին տրամադրվել է 120 միլիոն ռուբլի վարկ և 1 միլիոն 500 հազար ռուբլի արժողությամբ պարեն։ Կառուցվող օբյեկտներից կարելի է նշել մետալուրգիական, բամբակաղտիչ, ավտոդողերի և կամերաների գործարանները, երկու էլեկտրակայան, հացահատիկաշտեմարանը և ալրաղացը։ Հետազոտական մեծ աշխատանք է կատարվում առանձին գետերի ավազաններում իռիգացիոն և հիդրոտեխնիկական կառուցումներ նախագծելու համար։

Մեծ չափերի է հասնում Սովետական Միության օգնությունը Աֆրիկյան երկրներին։ Եթովպիան, Գվինեան, Կոնգոն, Գանան և այլ երկրներ տնտեսական կապեր են հաստատել Սովետական Միության հետ և նրանից տեխնիկական և այլ կարգի օժանդակություն են ստանում։

***

Արևելքի թույլ զարգացած երկրներին Սովետական Միության օգնությունն արտահայտվում է ո՛չ միայն սարքավորումներ մատակարարելով և սովետական մասնագետների օգնությամբ այնտեղ արդյունաբերական ձեռնարկություններ, ոռոգիչ սիստեմներ, ճանապարհներ, էլեկտրակայաններ և այլ օբյեկտներ կառուցելով։ Այդ օգնությունն ավելի լայն է և ընդգրկում է Արևելքի պետությունների գործունեության շատ կողմեր։ Ասիայի ու Աֆրիկայի թույլ զարգացած երկրներին Սովետական Միությունն օգնում է՝ կազմելու տնտեսական զարգացման գիտականորեն հիմնավորված պլաններ, նրանց հաղորդում է ժողովրդական տնտեսության պլանավորման, ինչպես և

արդյունաբերական, գյուղատնտեսական, ժողովրդական լուսավորության,
առողջապահության կադրերի պատրաստման և ուսուցման իր փորձը։
Սովետական Միությունն այդ երկրների հետ համագործակցում է նաև
էներգիայի ամենահզոր աղբյուրի՝ ատոմային էներգիայի ստացման ասպա-
րեզում։ ՍՍՌՄ-ը այդ նպատակով համաձայնագիր ունի Ինդոնեզիական ռես-
պուբլիկայի, Միացյալ Արաբական Ռեսպուբլիկայի և Իրաքի հետ։ Համաձայ-
նագրով նախատեսված է ոչ միայն ատոմային ռեակտորներով և միջուկային
մասերով սարքավորված գիտա-հետազոտական կենտրոնների ստեղծում, այլ
գիտական կադրերի պատրաստում, ֆիզիկական սարքավորման, ինչպես և
գիտա-հետազոտական աշխատանքների համար անհրաժեշտ նյութերի ու
սարքերի մատակարարում։

Սովետական Միությունը պլանավորման իր փորձը սիրով հաղորդում է
Արևելքի երկրներին։ Այդ նպատակով Սովետական կառավարությունը հա-
մապատասխան համաձայնագրեր է կնքել Հնդկաստանի, Իրաքի, Բիրմայի և
այլ երկրների հետ։

Սովետական Միությունում և սոցիալիստական լագերի մյուս երկրնե-
րում կիրառվող պլանավորման փորձը Արևելքի թույլ զարգացած երկրների
կողմից փոխ առնելը, անկասկած, շատ կարևոր նշանակություն ունի նրանց
հետագա զարգացման համար։ Այդ պլանավորումը, իհարկե, բուրժուական
բնույթ է կրում։ Այս երկրներում պետության գործունեության վրա վճռակա-
նորեն ներգործում են կապիտալիզմի օրենքները, կապիտալիստական տնտե-
սության սկզբունքները, տնտեսություն, որտեղ իշխում է արտադրության մի-
ջոցների մասնավոր սեփականությունը։ Այդ պատճառով Արևելքի երկրներում
պլանավորումը սահմանափակ բնույթ ունի և պլանավորման կարելի է ենթար-
կել միայն պետական սեկտորի օբյեկտները։

Թեև Սովետական Միության և Արևելքի երկրների միջև գոյություն ունե-
ցող համագործակցությունը չի էլ կարող այդ ոչ սոցիալիստական երկրնե-
րում վերացնել կապիտալիզմի օրենքները, բայց դա զգալի չափով թուլաց-
նում է իմպերիալիստական պետությունների դիրքերը, նեղացնում է համաշ-
խարհային կապիտալիստական շուկայի ազդեցության ոլորտը, ուժեղացնում
սոցիալիստական երկրների դիրքը, լայնացնում համաշխարհային սոցիալիս-
տական շուկայի ազդեցության ոլորտը և ամրապնդում Ասիայի ու Աֆրիկայի
երիտասարդ պետությունների տնտեսական աճման հնարավորությունները։

Արևելքի նկատմամբ կապիտալիստական Արևմուտքը տանում է «նոր»
քաղաքականություն։ Դա արտահայտվում է նրանում, որ օգնության անվան
տակ իմպերիալիստական տերությունները դիմում են տնտեսական էքսպան-
սիայի քաղաքականության, ոտնահարելով Արևելքի երիտասարդ պետություն-
ների քաղաքական անկախությունը։

Իսկ ինչո՞վ է պայմանավորվում այդ «օգնությունը», ի՞նչ նպատակներ
են հետապնդում իմպերիալիստները և ի՞նչ սկզբունքներով են նրանք ռազ-
մական-տնտեսական, տեխնիկական ու ֆինանսական «օգնություն» ցույց տա-
լիս Արևելքի երկրներին։ Նախ, նրանք ձգտում են քաղաքական անկախություն
ձեռք բերած ժողովուրդներին պահել կապիտալիստական սիստեմի ազդեցու-
թյան ոլորտում, թույլ չտալ սոցիալիզմի լագերի ազդեցության տարածումը
նրանց վրա։

Երկրորդ, Արևմուտքը ձգտում է շարունակել Արևելքի մարդկային ու



բնական հարստությունների շահագործումը, որի վրա էլ պահպանվում է
նրանց ժամանակակից տնտեսական հզորությունը։ Բավական է ասել, որ
Արևմուտքի կապիտալիստական երկրները 1958 թվականին Արևելքի հենց
միայն չորս երկրներում (Կուվեյտ, Սաուդյան Արաբիա, Իրան, Իրաք) ար-
դյունահանել են 200 միլիոն տոննա նավթ և կորզել հեքիաթային շահույթներ։
Աֆրիկան հանդիսանում է Անգլիայի, Ֆրանսիայի, ԱՄՆ-ի, Բելգիայի տնտե-
սության շատ ճյուղերի կարևորագույն նյութեր մատակարարողը։

ԱՄՆ-ը, Անգլիան և Արևմուտքի մյուս պետությունները ատոմային ռում-
բեր արտադրելու համար ուրան են արդյունահանում Կոնգոյում, Հարավ-
Աֆրիկյան Միությունում և Մադագասկարում, ջրածնային ռումբերի արտա-
դրության համար լիթիում են հայթայթում Հարավ-արևմտյան Աֆրիկայում,
Հարավային Ռոդեզիայում, Հարավ-Աֆրիկյան Միությունում և Մադագաս-
կարում։

Երրորդ, պատրաստվելով համաշխարհային նոր պատերազմի, Արևմուտ-
քը ձգտում է աֆրիկա-ասիական երկրները դարձնել իր հենակետը։ ՆԱՏՕ-ի,
ՍԵԱՏՕ-ի և ՍԵՆՏՕ-ի կազմակերպիչները ռազմական բազաներով շրջապա-
տում են Սովետական Միությունը և սոցիալիստական մյուս երկրները։

Չորրորդ, իմպերիալիստական տերություններն «օգնություն» են ցույց
տալիս Արևելքի թույլ զարգացած երկրներին, բայց այդ օգնությունը հետին
նպատակներ ունի։ Դա այն է, որ նրանք ձգտում են ռազմա-քաղաքական ու
տնտեսական կարևորագույն դիրքեր գրավել այդ երկրներում։

«Ազատ աշխարհի» այդ ամբողջ նվագախմբում առաջին ջութակը նվա-
գում են, իհարկե, ԱՄՆ-ը։ Պայքարի պրոցեսում ամերիկյան մոնոպոլիստնե-
րը ավելի են ճզմում իրենց անգլիական, ֆրանսիական, հոլանդական և մյուս
մրցակիցներին։ Պայքարը ԱՄՆ-ի, Անգլիայի, Ֆրանսիայի, Արևմտյան Գեր-
մանիայի, Ճապոնիայի, Իտալիայի և այլ երկրների միջև հումքի նոր աղ-
բյուրների և վաճառահանության շուկայի համար երբեք չի թուլանում։

ՍՍՌՄ-ի տնտեսական և տեխնիկական օգնությունը Արևելքի երկրների
պետական սուվերենության ամրապնդման, գաղութատիրության հետևանքնե-
րի լիկվիդացման, ինդուստրացման բազա ստեղծելու կարևորագույն գործոնն
է, իսկ ամերիկյան և ուրիշ կապիտալիստական երկրների «օգնությունը» դրա
հակառակ ուղղության գործոն է, որը նպատակ ունի քայքայել այդ երկրների
ինքնուրույնությունը, դրանք վերածել կապիտալի ներդրման ոլորտի, հումքի
բազաների և իրենց ապրանքների վաճառահանման շուկաների։ ԱՄՆ-ի «օգ-
նության» քաղաքականությունը էքսպանսիայի քաղաքականություն է, որը
կաշկանդում է այդ երկրների անկախ զարգացումը և նրանց հարկադրում
ծառայելու ամերիկյան իմպերիալիզմի նպատակներին ու խնդիրներին։

Բուրժուական մամուլը ստի ու խաբեության, ուղղակի կեղծարարության
միջոցով փորձում է ամեն կերպ վարկաբեկել Արևելքի երկրներին Սովետա-
կան Միության կողմից ցույց տրվող օգնության նպատակներն ու ձեռնարկում-
ները, Ասիայի ու Աֆրիկայի պետությունների հետ սովետական տնտեսական
հարաբերությունների սկզբունքները։ Գաղութատիրության պաշտպանները
տարբեր ձևերով կրկնում են այն հեքիաթները, թե թույլ զարգացած երկրնե-
րին ՍՍՌՄ-ի ցույց տված տնտեսական և տեխնիկական օգնությունը դա կո-
մունիստների տնտեսական, գաղափարական հարձակումն է Արևելքի երիտա-
սարդ պետությունների վրա, նրանց թույլ էկոնոմիկայի, դեռ չամրապնդված քա-

ղաքական հաստատությունների վրա: Այդ բանում հատուկ եռանդ է դրսևորում ԱՄՆ-ի Պետական դեպարտամենտը: Պետական քարտուղարի տեղակալ Դիլոնը հայտարարել է, թե Սովետական Միությունը իբր մտադիր է «առևտրի և օգնության մեթոդներով» «զավթել» արդյունաբերական տեսակետից թույլ զարգացած երկրները:

Արևմուտքը խիստ դժգոհ է այն բանից, որ Աֆրիկայի ու Ասիայի երկրները համակրանք ու վստահություն են տածում Սովետական Միության նկատմամբ, որ նրա տնտեսական ու տեխնիկական համագործակցությունը այդ երկրների հետ հսկայական ձգողական ուժ ունի: Ուստի Արևմուտքի գաղութային տերությունների պաշտպանները ամբողջ ուժով ձգտում են խախտել այդ երկրների վստահությունն ու համակրանքը, թուլացնել ՍՍՌՄ օգնության ձգողական ուժը: Տեսնելով, որ այդ բոլորը նպատակին չի հասցնում, կապիտալիզմի պաշտպանները հարկադրված են փնտրել «նոր գաղափարախոսություն», ավելի հրապուրիչ «իդեալ»: Նրանք ստեղծել են այն առասպելը, թե ԱՄՆ-ը հանդես են գալիս ոչ միայն գաղութատիրության դեմ, այլև նույնիսկ հանդիսանում են գաղութային ու կախյալ երկրներին պետական անկախություն տալու ակտիվ մարտիկ:

Բայց ինչպես ցույց են տալիս իրական փաստերը, ներգաղութատիրության ոչ «նոր իդեալը», ոչ «նոր գաղափարախոսությունը» սպասվող արդյունքները չեն տալիս ու չեն կարող տալ: Արևելքի ժողովուրդները սովորել են սևը տարբերել սպիտակից: Նրանց ազգային-ազատագրական հզոր շարժումը, որ ծավալվեց երկրորդ համաշխարհային պատերազմից հետո, լեռնային հուժկու գետի նման կործանեց այն պատնեշը, որ գաղութարարները դարեր շարունակ այնքան ջանասիրաբար կանգնեցրել էին անկախության ձըգտող ժողովուրդների ճանապարհին:

Արևելքն արթնացել է: Այն ժամանակաշրջանը, երբ ժողովուրդները շահագործվում էին, կեղեքվում, ճնշվում էին իմպերիալիստական, գաղութային տերությունների երկաթյա շղթաների մեջ, դառնում է նրանց երեկվա օրը, իսկ ազատությունն ու անկախությունը՝ նրանց պայծառ այսօրը:

---

# ԸՆԴԴԵՄ ԿՈՍՄՈԳՈՆԻԱՅԻ ԿՐՈՆԱ-ԻԴԵԱԼԻՍՏԱԿԱՆ ՄԵԿՆԱԲԱՆՄԱՆ

Թ. ԻՍԱՅԱՆ

Մեր դարաշրջանում՝ գիտության մեծագույն հայտնագործությունների դարաշրջանում, դժվար է գերագնահատել մարքս-լենինյան փիլիսոփայության նշանակությունը բնագիտության համար: Մատերիալիստական դիալեկտիկան բնագիտության համար այն միակ մեթոդն է, որը հնարավորություն է տալիս ճիշտ ըմբռնելու նյութական աշխարհի զարգացման հակասական պրոցեսը:

Ինչպես և բնության վերաբերյալ մյուս գիտությունները, այնպես էլ կոսմոգոնիան որպես գիտություն երկնային մարմինների ու նրանց սիստեմների առաջացման ու զարգացման մասին, անհրաժեշտորեն կապված է փիլիսոփայության հետ:

Կոսմոգոնիական գիտության իմացական բովանդակությունը երկնային մարմինների ծագման ու զարգացման օրինաչափությունների արտացոլումն է մարդու գիտակցության մեջ: Դրա համար էլ կոսմոգոնիայի սահմանած ճշմարտություններն անպայմանորեն ունեն մեծ արժեք ու նշանակություն: Ուստի պատահական չէ, որ այն հանդիսացել ու հանդիսանում է փիլիսոփայության երկու հիմնական ուղղությունների՝ առաջադիմական-մատերիալիստական աշխարհայացքի ու իդեալիզմի, գիտության ու կրոնի միջև մղվող պայքարի թատերաբեմ: Փիլիսոփայության հետ և հետևաբար, փիլիսոփայության երկու հիմնական ուղղությունների՝ մատերիալիզմի ու իդեալիզմի հետ կոսմոգոնիայի ունեցած կապը առանձնապես ցայտունորեն դրսևորվում է մի այնպիսի հանգուցային հարցում, ինչպիսին է երկնային մարմինների ու սիստեմների առաջացման և էվոլյուցիայի հարցը: Պայքարով է ներթափանցված տիեզերագիտության ողջ պատմությունը՝ սկսած հին մտածողների նաիվ պատկերացումներից մինչև ժամանակակից գիտելիքները:

Սակայն մեր օրերում, գիտական մտքի նորագույն նվաճումների վրա հիմնված տեխնիկայի աննախընթաց առաջընթացի, ինչպես նաև ժողովրդական մասսաների աճող հասարակական ու քաղաքական ակտիվության, նրանց գիտակցականության աճի պայմաններում ժամանակակից մարդու համար նույնիսկ անհարմար է լրջորեն ընդունել վեց օրում աշխարհի արարչագործության առասպելը, իսկ ինչ վերաբերում է եկեղեցուն, ապա ներկայիս պայմաններում նա այլևս անզոր է բացեիբաց հերքել գիտական նվաճումները կամ իր կեղծ «ճշմարտությունները» պարտադրել մարդկանց կացնով ու նզովքով: Ուստի եկեղեցու համար ոչինչ այլևս չի մնում բացի ստեղծված պայմաններին հար-

մարվելուց։ Այժմ եկեղեցու գաղափարախոսները ստիպված են փոխել գիտության դեմ պայքարի իրենց տակտիկան, հանդես են գալիս գիտականության դիմակով, ջանում են ամեն կերպ հաշտեցնել կրոնը գիտության հետ։

Վերջերս Մոսկվայում կայացած ԱՄՆ-ի բողոքականների, այսպես կոչված՝ «Քրիստոսի եկեղեցիների ազգային խորհրդի» ներկայացուցիչների և ռուսական ուղղափառ եկեղեցու ներկայացուցիչների միջև կայացած բանակցությունների ժամանակ, երբ երկու կողմերն էլ շարադրեցին իրենց տեսակետները գիտության նկատմամբ, ամերիկյան բողոքականները հայտարարեցին, որ իրենք «հրաժարվել են գիտության նոր նվաճումներին դիմադրելու բավականին անմիտ սովորությունից» և շեշտում են գիտության ու այսպես կոչված «գիտականի» միջև խիստ տարբերություն դնելու անհրաժեշտությունը։ «Գիտական» տերմինի տակ ամերիկյան բողոքականները հասկանում են մատերիալիստական աշխարհայացքը։

Նման խոստովանությունների կարելի է հանդիպել կապիտալի աշխարհի մի շարք գիտնականների, ինչպես նաև կրոնի բացահայտ պաշտպանների մոտ։ Վատիկանի հրատարակած «Կրոնն ու գիտությունը» բրոշյուրում կարդում ենք. «Կրոնն ու գիտությունը չեն հակասում և չեն էլ կարող հակասել մեկը մյուսին, քանի որ նրանք խոսում են բոլորովին տարբեր առարկաների մասին, իսկ հակասությունը հնարավոր է միմիայն այնտեղ, որտեղ արտահայտվում են երկու հակադիր պնդումներ միևնույն առարկայի մասին»։ Կալիֆոռնիայի համալսարանի պրոֆեսոր Ռ. Ֆլյուելլինգը «Կուլտուրայի հակամարտությունը և հաշտեցումը» իր գրքում գրում է, որ մեր դարաշրջանը համառ պահանջ է զգում կրոնի նոր մեկնաբանման, որը համապատասխանի ժամանակակից գիտության ստույգ տվյալներին։ Նա հայտարարում է, որ «ավելի քան հարյուր տարվա ընթացքում առաջին անգամն է, որ գիտության ու կրոնի միջև եղած թշնամությունը կարող է վերացվել» (R. Plewelling Conflict and Conciliation of Culture, էջ 9)։

Իդեալիստորեն տրամադրված գիտնականները առանձնապես մեծ ակտիվություն են ցուցաբերում կոսմոգոնիայի բնագավառում ձեռք բերված նվաճումները կրոնի հետ հաշտեցնելու գործում։ Եվ դա պատահական չէ։ Տիեզերքի առաջացման, կառուցվածքի ու էվոլյուցիայի հարցերը միշտ էլ անհանգստություն են պատճառել կրոնի պաշտպաններին, ստիպել նրանց նահանջելու իրենց դիրքերից։ Ուստի և կոսմոգոնիայի բնագավառում ձեռք բերված յուրաքանչյուր նոր նվաճում, որն անխուսափելիորեն հանգեցնում է մատերիալիստական ու աթեիստական հետևությունների, կրոնի պաշտպաններին ստիպում է լինել զգույշ և զգաստ, գործադրել ամեն մի ջանք, որպեսզի գեթ մի որևէ «ընդհանուր հող» գտնվի, որի վրա կարելի լինի այդ նվաճումները հարմարեցնել կրոնական դոգմաներին ու հնարանքներին։ Ահա թե ինչու կոսմոգոնիական գիտության զարգացման զուգընթաց կապիտալի աշխարհում գրվում, հրապարակվում ու ռեկլամվում են բազմաթիվ գրքեր ու բրոշյուրներ, որոնց մեջ բացեիբաց քարոզվում են գիտական մտածողության անզորությունը, ճանաչողության հնարավորության սահմանափակությունը, խեղաթյուրվում են կոսմոգոնիական գիտության նվաճումները, ամենակոպիտ կերպով փորձ է արվում ապացուցելու, որ իբր կոսմոգոնիան ոչ միայն համատեղելի է կրոնի հետ, այլև հաստատում է երկրի արարչագործության բիբլիական պատկերը։

Իդեալիստորեն տրամադրված գիտնականների ու կրոնի սպասավորների



աչքից չի վրիպում նաև այն հանգամանքը, որ ժամանակակից կոսմոգոնիայի բնագավառում թերևս գոյություն ունեն բարդ, դժվարին, ոչ բավարար չափով պարզաբանված պրոբլեմներ, որի պատճառով գիտնականները ստիպված են սահմանափակվել սոսկ ենթադրություններով ու մտահայեցողական կառուցումներով։

Այս դժվարին պրոբլեմները ծագել են հենց գիտական հետազոտությունների առաջընթացով, գիտության բուռն զարգացման դժվարություններից, նշում է Վ. Ի. Լենինը. «Գիտության բուռն պրոգրեսից... ծնունդ են առնում ռեակցիոն ոտնձգությունները» (Երկեր, հ. 14, էջ 411)։ Նման ոտնձգությունները գիտության, մասնավորապես կոսմոգոնիայի մեջ թափանցում են մտահայեցողական կառուցումների, հակագիտական, իդեալիստական ու մեխանիստական հայացքների կոնցեպցիաների ձևով։ Դրանց հեղինակները փորձում են կոսմոգոնիական գիտության նորագույն նվաճումներին տալ գռեհիկ, հակագիտական բացատրություն։ Որոշ ռեակցիոն գիտնականներ իրենց դասակարգային պատկանելության և իդեալիստական աշխարհայացքի բերումով պատրաստակամությամբ ջանում են գիտությունը հարմարեցնել կրոնի շահերին, հետին պլանի վրա մղելով իսկական գիտությունը։

Հենվելով նման գիտնականների «հեղինակության» վրա, կրոնի սպասավորներն այժմ փորձում են նրանց աջակցությամբ հորինել աստծո գոյությունն իբր ապացուցող տարբեր հակագիտական տեսություններ։ Այդ նպատակով են հորինվել կապիտալի աշխարհում լայն տարածում գտած տիեզերքի «ջերմային վախճանի», «լայնացող տիեզերքի» և մի շարք այլ իդեալիստական տեսություններ։

Տեսնենք, թե ինչ են իրենցից ներկայացնում այդ տեսությունները։

Տիեզերքի «ջերմային վախճանի» հնարավորության պատկերացման հիմքում ընկած է դեռ XIX դարի կեսերին պարզաբանված թերմոդինամիկայի, այսպես կոչված, երկրորդ սկզբունքի սխալ մեկնաբանումը։ 1850 թվականին գերմանացի խոշոր ֆիզիկոս Ռ. Կլաուզիուսի կողմից ձևակերպված այդ սկզբունքի էությունը հետևյալն է. էներգիայի բոլոր ձևերը վերածվում են ջերմային էներգիայի, իսկ ինքը ջերմությունը կարող է փոխանցվել սոսկ ավելի տաք մարմնից ավելի սառը մարմնին։ Սրանից հետևում է, որ ամեն մի ներփակ, մեկուսացված սիստեմում ամբողջ էներգիան ժամանակի ընթացքում կվերածվի ջերմության, իսկ ջերմությունը կբաշխվի ջերմաստիճանի հավասարման ուղղությամբ, որը միատեսակ կդառնա տվյալ սիստեմի բոլոր մարմինների համար։

Ներփակ սիստեմի պայմաններում թերմոդինամիկայի երկրորդ սկզբունքի ճշտությունը հաստատվում է փորձով, մասնավորապես մեքենաների ու մեխանիզմների աշխատանքի փորձով։ Սակայն Կլաուզիուսը և նրանից մի փոքր առաջ Վ. Թոմսոնը (լորդ Կելվինը) փորձեցին այդ սկզբունքը տարածել ամբողջ տիեզերքի վրա՝ ելնելով այն բանից, որ տիեզերական ամբողջ տարածությունում տեղի է ունենում էներգիայի վերաբաշխում, ընդ որում տիեզերքի լրիվ էներգիան փոխակերպումների միջոցով (էներգիայի պահպանման օրենքին համաձայն), ժամանակի ընթացքում այն ամբողջովին կվերածվի ջերմության և հետագա փոփոխումների ընդունակ չի լինի։ Ընդսմին տիեզերքի գոյությունը չի դադարի, բայց նրանում կդադարի ամեն մի շարժում. ամեն մի ֆիզիկական և այլ պրոցես։

Տիեզերքի այսպիսի «ջերմային վախճանի» հնարավորության պատկերա-
ցումը խիստ առարկությունների ու քննադատության է հանդիպել դեռևս Ֆ.
Էնգելսի կողմից, որը ցույց տվեց թերմոդինամիկայի երկրորդ սկզբունքը (ներ-
փակ, այսինքն վերջավոր, սիստեմների համար իրավացի սկզբունքը) անսահ-
ման տիեզերքի վրա տարածելու փորձերի լիովին անհիմն լինելը, որովհետև
այդպիսի փորձերը հանգեցնում են այն անհեթեթ եզրակացության, թե էներ-
գիան (հակառակ էներգիայի պահպանման օրենքի) արարչագործված է և ոչըն-
չանալի։

Չնայած որ տիեզերքի «ջերմային վախճանի» հակագիտական տեսության
հիմքում ընկած են ոչ ճիշտ պատկերացումները տիեզերքի մասին, որպես
երկնային մարմինների վերջավոր, սահմանափակ ու մեկուսացված սիստեմի.
այնուամենայնիվ բրիտանական գիտությունների ասոցիացիայի հարյուրամյա
հոբելյանին նվիրված ժողովում. այնտեղ լայն դիսկուսիա ծավալվեց տիեզեր-
քի առաջացման ու էվոլյուցիայի հարցի շուրջ, տիեզերքի «ջերմային վախ-
ճանի» տեսությունը ոչ միայն չմերժվեց, այլև ավելի խնամքով քողարկվեց
որոշ գիտնականների կողմից, ստանալով «գիտական հիպոթեզի» տեսք։

Այժմ տիեզերքի «ջերմային վախճանի» հակագիտական տեսության պաշտ-
պանությամբ հանդես են գալիս ոչ միայն իդեալիստորեն մտածող գիտ-
նականները, այլև կրոնի բացահայտ պաշտպանները։ Այդ տեսության մո-
լեռանդ պաշտպան Ցյունկլինգը հանգում է այն եզրակացության, որ «եթե պի-
տի լինի վերջ, ապա, հետևապես եղել է և սկիզբ, և էներգիայի կամ նյութի
հավերժության հին գաղափարը պետք է գեն նետվի» (նույն տեղը, էջ 71)։

Հայտնի է, որ ջերմության փոխակերպումը աշխատանքի կապված է այն
բանի հետ, որ ավելի տաք մարմնից ջերմությունը անցնում է ավելի սառը
մարմնին, որը հանգեցնում է ջերմաստիճանների հավասարեցման, իսկ եթե
ջերմաստիճանների տարբերություն չկա, ապա ջերմային էներգիան չի կարող
վերածվել մեխանիկական կամ այլ էներգիայի, չի կարող կատարել օգտակար
գործողություն։ Ելնելով ջերմային էներգիայի այս առանձնահատկությունից,
առաջին հայացքից կարելի է հանգել այն եզրակացության, թե տիեզերքում
էներգիայի բոլոր տարբեր ձևերը կփոխարկվեն ջերմայինի, հավասարաչափ
ցրվելով տարածության մեջ և վրա կհասնի տիեզերքի «ջերմային վախճանը»։

Սակայն այդ պնդումը հակասում է բնության այն հիմնական, ընդհանուր,
բացարձակ օրենքին, ինչպիսին էներգիայի պահպանման և փոխակերպման
օրենքն է։ Այս օրենքի համաձայն էներգիան ոչ միայն չի ոչնչանում, այլև եր-
բեք ու ոչ մի տեղ չի կարող կորցնել նորանոր փոխակերպումների ունակու-
թյունը։ Այստեղից հետևում է, որ տիեզերքում երբեք վրա չի հասնի այնպիսի
վիճակ, երբ էներգիայի ձևերը վերածվեն տիեզերական տարածության մեջ հա-
վասարաչափ ցրված ջերմային էներգիայի։ Իրականում բնության մեջ գոյու-
թյուն չունեն բացարձակ փակ, մեկուսացված սիստեմներ։ Եթե դիտենք էներ-
գիայի փոխակերպման պրոցեսները Արեգակնային համակարգության մեջ կամ
Գալակտիկայում, ապա ոչ մի հիմք չկա դրանց նկատմամբ կիրառելու մեկու-
սացված սիստեմի հասկացությունը, առավել ևս անթույլատրելի է այդ հաս-
կացության կիրառումը ողջ տիեզերքի նկատմամբ։
Հետևապես տիեզերքի «ջերմային վախճանի» ողջ կոնցեպցիան հակասում
է փաստերին, գիտության նորագույն նվաճումներին։ Թերմոդինամիկայի երկ-
րորդ սկզբունքը, որի վրա հիմնվում են տիեզերքի «ջերմային վախճանի» հա-



կագիտական տեսության բոլոր կողմնակիցները, հանդիսանում է ոչ թե բա-
ցարձակ, այլ միայն և միայն ստատիկ օրենք, որն իրեն արդարացնում է այն
դեպքում, երբ մենք գործ ունենք ներփակ, մեկուսացված սիստեմների հետ։

Այժմ տեսնենք, թե ինչ է իրենից ներկայացնում այսպես կոչված «լայնա-
ցող տիեզերքի» տեսությունը։

Ամերիկացի աստղագետ Հաբլը և ուրիշ գիտնականներ արտաքին գալակ-
տիկաների շարժումն ուսումնասիրելիս կիրառելով Դոպլերի սկզբունքը[1], հայտ-
նաբերեցին հետաքրքրական օրինաչափություն։ Ստացվում է, որ դրանք, բացա-
ռությամբ երեք մերձակա գալակտիկաների, հեռանում են մեր գալակտիկայից
հսկայական արագություններով, ընդ որում նրանց արագությունը այնքան
ավելի է մեծ, որքան ավելի հեռու է գտնվում գալակտիկան։ Գալակտիկաների
այդ «տարացրումը» հայտնաբերվել է սպեկտրի կարմիր մասի գծերի տեղա-
շարժի միջոցով. այս երևույթը ստացել է «կարմիր տեղաշարժ» անունը։ Եթե
գալակտիկաների սպեկտրներում գծերի այդ տեղաշարժը համարվի Դոպլերի
էֆեկտի արդյունք (իսկ մի որևէ այլ բացատրություն տալու փորձերը ապար-
դյուն են եղել), ապա դիտվող երևույթից հետևում է, որ բոլոր գալակտիկաները
հեռանում են դիտողից («տարացրվում են»), ընդ որում գալակտիկաների արա-
գությունները այնքան ավելի են, որքան հեռու են նրանք դիտողից։ Այդ արա-
գությունների վերլուծությունից կարծես բխում է, թե նախկինում մինչև այդ
գալակտիկաների հեռավորությունը ավելի փոքր է եղել, իսկ մի ժամանակ
բոլոր գալակտիկաները եղել են մի տեղում, տարածության մի կետում, որտե-
ղից և սկսվել է տիեզերքի լայնացումը։ Այս հետևությունը, համապատասխան
հաշվումներով հանդերձ, արել է բելգիացի մաթեմատիկոս Ժ. Լեմետրը, որը
դրանց օգնությամբ մեկնաբանել է վերջավոր լայնացող տիեզերքի տեսությունը։
Գալակտիկաների ցրման փաստը, որը հաստատված է դիտումներով, այդ
տեսությունը բացատրում էր այնպիսի ենթադրություններով, որոնք միանգա-
մայն անընդունելի են գիտական ճշմարտությունների տեսակետից։ Լեմետրը
«ապացուցում էր», որ մի ժամանակ տեղի է ունեցել ինչ-որ առանձին «հսկա-
յական ատոմի» «առաջնային լայնացում»։ Առաջնային այդ ատոմը Լեմետրը անվա-
նում է «անմատչելի սկիզբը» և նմանեցնում Հին կտակարանի Եսայի մարգարեի
«թաքնված աստծո» հետ, որը «անմատչելի է նույնիսկ իր գոյության սկզբում»։
Լեմետրի հաշվումների համաձայն «հսկա-ատոմը», այդ «անմատչելի սկիզ-
բը... որին չի կարելի հասնել նույնիսկ մտքով», իբր ունեցել է ժամանակին
օպտիկական տիեզերքի ամբողջ ծավալում տեղավորված բոլոր գալակտիկա-
ների ընդհանուր մասսային հավասար զանգված։ Այդ անընդհատ լայնացումը
սկսվել է երկու միլիարդ տարի կամ փոքր-ինչ ավելի առաջ։
Կասկածից վեր է, որ Լեմետրի առաջադրած տեսությունը ապացուցում է
կղերական-իդեալիստական աշխարհայացքը, որը ձգտում է գիտականակերպ
ձևով վերածնել աշխարհի արարչագործության առասպելը և դրանով իսկ նոր
պայմաններում գիտությունը հաշտեցնել կրոնի հետ։
Իսկ ո՞րն է Լեմետրի տեսության գիտական սնանկությունը, այն տեսու-

1 Քրիստիան Դոպլեր (1803—1853 թթ.)—ավստրիական ֆիզիկոս և աստղագետ։ 1842
թվականին Դոպլերը տեսականորեն հիմնավորեց ակուստիկայի և օպտիկայի սկզբունքը, ըստ
որի, դիտորդի կողմից ընկալվող տատանումների հաճախականությունը կախված է դիտորդի և
տատանումների շարժման աղբյուրի արագությունից և ուղղությունից։

թյան, որը կարծես թե ելնում էր դիտումների տվյալներից և դրանց վերլուծության վրա հիմնված հաշվումներից: Լեմետրը մեթոդոլոգիական սխալ է կատարում տիեզերքի դիտվող, տարածականորեն վերջավոր մասի հատկությունները մեխանիկորեն վերագրելով ամբողջ անծայրածիր տիեզերքին: Այդ սխալի մեջ լրիվ չափով արտացոլվել է տեսության հեղինակի մտքի իդեալիստական բնույթը. այդ տեսությունը մի կողմից ժխտում է տիեզերքի անսահմանությունը, իսկ մյուս կողմից ձգտում է բնության բարդ երևույթներին տալ այնպիսի բացատրություն, որը գիտելիքը փոխարինում է հավատով, իսկ գիտությունը քողարկված, բայց ըստ էության աներկիմաստ թեոլոգիայով:

Ահա թե ինչու «լայնացող տիեզերքի» տեսությունը ճանաչում ու հավանություն է գտել ոչ միայն իդեալիստորեն տրամադրված գիտնականների, այլև կաթոլիկ եկեղեցու կողմից: Հանդես գալով Վատիկանի ակադեմիայում «աստծո գոյության հաստատումը ժամանակակից գիտության լույսի տակ» ընդարձակ ճառով, Պիոս XII պապը մասնավորապես կանգ առավ «լայնացող տիեզերքի» տեսության վրա: «Այսպիսով,— եզրակացրեց պապը,— արարչագործություն՝ ժամանակի մեջ, ուստի և արարիչ և, հետևապես՝ աստված: Ահա այն խոսքերը, որոնք մենք պահանջում էինք գիտնականներից»: Նրա կարծիքով բնագիտությամբ զբաղվել նշանակում է ուսումնասիրել բնությունը՝ որպես աստծո արարչագործություն և դրանով իսկ օժանդակել աստծո էության ավելի խոր ըմբռնմանը: Որքան բնագիտությունը խորն է թափանցում բնության օրենքների մեջ, եզրակացնում է պապը, այնքան ավելի է բացահայտում աստծուն, և դրա համար էլ ամրապնդվում են «աստծու գոյության ապացույցները» և միայն այդ սահմաններում՝ դրանք կարող են հավանություն գտնել կաթոլիկ եկեղեցու կողմից:

Սակայն «լայնացող տիեզերքի» տեսությունն այժմ վճռականորեն մերժվում է գիտնականների գերակշռող մեծամասնության կողմից, որոնք իրավացիորեն այդ տեսությունը գնահատում են որպես հակագիտական, քանի որ տիեզերքի լայնացումը սկզբնական ատոմից մինչև իր ժամանակակից սահմանները՝ մի անհնար պրոցես է: Այդ տեսությունը նպատակ ունի հիմնավորել այնպիսի դրույթներ, որոնք լիովին անհիմն են ֆիզիկայի հանրաճանաչ ճշմարտությունների լույսի տակ:

Ժամանակակից կոսմոգոնիան իր տրամադրության տակ ունի բավականին հարուստ փաստական նյութ, որը հնարավորություն է տալիս որոշակի պատկերացում կազմելու երկնային մարմինների առաջացման, նրանց էվոլյուցիայի և կոսմոգոնիայի համար կարևոր այլ հարցերի մասին, որոնք ունեն գիտական և գաղափարական կարևոր նշանակություն:

Ինչպես հայտնի է, տիեզերքի այն մասը, որը մեզ հաջողվում է ուսումնասիրել հզոր աստղադիտակներով և մյուս աստղադիտական սարքավորումներով, կազմված է աստղային առանձին խոշոր համակարգություններից՝ գալակտիկաներից: Յուրաքանչյուր գալակտիկայում մենք հանդիպում ենք տասնյակ և հարյուրավոր միլիարդ տարբեր տիպերի և տեսակների աստղերի ու նրանց խմբավորումների:

Ինչպե՞ս են առաջացել աստղերն ու նրանց խմբավորումները, առաջացե՞լ են արդյոք դրանք Տիեզերքի պատմության ինչ-որ ժամանակաշրջանում միայն, թե՞ այդ պրոցեսը շարունակվում է Տիեզերքի զարգացման ներկա էտապում ևս:



1947—1950 թվականներին ակադեմիկոս Վ. Հ. Համբարձումյանը հայտնագործեց Գալակտիկայի կազմում երիտասարդ աստղերի խմբավորումների գոյությունը, որոնք գիտնականի կողմից անվանվեցին աստղասփյուռներ: Դրանց մանրամասն ուսումնասիրությունը Բյուրականի աստղադիտարանում հանգեցրեց այն կարևոր եզրակացությանը, որ դրանք իրենցից ներկայացնում են անկայուն աստղերի խմբեր, որոնց կյանքի տևողությունը մի քանի միլիոն տարուց չի անցնում: Վերջերս մեքսիկացի աստղագետ Հարոն և ամերիկացի աստղագետ Հերբիգը հայտնաբերեցին օբյեկտներ, որոնք իրենց բոլոր տվյալներով հանդիսանում են երիտասարդ խմբավորումներ, որոնց տարիքը հասնում է մոտավորապես մեկ միլիոն տարվա: Եթե գեոքիմիայի տվյալներով մեր Երկրի և հետևապես Արեգակի տարիքը մի քանի միլիարդ տարուց պակաս չէ, ապա մնում է ընդունել, որ աստղասփյուռները առաջացել են Գալակտիկայի զարգացման ներկա աստիճանում: Այդ նշանակում է, որ աստղերը շարունակում են կազմավորվել Գալակտիկայի զարգացման ներկա աստիճանում ևս:

Աստղասփյուռների կազմում կրկնակի, եռակի, բազմակի աստղերի, և աստղակույտերի մեծ առատությունը վկայում է կոսմոգոնիկ տեսակետից չափազանց կարևոր այն պատկերացման օգտին, որի համաձայն աստղերը Գալակտիկայում առաջանում են խմբերով: Այսպիսով, ժամանակակից գիտության բոլոր տվյալները հաստատում են առաջին անգամ Բյուրականի աստղադիտարանում ստացված մատերիալիստական այն եզրակացությունը, որ աստղասփյուռները աստղառաջացման օջախներն են Գալակտիկայում, որոնց ներսում աստղերը ձևավորվում են խմբերով (տես, Վ. Հ. Համբարձումյան, Գիտական աշխատություններ, հ. 2, էջ 128):

Աստղասփյուռների ուսումնասիրությունը լայն հնարավորություններ է բացում աստղերի, ինչպես նաև աստղային սիստեմների առաջացման և էվոլյուցիայի օրինաչափությունների հետագա հետազոտությունների գործում: Ուստի պատահական չէ, որ աստղասփյուռների հայտնագործումը իր վրա բևեռեց սովետական ու օտարերկրյա գիտնականների ուշադրությունը և վերջիններիս ուսումնասիրություններում ստացվեցին այնպիսի արդյունքներ, որոնք հաստատում էին աստղասփյուռների անկայունության մասին Վ. Հ. Համբարձումյանի հիմնական եզրակացությունը:

Չափազանց կարևոր գիտական նշանակություն ունի նաև այն հարցը, թե ինչ նյութից են առաջանում նոր աստղային խմբավորումները:

Այս հարցով զբաղվել են ու շարունակում են զբաղվել աշխարհի շատ աչքի ընկնող գիտնականներ: Նրանց մեծ մասը կանգնած է այն տեսակետի վրա, որ աստղային խմբավորումներն առաջանում են դիֆուզ նյութից, այսպես կոչված գալակտիկ միգամածություններից:

Ակադեմիկոս Վ. Հ. Համբարձումյանը գտնում է, որ աստղասփյուռներում ինչպես աստղերը, այնպես էլ նրանց մեջ մտնող միգամածությունները առաջանում են նյութի այլ վիճակից՝ այսպես կոչված նախաաստղերի քայքայման հետևանքով: Գիտնականի կարծիքով աստղասփյուռներին վերաբերող շատ դիտողական փաստեր հավանաբար վկայում են Գալակտիկայում նյութի նոր, առայժմ մեզ անհայտ վիճակների գոյության մասին:

Աստղասփյուռների ուսումնասիրության հիման վրա ակադեմիկոս Համբարձումյանի տեսական եզրակացությունները վերջին տարիներին իրենց վճ-

ռական հաստատումն ստացան սովետական և արտասահմանյան գիտնականների բազմաթիվ աշխատություններում:

Այսպիսով, աստղաֆիզիկայի տեսությունը ելնում է ոչ թե հնարովի, անսպասելի պայթյունների ու կատաստրոֆների առկայությունից, այլ դիալեկտիկորեն միմյանց պայմանավորող քանակական ու որակական փոփոխությունների պրոցեսներից, որոնք ներհատուկ են բնությանը: Աստղաֆիզիկայի հայտնագործումը բացահայտում է տիեզերքում նոր որակի առաջացման օրենքի նոր դրսևորումներ, որոնք պայմանավորված են նյութի ինքնազարգացման ներքին աղբյուրների ազդեցությամբ, տարբեր պայմաններում գործող հակադիր ուժերի տենդենցների պայքարով: Ահա թե ինչու աստղաֆիզիկայի հայտնագործումը, բացի գիտական մեծ արժեքից, ունի նաև մեծ իմացական նշանակություն: Այդ հայտնագործությունը մեկ անգամ ևս հաստատում է մատերիալիստական փիլիսոփայության այն դրույթի ճշտությունը, ըստ որի ինչպես ողջ տիեզերքը, այնպես էլ Երկիրը ոչ որի կողմից չի ստեղծված, որ նրանում ոչինչ վերջնական ու անփոփոխ չէ, որ նրանում միշտ ինչ-որ բան առաջանում է, զարգանում, ինչ-որ բան քայքայվում ու ապրում իր դարը: Տիեզերքն իրենից ներկայացնում է ժամանակի և տարածության մեջ մատերիայի զարգացման պրոցես, «որի մեջ մատերիայի գոյության յուրաքանչյուր վերջնական ձևը,— միևնույն է՝ լինի այդ Արեգակ, թե մշուշաղանգված, առանձին կենդանի, թե կենդանական տեսակ, քիմիական միացություն, թե տարալուծում — հավասարապես անցողիկ է և որի մեջ ոչ մի բան հավերժական չէ, բացի հավերժ փոփոխվող մատերիայից և նրա շարժման ու փոփոխման օրենքներից» (Ֆ. էնգելս, Բնության դիալեկտիկա, էջ 28):

Սովետական գիտնականների հայտնագործումների շնորհիվ խորտակիչ հարված հասցվեց բուրժուական գիտնականների առաջ քաշած և եկեղեցու կողմից ռեկլամվող այն անհեթեթ ու կեղծ գիտական տեսությունների, որ աստղերը գոյանում են կամ ոչնչից, կամ էլ մի ակնթարթում: Ինչպես տեսանք, այդ «տեսությունները» ոչ մի կապ չունեն փաստական տվյալների հետ և գիտական տեսակետից սնանկ են, ինչպես և ագնոստիկների ու իդեալիստների այն հոռետես պնդումները, թե իբր մարդիկ անզոր են իմանալու և երբեք էլ չեն կարող իմանալ, թե ինչպես են առաջանում երկնային մարմինները:

Կրոնը, եկեղեցին և նրա սպասավորները միշտ էլ ձգտել ու ձգտում են թերահավատություն սերմանել գիտական ճշմարտությունների նկատմամբ, երբ արդեն անզոր են ուղղակի հերքել դրանք, կամ՝ համարեցնել իրենց նպատակին: Սակայն ո՛չ թերահավատության սերմանումը գիտության ուժի և նվաճումների նկատմամբ, ո՛չ էլ կրոնն ու գիտությունը հաշտեցնելու փորձերը չեն կարող փրկել ոչ պապերին, ոչ էլ նրանց խորհրդատու գիտնականներին անխուսափելի սնանկացումից. գիտությունն ու կրոնը ոչ միայն անհամատեղելի են, այլև արմատապես հակադիր:

Հազարամյակների ընթացքում մարդը ուսումնասիրել է տիեզերական տարածությունը, դրա համար օգտագործելով իր հարաճուն իմացական հնարավորությունները, բայց չունենալով տեխնիկական միջոցներ իր օրրան-մոլորակից՝ Երկրից հեռանալու համար: Երկրի արհեստական արբանյակներն ու տիեզերանավերը, որոնք առաջին անգամ արձակվեցին մեր Հայրենիքում, նշանավորեցին տիեզերքի ուսումնասիրման նոր էտապի սկիզբը: Արդեն Երկրի արհեստական առաջին սովետական արբանյակը, որն ինքնին բավականին բարդ մի



կառուցվածք էր և ուներ մի քանի չափող հարմարանքներ, թույլ տվեց արժանահավատ տվյալներ ստանալ մթնոլորտի ամենավերին շերտերի խտության և իոնոսֆերայի կառուցվածքի մասին: «Տիեզերքի սովետական նվաճողների սխրագործությունը ազդարարեց մի նոր դարագլուխ,— ասում է Ն. Ս. Խրուշչովը,— երբ մարդը, հենվելով բնական գիտությունների օրենքների ամենախոր իմացության վրա, ստեղծել է այնպիսի ուժ, որն ընդունակ է Երկրից երկնային այլ մարմին ուղարկել տիեզերական հզոր նավ և այն հասցնել ճշգրիտ առաջադրված կետը»: Այժմ, երբ սովետական գիտությունը և մեր հերոսական բանվոր դասակարգը փայլուն հաղթանակ տարան և հնարավորություն ստեղծեցին թափանցելու տիեզերքի անսահման տարածությունները, մարդիկ բնականորեն ավելի ու ավելի հաճախ են խորհում այն նվիրական օրվա մասին, երբ Երկրից կմեկնի ուղևորի կողմից ղեկավարվող տիեզերական նավը, և ռեալ հնարավորություններ կստեղծվեն՝ թափանցելու տիեզերքի գաղտնիքների խորքը:

Ահա թե ինչու երկրի սովետական արբանյակների արձակման լուրը մեծ շփոթություն առաջ բերեց եկեղեցու սպասավորների շրջաններում: «Քրիստոնեական եկեղեցին,— գրում է կաթոլիկ եկեղեցական Ցերերը՝ «Արբանյակը ցնցեց աշխարհը...» հոդվածում,— մինչև հիմա ուշքի չի եկել այն հարվածից, որ Կոպեռնիկոսը հասցրել է տիեզերքի մասին այն պատկերացմանը, որը հիմնըված էր Արիստոտելի և Պտղոմեոսի ուսմունքների վրա: Երկու արբանյակները, որոնք պտտվում են մեր գլխավերևում և տիեզերական հրթիռը, որ միգուցե վաղը ճանապարհ կընկնի, ոչ միայն շոշափում են մարդկանց բանականությունը, այլև կամա թե ակամա ներթափանցում նրանց հոգու խորքը»: Արդեն իսկ միջմոլորակային ճանապարհորդության առաջին քայլերը տալիս են այնպիսի արդյունքներ, որոնք շատ հետաքրքրական են ոչ միայն լոկ բնագիտական, այլև փիլիսոփայական տեսակետից, լայն հեռանկար են բացում դիալեկտիկական մատերիալիզմի ու աթեիստական աշխարհայացքի դրույթների ճըշմարտությունը հաստատելու համար: Ահա թե ինչու ֆրանսիական «Կուրա» կաթոլիկական թերթը 1959 թվականի հունվարի 5-ի համարում ստիպված խոստովանում է, որ սովետական գիտության ձեռք բերած հաջողությունները կրոնի սպասավորներին դնում են այնպիսի դժվարին ու անելանելի դրության մեջ, որից դուրս գալն այնքան էլ հեշտ չէ: Թերթը չի կարողանում թաքցնել իր անհանգստությունը այն առթիվ, որ սովետական տիեզերանավերը հոդս են ցնդեցնում տիեզերքի արարչագործության առասպելը: Այս դեռ բոլորը չէ: «Ռեալ վտանգ կա,— գրում է թերթը, որ սովետական գիտնականների մեծա- գործությունը կարող է մարքսիզմի գաղափարախոսության անհերքելի փաս- տարկ, մարքսիզմի նոր տրիումֆ հանդիսանալ,— ահա թե ինչն է անհանգըս- տացնում մեծ թվով քրիստոնյաներին»:

Թերթի խոստովանությունը պատահականություն չէ: Այժմ ամբողջ աշխարհը հսկայական ուշադրությամբ է հետևում տիեզերքը նվաճող սովետական գիտնականների սխրագործություններին ու նրանց կողմից արձակվող տիե- զերանավերին, նրանց մեջ տեսնելով ազատագրված աշխատանքի մեծ հնարա- վորությունների ռեալ մարմնավորումը, ռևոլյուցիոներ ժողովրդի, ստեղծարար ժողովրդի բուռն առաջընթացը:

---

# ԴԵՌԵՎՍ ՇԱՏ ԲԱՆ ԿԱ ԱՆԵԼՈՒ

*Ս. ՄԿՐՏՉՅԱՆ, Խ. ԵՐԻՑՅԱՆ*

*Ի՞նչ էր իրենից ներկայացնում Համամլուն անցյալում—Հայաստանի խուլ և հետամնաց բնակավայրերից մեկը, որի բնակչությունը տառապում էր խավարի և աղքատության ճիրաններում:*

*Համամլուի այդ տխուր անցյալն արդեն չքացել է հավերժ: Այն Սովետական իշխանության տարիներին աճեց և դարձավ մեր ռեսպուբլիկայի գեղեցիկ ավաններից մեկը, իսկ վերջերս էլ ստացավ քաղաքի կոչում, ավելացնելով ռեսպուբլիկայի քաղաքների թիվը մեկով ևս: Եվ հիրավի, ինչո՞վ Սպիտակը քաղաք չէ: Այստեղ հիմնադրվեց շաքարի գործարան, բանվորական մեծ կոլեկտիվով և առաջին անգամ Համամլուի պատմության մեջ սկսեցին ծխալ գործարանի ծխնելույզները, որոնք կարծես թե ավետեցին նրա վառ ապագան:*

*Շաքարի գործարանից անմիջապես հետո մեկը մյուսի հետևից կառուցվեցին և շահագործման հանձնվեցին պանրի գործարանը, գորգագործական ֆաբրիկան և տեղական արդյունաբերության մի շարք ձեռնարկություններ: Այժմ այստեղ կառուցվում է մի գործարան ևս («կոնդիցիոններ»), որի արտադրանքն ունի արդյունաբերական խոշոր նշանակություն: Ներկայումս Սպիտակն ունի մոտ 10 հազար բնակիչ: Անցյալում մութ, խոնավ, կավահողային տնակների, նեղ, ծուռ ու մուռ փողոցների փոխարեն կառուցվել են նոր, լայն փողոցներ, լուսավոր ու տուֆաշեն մի քանի հարկանի բնակելի և հասարակական շենքեր:*

*Այս ամենով հպարտանում է Սպիտակի աշխատավորությունը, այս ամենի մասին մեծ հպարտությամբ էին խոսում շրջանի պարտիական կազմակերպության VII կոնֆերանսի պատգամավորները: Նրանք հավաքվել էին՝ ամփոփելու կատարվածը և նշելու ապագա խնդիրները:*

*Ինչպե՞ս են կատարված յոթնամյակի երկրորդ տարվա առաջադրանքները, ի՞նչ է արված այդ ուղղությամբ շրջանի պարտիական կազմակերպությունների կողմից, ինչպիսի՞ հնարավորություններ դեռ լրիվ չեն օգտագործվել, որո՞նք են դեռ չլուծված խնդիրները: Ահա այն հարցերը, որոնց մասին խոսում էին զեկուցողը և կոնֆերանսի պատգամավորները:*

## Ամրապնդել հաջողությունները

*Ամենից առաջ նշենք, որ Սպիտակի շրջանային պարտիական կոնֆերանսն անցավ գաղափարական-քաղաքական և կազմակերպական բարձր մակարդակով: Չի կարելի չնկատել այն մեծ փոփոխությունները, որոնք տեղի են ունեցել ոչ միայն շրջանի էկոնոմիկայում, այլև պարտիական կազմակերպությունների,*



*կոմունիստների գործունեության, նրանց աշխատանքի ոճի մեջ: Կոնֆերանսը ցույց տվեց, որ ՍՄԿՊ XXI համագումարի որոշումների կենսագործումը մեծ չափով նպաստել է պարտիական կազմակերպությունների հետագա ամրապնդմանը, կոմունիստների ակտիվության բարձրացմանը: Դրանում էլ պետք է փնտրել այն, որ ինչպես զեկուցողը, այնպես էլ ելույթ ունեցող պատգամավորները կարողացան հմտորեն վերլուծել իրենց հաջողությունների և գործունեության ստվերոտ կողմերի պատճառները:*

*Խոսելով սպիտակցիների հաջողությունների մասին, առաջին հերթին պետք է նշել, որ նրանք արդեն գերազանցել են 1965 թվականի համար նախատեսված մակարդակը շաքարի ճակնդեղի արտադրության բնագավառում: Պատվով կատարելով սոցիալիստական պարտավորությունները՝ նրանք անցյալ տարի արտադրեցին և պետությանը վաճառեցին շուրջ 453 հազար ցենտներ շաքարի ճակնդեղ, որը 66 հազար ցենտներով ավելի է նախատեսված պլանից և 3 հազար ցենտներով՝ յոթնամյակի վերջին տարվա համար սահմանված մակարդակից: Ճակնդեղի պլանտացիաների յուրաքանչյուր հեկտարի բերքատվությունը հասավ 320 ցենտների, 1959 թվականի 293-ի և պարտավորությամբ ստանձնած՝ 313 ցենտների փոխարեն:*

*Որքա՞ն պերճախոս են այս թվերը:*

*Ի՞նչ ճանապարհով են ձեռք բերվել այս հաջողությունները:*

*Սրանից ավելի քան երկու տարի առաջ էր: Ամբողջ երկրում տեղի էր ունենում յոթնամյակի հոյակապ խնդիրների համաժողովրդական քննարկումը: Սպիտակի շրջանի գյուղատնտեսության առաջավորները՝ ճակնդեղագործները, անասնապահները, գյուղատնտեսության մասնագետները հավաքվել էին քննարկելու յոթնամյակի առաջադրանքները: Հենց այստեղ էլ ճակնդեղագործները, հաշվի առնելով եղած հնարավորությունները, պարտավորվեցին շաքարի ճակնդեղի արտադրանքի յոթնամյակի առաջադրանքը կատարել երկու տարում:*

*Իհարկե, դա միայն պարտավորություն էր և շատ պատասխանատու պարտավորություն: Անհրաժեշտ էր ոտքի հանել ամբողջ ակտիվին, գործի դնել բոլոր հնարավորությունները: Շրջանի պարտիական և սովետական ղեկավար օրգանների, կոլտնտեսությունների և սովխոզների սկզբնական պարտկազմակերպությունների հետևողական աշխատանքի շնորհիվ ճակնդեղի պլանտացիաները մշակվեցին ագրոմիջոցառումների խիստ կիրառման, առաջավոր փորձի և գիտության նվաճումների ներդրման պայմաններում: Չի կարելի չնշել այս առումով այն շնորհակալ աշխատանքը, որ կատարվեց շրջանում ճակնդեղի պլանտացիաների պարարտացման բնագավառում: Բավական է ասել, որ 1959 թվականի համեմատությամբ անցյալ տարի ճակնդեղի դաշտերը պարարտացվել են 600 տոննայով ավելի հանքային պարարտանյութով, յուրաքանչյուր հեկտարին տրվել է 20—25 տոննա գոմաղբ: Խոշոր ճակնդեղացան տնտեսությունններում ներդրվել է հողի մեքենայական փխրեցման, բույսերի նոսրացման ու երկկողմանի մշակության առաջավոր փորձը, որն, անշուշտ, զգալի չափով նպաստել է ճակնդեղի բերքատվության բարձրացմանը և ինքնարժեքի իջեցմանը:*

*Սպիտակի ճակնդեղագործներն իրենց հարևան Ախուրյանի շրջանի ճակնդեղագործների հետ միասին կարող են հպարտանալ նրանով, որ նրանց տարիների ընթացքում ձեռք բերած հաջողությունները ճակնդեղի արտադրության բնագավառում կայուն հող ստեղծեցին ռեսպուբլիկայում շաքարի ար-*

տադրության համար. այսօր, խոսելով նրանց լավ գործերի մասին, չի կարելի
այդ բոլորը չկապել շաքարի գործարանի կոլեկտիվի հաջողությունների հետ։
Պատահական չէ, որ շրջանային կոնֆերանսի պատգամավոր, շաքարի գործա-
րանի դիրեկտոր Ա. Փիրուզյանը հենց այդպես էլ ասաց.

— Հարգելի ճակնդեղագործներ, ձեր աշխատանքի մեծ արդյունքը վճռեց
նաև մեր գործարանի պլանների կատարման բախտը։

Եվ, իրոք, շաքարի գործարանը ռեսպուբլիկայի այն արդյունաբերական
ձեռնարկություններից մեկն է, որը պատվով կատարեց յոթնամյակի երկրորդ
տարվա պետական առաջադրանքները։ Գործարանի կոլեկտիվը քրտնաջան աշ-
խատանքի շնորհիվ շաքարավազի, լիմոնաթթվի և չոր ժոմի արտադրության
1960 թվականի պետական առաջադրանքը գերակատարեց ժամկետից մեկ ամիս
շուտ։ Մեկ ցենտներ շաքարի ինքնարժեքը իջել է 14 ռուբլի 40 կոպեկով, լիմո-
նաթթվինը՝ 56 ռուբլով. նվազել է շաքարի կորուստը արտադրության պրոցե-
սում։ Ուրախալի է և այն, որ այսօր լիմոնաթթվի և շաքարավազի արտադրու-
թյամբ գործարանը հասել է յոթնամյակի վերջին տարվա մակարդակին։

Կոնֆերանսի պատգամավորներին ուրախացրեց նաև այն, որ տեղարդ
կոմբինատի պանրի գործարանի և գորգագործական ֆաբրիկայի կոլեկտիվներն
իրենց պետական առաջադրանքները կատարեցին Հայաստանում սովետական
կարգերի հաստատման 40-ամյակի նախօրյակին։

Պարտիական կոնֆերանսում լուրջ քննարկման առարկա դարձավ անաս-
նապահության հարցը։ Սպիտակի շրջանի կոլտնտեսությունները և սովխոզները
յոթնամյակի երկրորդ տարին նշանավորեցին նաև անասնապահության ասպա-
րեզում ձեռք բերած հաջողություններով։ Գերակատարված են սոցիալիստական
պարտավորությունները խոշոր եղջերավոր անասունների, խոզերի գլխաքա-
նակի և թռչունների ավելացման բնագավառում։ Զգալի չափով աճել է անաս-
նապահական մթերքների արտադրությունը։ Հենց դրանով է բացատրվում այն,
որ շրջանի կոլտնտեսություններն ու սովխոզները գերակատարեցին մսի, կաթի,
ձվի վաճառքի պետական պլանը, իսկ կաթի ու ձվի վաճառման բնագավառում՝
նաև սոցիալիստական պարտավորությունը։

Սպիտակի անասնապահները պատվով կատարեցին իրենց պարտավորու-
թյունները նաև անասնակերի կուտակման բնագավառում։ Նրանք այժմ հան-
գիստ խղճով կարող են անցկացնել անասունների ձմեռումը, քանի որ յուրա-
քանչյուր կովին կհասնի 10 տոննա հյութալի կեր։

Խոսելով հաջողությունների մասին, ինչպես զեկուցողը, այնպես էլ ելույթ
ունեցող ընկերները մտահոգված էին այն հարցով, թե ինչպես ամրացնել ձեռք
բերածը, ինչպիսի ուղիներով յոթնամյակի երրորդ տարում հասնել ավելի բար-
ձրր ցուցանիշների։ Նրանք հիմքեր ունեն անհանգստանալու, քանի որ հաջո-
ղությունների կողքին դեռևս կան ստվերոտ կողմեր, չլուծված հարցեր։ Այս
առումով էլ կոնֆերանսում հատկապես նշվեց կազմակերպական աշխատանքի
հետագա բարելավման անհրաժեշտությունը։

## Կազմակերպական աշխատանքը հաջողությունների երաշխիքն է

Կոնֆերանսի պատգամավորներն ուշադրությամբ լսեցին Ջրաշենի կոլտըն-
տեսության պարտիական կազմակերպության քարտուղար Հ. Հովհաննիսյանի
ելույթը։ Ի՞նչն էր ուշագրավ այդ ելույթում։ Նախորդ կոնֆերանսում հենց այդ



նույն ամբիոնից լուրջ քննադատական դիտողություններ արվեցին մի քանի
կոլտնտեսությունների հասցեին, որոնք երկար ժամանակ ետ էին մնում։
Դրանց թվին էր պատկանում նաև Ջրաշենի կոլտնտեսությունը։ Ի՞նչ հետևու-
թյուններ էր արել պարտիական կազմակերպությունը այդ քննադատությունից.
հենց այդ մասին էր խոսում ընկ. Հովհաննիսյանը։ Նրա բերած փաստերը ասում
էին, թե ինչպիսի լավագույն արդյունքների կարող են հասնել պարտիական
կազմակերպություններն այնտեղ, որտեղ լավ է դրված կազմակերպչական աշ-
խատանքը։ Մի՞թե Ջրաշենի կոլտնտեսությունը դրա փայլուն օրինակը չէ։
Այժմ այն համարվում է առաջավոր կոլտնտեսություն։ Բավական է ասել, որ
շաքարի ճակնդեղի արտադրության բնագավառում ստանձնած պարտավորու-
թյունները ջրաշենցիները կատարել են 137 տոկոսով։ Սա պետք է բացատրել
նրանով, որ կոլտնտեսության պարտիական կազմակերպությունը, հաշվի առնե-
լով անցյալ կոնֆերանսում արված քննադատական դիտողությունները, վերա-
նայեց իր աշխատանքի ոճը, գլխավոր ուշադրությունը հատկացրեց քաղաքա-
կան և կազմակերպական աշխատանքի բարելավման հարցերին։

Պարտիական բյուրոն առաջին հերթին վերանայեց կոմունիստների և երի-
տասարդների ուժերի տեղաբաշխումը կոլտնտեսային արտադրության մեջ։ Այդ
հնարավորություն տվեց դաշտավարական բրիգադներում և ֆերմաներում
ստեղծել պարտիական խմբակներ, որը մեծ չափով բարձրացրեց պարտիական
կազմակերպության ազդեցությունը տնտեսության վճռական օղակներում, 8
եռանդուն, գործիմաց երիտասարդներ առաջ քաշվեցին որպես օղակավարներ.
շատ բան արվեց նաև անասնապահական ֆերմաները լավագույն կադրերով
ապահովելու համար, այնտեղ ուղարկվեցին 6 կոմունիստ, 9 կոմերիտական և
մի խումբ երիտասարդներ։

Պարտիական աշխատանքի այնպիսի կարևորագույն բնագավառ, ինչպի-
սին է սոցիալիստական մրցության կազմակերպումը, մոռացության էր տրված։
Պարտավորությունները մնում էին սոսկ պարտավորություններ, որովհետև բա-
ցակայում էր կատարման ստուգումը, առաջավոր փորձի փոխանակման ուղղու-
թյամբ չէր տարվում անհրաժեշտ աշխատանք։ Պարտիական բյուրոն 1960
թվականի սկզբից իր հսկողության տակ վերցրեց սոցիալիստական պարտա-
վորությունների կատարման ընթացքը, ստեղծեց հատուկ հանձնաժողով այդ
նպատակով. պարտավորությունների կատարումը ստուգվում էր, և ամեն տասն-
օրյակ ամփոփվում էին արդյունքները։ Մրցողներն իմանում էին իրենց կոնկ-
րետ առաջադրանքները. կարևորն այն է, որ մրցության առաջավորների փորձը
լայնորեն տարածվում էր պատի թերթերի, ագիտատորների միջոցով. կիրառ-
վում էին նաև խրախուսանքի լավագույն ձևեր (միջօղակային, միջբրիգադային
փոխանցիկ դրոշներ, դրամական պարգևատրումներ և այլն)։

Բայց արդյո՞ք բոլոր տեղերում է, որ կազմակերպական աշխատանքն ըն-
թանում է այդպես հաջող և տալիս է ցանկալի արդյունք։ Իհարկե ո՛չ։ Շրջա-
նային կոմիտեի քարտուղար ընկ. Կ. Քոչարյանը հաշվետու զեկուցման մեջ
երկու նույնանման պայմաններում գտնվող կոլտնտեսությունների օրինակով
համոզմանորեն ցույց տվեց կազմակերպական աշխատանքի խոշոր նշանա-
կությունը կոլտնտեսային արտադրության ղեկավարման համար։ Դրանցից մե-
կում պարտիական կազմակերպական աշխատանքի հաջող դրվածքի շնորհիվ
կոլտնտեսությունը վերելք է ապրում, իսկ մյուսում ընդհակառակը, այն թերա-
գնահատելու հետևանքով տնտեսությունը մինչև օրս էլ շարունակում է ետ մնալ։

Օրինակ, Սարահարթի կոլտնտեսությունը գտնվելով նույն հողակլիմայական
պայմաններում, ինչպիսին է Շենավանը, սիստեմատիկաբար ստանում է յու-
րաքանչյուր հեկտարից 470 ցենտներ շաքարի ճակնդեղի բերք, իսկ Շենավանը
նրանից 2,5 անգամ պակաս։ Ինչո՞ւմն է բանը։ Այդ երկու կոլտնտեսություն-
ներն էլ նույն քանակի հանքային և օրգանական պարարտանյութ են տվել հո-
ղին, սակայն վեգետացիայի ժամանակ սարահարթցիները ջրի հետ դոմաղբ են
տվել երկու անգամ, իսկ շենավանցիները ոչ մի անգամ։ Բացի այդ, Սարահար-
թում ճակնդեղի պլանտացիայի մեկ հեկտարին սնուցում են տվել նաև 1,5
ցենտներ կալիումական պարարտանյութ, իսկ Շենավանում այդ չեն արել։
Առաջին կոլտնտեսությունում երկու անգամ ձեռքով միջշարային մշակություն
են կատարել, իսկ երկրորդում՝ մոլախոտերին բոլորովին ձեռք չեն տվել։ Առա-
ջինում նոսրացումը կատարվել է 5 օրում և պահպանվել են 115 հազար բույ-
սեր, իսկ երկրորդում՝ 12 օրում և պահպանվել են 70 հազար բույսեր։ Մեկ
ցենտների ինքնարժեքը համեմատաբար 12 ռ. և 18 ռ., հեկտարից ստացված
եկամուտը՝ 14.000 և 6000 ռ.։ Շենավանում բացի հողի փխրեցումից և նոսրա-
ցումից, ճակնդեղագործները ուրիշ ոչ մի գործ չեն կատարել։ Այս կոլտնտեսու-
թյունում չի կիրառվել անհատական գործարքի սիստեմը։

Սարահարթում պարտիական կազմակերպական աշխատանքն ուղղված է
եղել ճակնդեղի մշակումը հաջող կատարելու, արտադրության մեջ առաջավոր
փորձը ներդնելու, ճակնդեղագործների աշխատանքային խանդավառությունը.
նրանց սոցիալիստական մրցությունը գլխավորելու գործին։ Իսկ Շենավանի
պարտիական կազմակերպությունը չի կարողացել մոբիլիզացնել աշխատավո-
րությանը և գործը կազմակերպել այնպես, որպեսզի ճակնդեղի մշակությունը
կատարվի ագրոտեխնիկական կանոնների համաձայն ու բարձր որակով։
Այստեղ կոմունիստների մի մասը համարյա չի ապահովում իր ավան-
գարդային դերը արտադրության մեջ, իսկ նրանցից մի քանիսն էլ իրենց
վարքագծով խանգարում են աշխատանքներին։ Այս փաստը խոսում է այն մա-
սին, որ կոմունիստների քաղաքական դաստիարակության գործը հիշյալ կազ-
մակերպությունում գտնվում է անմխիթար վիճակում։

Իսկ ինչի՞ մասին խոսեց կոնֆերանսում կոմունիստ, Շենավանի կոլտըն-
տեսության նախագահ Համայակ Ջանազյանը։ Բերենք նրա ելույթից որոշ հատ-
վածներ։ «Ընկեր Քոչարյանը ճիշտ քննադատեց մեզ... անցյալ տարի մենք
ունեինք 204 ածան հավ, իսկ այս տարի 400... պլանները մենք կատարել ենք,
իսկ սոցիալիստական պարտավորությունները՝ ոչ»։ Ընդ որում ընկ. Ջանազյանը,
խոսելով տնտեսության «տեղաշարժերի» մասին, հաճախ էր կրկնում, թե կոլ-
տնտեսության վիճակը անցյալ տարիների համեմատությամբ բարելավվել է։
Նա իր ելույթն ավարտեց այսպես. «Չնայած մեր կոլտնտեսությունը առաջավոր
չէ, բայց դրությունը վատ չէ»։

Կոնֆերանսի պատգամավորները այդպես էլ չհասկացան, թե Շենավանի
կոմունիստները ինչ են մտադիր անելու, որպեսզի կոլտնտեսությունը դուրս
բերեն առաջավորների շարքը։ Պարզ է, որ նման հանդստացուցիչ տրամադրու-
թյունների հետ չի կարելի հաշտվել։

Բայց Շենավանի պարտիական կազմակերպությունը միակը չէ, որտեղ
վատ է դրված կոմունիստների քաղաքական դաստիարակության, նրանց ավան-
գարդային դերի և պատասխանատվության բարձրացման հարցը։ Այդ մասին
են խոսում կոնֆերանսում բերված մի շարք փաստեր. ինչպես, օրինակ, Գե-



ղարոտի սովխոզի պարտիական կազմակերպության 50 պարտանդամ-թեկնա-
ծուներից, արտադրության մեջ շարքային աշխատանք են կատարում միայն
6-ը, Լուսաղբյուրի թռչնաբուծական ֆերմայում՝ 25-ից 3-ը, Սարալում՝ 33-ից
8-ը։ Ավելի վատթար է վիճակը Գոգարանի կոլտնտեսային պարտկազմակեր-
պությունում։ Այստեղ 22 կոմունիստներից շարքային աշխատանք է կատարում
բոլորովին վերջերս պարտիայի շարքերն ընդունված մի տրակտորիստ. մնա-
ցածները գրավել են տարբեր ղեկավար պոստեր, իսկ մի քանիսը գերադասում
են սպասել «ռեզերվում» և հարմար առիթի դեպքում պաշտոններ ձեռք բերել։
Իսկ Նալբանդի սովխոզի պարտկազմակերպության ներսում գոյություն ունի
անառողջ մթնոլորտ, որը խանգարում է պրակտիկ աշխատանքներին։ Կոմու-
նիստներ Հ. Սաղաթելյանը, Ջ. Սաղաթելյանը, Հ. Կարապետյանը և ուրիշներ,
հանդես բերելով կարիերիստական ձգտումներ, իրենց վարքագծով հարվածում
են պարտիական կազմակերպության մարտունակությանը։

Խստորեն դատապարտելով այս ամենը, կոնֆերանսը պահանջեց շրջանա-
յին կոմիտեի նորընտիր կազմից, սկզբնական պարտկազմակերպություններից
լրջորեն զբաղվել կոմունիստների գաղափարական-քաղաքական դաստիարակու-
թյամբ, կազմակերպական աշխատանքը դարձնել ավելի ճկուն և արդյունավետ,
մինչև վերջ հաղթահարել գաղափարական աշխատանքի կտրվածությունը կո-
մունիստական շինարարության կոնկրետ խնդիրներից։ Կոմունիստը ոչ միայն
պետք է առաջավոր լինի արտադրության մեջ, այլև ամենուրեք հանդես գա
որպես մասսաների կազմակերպիչ։

## Չօգտագործված ռեզերվներ, հրապուրիչ հեռանկարներ

Կոնֆերանսի մասնակիցներին հատկապես հուզում էր այն հարցը, թե ինչ-
պես անել, որպեսզի կոլտնտեսություններում և սովխոզներում եղած հնարա-
վորությունները լիովին օգտագործվեն գյուղատնտեսության անշեղ վերելքն
ապահովելու համար։ Խոսքն այն մասին էր, թե ինչպես բարձրացնել գյուղա-
տնտեսական կուլտուրաների բերքատվությունը, որպեսզի բոլոր կոլտնտեսու-
թյուններն էլ մշտապես ապահովեն բարձր և կայուն բերք, որպեսզի վերջ տրվի
ղեկլարատիվ խոստումներին և ապահովվի բոլոր պարտավորությունների կա-
տարումը լրիվ և ժամանակին։

Գյուղատնտեսության հետագա վերելքի համար հնարավորությունները
շրջանում մեծ են։ Վերցնենք թեկուզ հենց ճակնդեղը, որն այստեղ հանդիսա-
նում է գյուղատնտեսության ամենահիմնական ճյուղը։ Չէ որ սպիտակցիները
պետությանը կվաճառեին 20—30 հազար ցենտներ ավելի շաքարի ճակնդեղ,
եթե բոլոր ճակնդեղացան կոլտնտեսությունները կատարեին իրենց սոցիալիս-
տական պարտավորությունները։ Գաղտնիք չէ, որ մի շարք կոլտնտեսություն-
ներ, շատ բրիգադներ, օղակներ սիստեմատիկաբար յուրաքանչյուր հեկտա-
րից ստանում են 400—500 ցենտներ շաքարի ճակնդեղ, մինչդեռ շատ կոլտըն-
տեսություններում դրանց համեմատ բերքատվությունը կազմում է մոտ 50
տոկոս։

Վերցնենք մեկ ուրիշ կարևոր կուլտուրա։ Ինչպես նշվեց հաշվետու զեկուց-
ման մեջ, վերջին տարիների ընթացքում հացահատիկի բերքատվությունը շըր-
ջանում 11,6 ցենտներից չի անցնում, իսկ Քարաձորի, Ղուրսալիի, Սարալի,
Ծաղկաշենի և այլ կոլտնտեսություններում այն կազմում է 4—8 ցենտներ։

Կոնֆերանսում միանգամայն տեղին նշվեց, որ շրջանում թերագնահատվում են
հացահատիկային կուլտուրաները, իսկ շրջկոմը և պարտկազմակերպություն-
ները գրեթե հաշտվել են այս դրության հետ, թուլացրել են պայքարը հացա-
հատիկային կուլտուրաների բերքատվության բարձրացման համար։

Իսկ ի՞նչ է արված շրջանում եգիպտացորենի աճեցման գործում։ Շատ քիչ
բան։ Անցյալ գյուղատնտեսական տարում այստեղ այդ կուլտուրայի յուրա-
քանչյուր հեկտարի միջին բերքատվությունը կազմել է շուրջ 85 ցենտներ, շըր-
ջանի գրեթե բոլոր տնտեսությունները չեն կատարել պարտավորությունները
բերքատվության բնագավառում։ Քարաձորում հեկտարից ստացված է 28, Գո-
գարանում՝ 22, Լուսաղբյուրում՝ 30 ցենտներ եգիպտացորենի բերք և այլն։
Այս աններելի է Սպիտակի պարտիական և սովետական կազմակերպություն-
ների համար։ Սպիտակը ռեսպուբլիկայի հիմնական անասնապահական շրջան-
ներից մեկն է և այնտեղ պետք է անշուշտ լայն մշակություն գտնի եգիպտա-
ցորենը, որը մեծ խթան կհանդիսանա կերի կայուն բազայի համար։ Այս խըն-
դիրը պահանջում է անհապաղ լուծում, քանի որ անցյալ տարի անասունների
զգալի անկումների պատճառներից մեկն էլ կերի պակասությունն էր։

Սպիտակի շրջանում անցյալ տարի չկատարվեցին սոցիալիստական պար-
տավորությունները կաթի, մսի և բրդի արտադրության ասպարեզում։ Այստեղ
խոզաբուծությունը կոլտնտեսության հետամնաց ճյուղերից է, բարվոք չէ նաև
թռչնաբուծության վիճակը։ Զեկուցողը և ելույթ ունեցողները արդարացիորեն
նշեցին, որ եթե պետությանը վաճառված անասունների քաշը հասցվեր ստանձ-
նած պարտավորության չափին և անասունների սատկությունն ու անկումները
հասցվեին մինիմումի, ապա շրջանը հնարավորություն կունենար լրացուցիչ
արտադրել մոտ 700 հազար ցենտներ բարձրորակ միս և զգալի չափով գերա-
կատարել մսի արտադրության ու պետական վաճառքի պարտավորությունը։

Ահա թե ինչպիսի կարևոր ռեզերվներ են ձեռքից բաց թողնված։

Հրապուրիչ են Սպիտակի շրջանի կոլտնտեսությունների, սովխոզների և
արդյունաբերական ձեռնարկությունների հեռանկարները, որոնք վառ կերպով
նկարագրվեցին և՛ զեկուցման և՛ ելույթների մեջ։ Յոթնամյակի երրորդ տարում
հիմնականում պետք է ավարտվեն շաքարի գործարանի ընդլայնման աշխա-
տանքները։ Շաքարավազի արտադրությունը 1961 թվականին նախատեսվում է
հասցնել 20 հազար տոննայի (այդ թվում 7000 տոննա դրսից ստացվող հումքի
հաշվին)։ Լիմոնաթթվի, այդ արժեքավոր նյութի արտադրությունն այս տարի
կհասցվի 900 տոննայի, յոթնամյակում նախատեսված 500 տոննայի փո-
խարեն։

1961 թվականին կսկսվի Խնկոյանի ջրամբարի շինարարությունը՝ 4—5
հազար խորանարդ մետր տարողությամբ, որը հնարավորություն կստեղծի շա-
քարի ճակնդեղի ցանքատարածություններն ավելացնելու 300—500 հեկտարով.
ջրով լրիվ չափով կբավարարվեն նաև եղած պլանտացիաները։

Ուշագրավ հարց բարձրացրեց իր ելույթում Լենինավանի կոլտնտեսության
նախագահ, պատգամավոր Պ. Սիմոնյանը։ Նշելով մեքենայացման նշանակու-
թյունը հատկապես ճակնդեղի և եգիպտացորենի մշակության համար, առաջար-
կեց ընդլայնել միջկոլտնտեսային կապերը, անբաժանելի ֆոնդերը օգտագործել
ավելի ռացիոնալ, կառուցել հասարակական շենքեր հատկապես այն կոլտնտե-
սությունների համար, որոնք տնտեսապես հզոր չեն, բայց միացյալ ուժերով
կարող են ստեղծել մեքենաների վերանորոգման արհեստանոցներ։ Իսկ միացյալ



ջանքերը,— ասում է նա, ոչ միայն կվերացնեն թերությունները, այլև կարա-
գացնեն գյուղատնտեսական աշխատանքների հետագա մեքենայացումը, որը
կնպաստի ինքնարժեքի իջեցմանը։

Միջկոլտնտեսային կապերի ստեղծման և ամրապնդման համար կարևոր
նշանակություն ունեն միջկոլտնտեսային սովետները, որոնք արդեն որոշ փորձ
են ձեռք բերել Արտաշատի, Էջմիածնի և Շահումյանի շրջաններում։ Վատ չէր
լինի, եթե Սպիտակի պարտշրջկոմը և շրջսովետը ծանոթանային հիշյալ շրջան-
ների միջկոլտնտեսային սովետների աշխատանքներին և դրական փորձը տե-
ղափոխեին իրենց շրջանը։

Սպիտակի շրջանում մեծ թափ կստանա այգեգործությունը։ Խոշոր են
անասնապահության զարգացման հեռանկարները։ Պարտիական կազմակեր-
պությունները մեծ անելիքներ ունեն նաև քաղաքի և գյուղի բարեկարգման,
բնակարանային շինարարության բնագավառում։

Բայց ամենից շատ բան կա անելու կոմունիստների և շրջանի աշխատա-
վորների քաղաքական դաստիարակության գործում։ Չնայած այս ուղղությամբ
կատարված լուրջ տեղաշարժերին, այնուամենայնիվ, դեռևս առանձին պար-
տիական կազմակերպություններ (Սարամեջի, Գոգարանի կոլտնտեսություն-
ների, Նալբանդի սովխոզի, կոմունալ սպասարկման ու բարեկարգման գրա-
սենյակի և այլն) ձևականորեն են զբաղվել կոմունիստների քաղաքական դաս-
տիարակության հարցով։ Հիշյալ կազմակերպությունների ու պրոպագանդիստ-
ների մեղքով խմբակներում ու սեմինարներում պարապմունքներն անցել են
անկազմակերպ, գաղափարական ցածր մակարդակով, իսկ էական թերությունը
եղել է այն, որ պարապմունքները գրեթե չեն նպաստել ունկնդիրների գիտե-
լիքները հարստացնելու և նրանց անվանգարդային դերն արտադրության մեջ
բարձրացնելու գործին։ Պարտիայի շրջանային կոմիտեի և սկզբնական պար-
տիական կազմակերպությունների գործունեության առանցքը պետք է հանդի-
սանա կոմունիստական շինարարության յուրաքանչյուր տեղամասում կոմու-
նիստների դերի անշեղ բարձրացումը։ Առանց այդ խնդրի լուծման հնարավոր
չէ հաջողությամբ գլխավորել աշխատավոր մասսաների կոմունիստական դաս-
տիարակության գործը, նրանց պայքարը կոմունիզմի հաղթանակի համար։
Պարտիայի շրջանային կոմիտեն և սկզբնական պարտիական կազմակերպու-
թյունները պետք է հիմնովին արմատախիլ անեն հակահասարակական երե-
վույթները, որոնք անհամատեղելի են մեր բուռն առաջընթացի հետ։

Սպիտակի շրջանի պարտիական կոնֆերանսը ցույց տվեց, որ պարտիա-
կան և սովետական ղեկավար օրգանները, սկզբնական պարտիական կազմա-
կերպությունները քննադատական վերաբերմունք ունեն դեպի իրենց գործու-
նեությունը, լավ են պատկերացնում շրջանի տնտեսական և կուլտուրական շի-
նարարության խնդիրները։ Միաժամանակ կոնֆերանսը ցույց տվեց, որ շրջանի
աշխատավորությունը պատրաստ է պարտիական կազմակերպությունների ղե-
կավարությամբ յոթնամյակի երրորդ տարում հաջողությամբ լուծելու այդ խըն-
դիրները և հասնելու ավելի մեծ արդյունքի։

---

# ՊԱՐՏԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ԿԵՆՍԱԿԱՆ ԽՆԴԻՐԸ

Ա. ԹԱՓԱԼՑՅԱՆ, Ա. ՍԱԴԱՂՅԱՆ

*Սոցիալիստական մրցումը կիրովցիների մոտ ծավալվեց նոր թափով։ Մոբիլիզացվեց ողջ կոլեկտիվը այդ մրցումից պատվով դուրս գալու համար։ Նոյեմբերի 28-ին կիրովցիները կատարեցին տարեկան պլանը։ Գործարանի կոլեկտիվը տարեկան պլանները մեկ ամիս շուտ կատարելուց բացի տվեց ավելի քան 800 տոննա հումքի, 3 միլիոն 800 հազար կիլովատ-ժամ էլեկտրաէներգիայի խնայողություն, ռացիոնալիզատորական և գյուտարարական առաջարկների ներդրումից ստացվեց 6 միլիոն 700 հազար ռուբլու օգուտ։*

*Կիրովցիների այդ հաղթանակը ձեռք բերվեց ողջ կոլեկտիվի ժրաջան աշխատանքի շնորհիվ, կոլեկտիվ, որը միշտ աչքի է ընկնում նման հայրենասիրական նախաձեռնություններով։ Այդ առաջավոր ձեռնարկությունը 1957 թվականից ռեսպուբլիկայի քիմիական արդյունաբերության ձեռնարկությունների մրցության մեջ գրավում է առաջին տեղը։*

*Ո՞րն է կիրովցիների հաջողությունների գաղտնիքը։ Դա աշխատանքի արտադրողականության սիստեմատիկ բարձրացումն է, որը մշտապես գտնվում է պարտիական կազմակերպության և գործարանի դիրեկցիայի ուշադրության կենտրոնում։ Աշխատանքի արտադրողականության բարձրացման բազմաթիվ ուղիներից ամենակարևորը նոր տեխնիկայի ու առաջավոր տեխնոլոգիայի արմատավորումն է։ Այժմ գործարանում չեք գտնի որևէ ցեխ կամ աշխատանքային տեղամաս, որտեղ վերջին երեք տարում մուտք գործած չլինեն նորն ու առաջավորը։*

*Առանց լրացուցիչ կապիտալ ներդրումների, նոր ցեխեր և տեղամասեր կառուցելու, նույն տարածությունից գործարանն այս տարի ստացել է 12,5 տոկոսով ավելի արտադրանք, քան անցյալ տարի։ Միայն վերջին 10 տարվա ընթացքում կիրովցիներն իրենց ռացիոնալիզատորների ու գյուտարարների առաջարկությունների ներդրմամբ տարեկան տալիս են մոտ 56 միլիոն ռուբլու օգուտ։ Կոմունիստներ Ն. Կարապետյանի, Խ. Խայկինայի և մյուսների գյուտարարական առաջարկի ներդրումով գործարանը տարեկան ստանում է ավելի քան 20 միլիոն ռուբլու օգուտ, տեղում ստեղծել է շատ կարևոր հումք, որը մինչ այդ ներմուծվում էր արտասահմանից։*

*Երկար ժամանակ կաշվի և ռետինի արդյունաբերության մեջ որպես սոսինձ օգտագործվում էր գուտապերճը, իսկ այն ներմուծվում էր արտասահմանից, որի համար ծախսվում էին զգալի միջոցներ։ Այդ շատ էր մտահոգում գործարանի ռացիոնալիզատորներին և առաջավոր բանվորներին. Նրանք սկսեցին ուսումնասիրել, որոնել այդ հումքը տեղերում ստանալու ուղիները։ Շու-*



*տով անվանի ռացիոնալիզատորները գտան ելքը։ Կիրովցիների և Լենինգրադի «Սկորոխոդ» գործարանի աշխատողների առաջարկությամբ մշակվեց ցածր ջերմաստիճան ունեցող կաուչուկի նոր ռեցեպտուրա ու տեխնոլոգիա, որից ստացվում է ավելի լավ սոսինձ, քան գուտապերճից։ Այդ նոր սոսինձն ավելի քան երկու տարի է, որ կիրառվում է Սովետական Միության կոշկի ու ռետինի բոլոր ֆաբրիկաներում ու արտադրության մյուս ձեռնարկություններում։ Նոր սոսինձը 10—15 անգամ էժան է, քան գուտապերճինը։ Այժմ, մեր երկրի տարբեր շրջաններից գործարանի հասցեով ստացվում են հարյուրավոր հեռագրեր, որոնցով խնդրում են ուղարկել նոր սոսինձ։*

*Վերջին ժամանակներս մշակվել է նաև մի քանի տեսակ կաուչուկների ու լատեքսների արտադրության տեխնոլոգիա։*

*Պարտիական կազմակերպության ուշադրության կենտրոնումն է արտադրական պրոցեսների ավտոմատացումը, 30ա ցեխում որոշ ժամանակ հաճախակի խախտվում էր տեխնոլոգիական ռեժիմը, գոլորշիանում էր հումքը, շատ կորուստներ էին լինում։ Այս հարցն անմիջապես դարձավ պարտիական կազմակերպության քննարկման առարկա, որից հետո, պարտիական կազմակերպության ժողովը որոշեց հանձնարարել մեխանիկական ծառայությանը և 30-րդ բաժանմունքի աշխատողներին՝ բազմակողմանիորեն ուսումնասիրել և տալ իրենց կարծիքը։ Ուսումնասիրությունները տվեցին դրական արդյունք։ Սկսվեցին նոր եղանակի փորձարկման աշխատանքները։ 5—6 օրյա անընդհատ փորձարկումները ցույց տվին, որ կարելի է հասնել նպատակին. սակայն ցեխի աշխատողները կանգնեցին դժվարությունների առաջ։ Չէ՞ որ միայն իրենց ուժերով հնարավոր չէր այդքան շատ ապարատներ ներդնել և մոնտաժային աշխատանքներ կատարել։ Այդ նպատակով պարտիական կազմակերպության բյուրոն և ցեխի ղեկավարությունը դիմեցին գործարանի պարտկոմիտեի օգնությանը։*

*Շուտով միացյալ ուժերով կառուցվեց պոլիմերացման նոր սրահ, որտեղ դրվեցին ավելի կատարելագործված ապարատներ։ Այժմ այդտեղ բավականին աշխատանք է տարվում պոլիմերացման պրոցեսները անընդհատ եղանակով կատարելու համար, որով ապարատների արտադրողականությունը կբարձրանա 30—35 տոկոսով, կկանխվի հումքի գոլորշիացումը, կորուստներ չեն լինի և կբարելավվեն աշխատանքի պայմանները։*

*Գործարանի կոմունիստները, ողջ կոլեկտիվն անընդհատ պրպտումների մեջ են։ Իրենց ցեխում, աշխատամասում գոյություն ունեցող յուրաքանչյուր թերություն անհանգստացնում է նրանց։ Նրանք ձգտում են ավելի կատարելագործել տեխնոլոգիական պրոցեսները, օգտագործել մեր Միության շատ ձեռնարկությունների առաջավոր փորձն ու տեխնոլոգիայի նորագույն նվաճումները։*

*Մի ժամանակ 1—8 ցեխը համարվում էր գործարանի ետ մնացող ցեխերից մեկը և դա լուրջ անհանգստություն էր պատճառում ցեխի կոմունիստներին. չէ՞ որ գործարանի բոլոր ցեխերը կապված են իրար հետ և նրանց արտադրական կարողությունները պայմանավորված են միմյանցով։ Ցեխում գոյություն ունեցող ռեակտորները չէին համապատասխանում յոթնամյակում նախատեսված արտադրանքի կարողությանը։ Անհրաժեշտ էր միջոցներ ձեռնարկել, որպեսզի գործարանի օրեցօր աճող հզորությանը ոչ մի բան չխոչընդոտի։ Ցեխի աշխատողների և նախագծային բաժնի ինժեներների ուժերով*

մշակվեցին նոր, ավելի հզոր ռեակտորներ, որոնց ներդրմամբ ցեխի արտադրողականությունը բարձրացավ 50 տոկոսով։

Երկար ժամանակ տեխնոլոգիական ռեժիմները չափվում էին առանձին գործիքներով, հումքը ապարատներից դատարկելուց հետո։ Այդ բանը մեծ անհարմարություն էր ստեղծում, քանի որ հենց ապարատում պետք էր անմիջապես կարգավորել տեխնոլոգիական ռեժիմի խախտումը, որը մեծ չափով ազդում էր հումքի որակի վրա։ 30—30ա ցեխի պետ Զ. Առաքելյանը, նրա տեղակալ Ս. Գրիգորյանը, չափիչ և ստուգիչ ապարատների ցեխի (կիպ) պետ Ա. Դորոզովը և մի խումբ այլ աշխատողներ գտան այդ դրությունից դուրս գալու ելքը։ Ստեղծեցին այնպիսի ավտոմատ գործիքներ, որոնք առանց ապարատավարի միջամտության որոշում են ջերմության չափը և անմիջապես ցույց տալիս տեխնոլոգիական ռեժիմի խախտումները։ Սակայն այդ նոր ավտոմատ գործիքների պատրաստումը և դրանց տեղադրումը կապված էր շատ միջոցների հետ։ Անհրաժեշտ էր առանձին սենյակ, բավականին գումար։ Պահանջվում էր նաև ապարատների մոնտաժման, մեխանիկական և չափիչ ու ստուգիչ ցեխերի աշխատողների մեծ մասի օգնությունը։

Անվանի ռացիոնալիզատորները ժամանակին օգնություն ստացան և ամեն ինչ հաջող անցավ։ Այժմ այդ ավտոմատ գործիքներն առանց ապարատավարի որոշում են տեխնոլոգիական ռեժիմի խախտումները։ Ավագ ապարատավարը այժմ հերթափոխության պետի սենյակում նստած նայում է ազդանշաններին, հետևում ապարատում կատարվող բոլոր գործողություններին։ Երբ ավտոմատ գործիքի վրա երևացող ազդանշանը ցույց է տալիս, որ ապարատում ջերմությունը խախտվել է, նա կարգավորում է ջերմությունը։ Այդ ավտոմատ գործիքները օգնեցին գերազանց որակի հումք ստանալուն, վերացան տեխնոլոգիական ռեժիմի հաճախակի խախտումները, բարելավվեցին աշխատանքային պայմանները։

Թե ինչպես է արտադրության տեխնիկական պրոգրեսը օգնում աշխատանքի արտադրողականության բարձրացմանը, պարզ կերպով երևում է հետևյալ օրինակից։ Անցյալ տարվա սկզբից գործարանի կաթսայատանը և կրի ցեխում սկսեցին օգտագործել բնական գազը, որի շնորհիվ 30 բանվոր կաթսայատնից և 20 բանվոր կրի ցեխից անցան այլ աշխատանքի։ Բանվորական ուժի խնայողության միջոցով այդ տեղամասերում աշխատանքի արտադրողականությունը բարձրացավ 25—30 տոկոսով։

Գործարանի ամենածանր և ֆիզիկական մեծ ուժ պահանջող աշխատանքը պատրաստի արտադրանքի բեռնումն էր, որը մինչև վերջերս կատարվում էր ձեռքով։ Սակայն ձեռնարկության ռացիոնալիզատորների և տեխնիկական ղեկավարության ուշադրությունից չվրիպեց նաև այս հարցը։ Շուտով տեղադրվեցին էլեկտրասայլակներ և լրիվ մեքենայացվեց վագոնների բեռնումը։ Այս միջոցառումը ո՛չ միայն խոշոր չափով թեթևացրել է բանվորների աշխատանքը, այլև 50 տոկոսով կրճատել վագոնների բեռնման համար պահանջվող աշխատաժամանակը և դրանով իսկ բարձրացրել աշխատանքի արտադրողականությունը։ Բեռնման և բեռնաթափման աշխատանքները մեքենայացնելու, ստացվող հումքը, մեքենաներն ու սարքավորումները միջգործարանային երկաթգծից արտադրական տեղամասերը փոխադրելու համար ձեռք են բերված վերամբարձ կռունկ, բուլդոզեր, ֆրեզթիեր, տրակտորներ և այլ տեխնիկա։

Աշխատանքի արտադրողականության հետևողական բարձրացումը տեղի է



ունենում ո՛չ միայն նոր տեխնիկայի ու տեխնոլոգիայի ներդրման ու եղած սարքավորումները կատարելագործելու, այլ արտադրության և աշխատանքի կազմակերպումը բարելավելու միջոցով։ Դեռևս անցյալ տարվանից աշխատավարձի կարգավորման հարցերը լուծելիս անհրաժեշտ եղավ իրականացնել մի շարք միջոցառումներ, որոնք արտադրության ղեկավարումը դարձրին ավելի ճկուն ու նպաստեցին աշխատանքի արտադրողականության բարձրացմանը։ Այսպես՝ միացվեցին երեք լաբորատորիաները և ստեղծվեց մեկ կենտրոնական լաբորատորիա, մեխանիկական երկու ցեխեր միավորվեցին մեկ ցեխում, 30—30ա ցեխի մեջ ընդգրկվեցին երեք այլ ցեխեր։ Այս միջոցառումները հնարավորություն տվեցին 44 բանվոր և ինժեներա-տեխնիկական աշխատող փոխադրել արտադրության մյուս օղակները։

Երբ գործարանի մի շարք ցեխեր, բրիգադներ ու հերթափոխություններ սկսեցին աշխատել կոմունիստաբար, արտադրանքի որակը զգալիորեն բարձրացավ։ 30—30ա ցեխի կոլեկտիվը պարտավորվեց աշխատել ու ապրել կոմունիստաբար, իսկ նրանց աշխատանքը սիստեմատիկաբար ստուգվում էր տեխնիկական վերահսկողության բաժնի աշխատողների կողմից։ Ցեխի կոմունիստներից շատերը դիմեցին պարտբյուրոյին, ասելով, որ կոմունիստաբար աշխատող բանվորները, որոնք պարտավորվել են տալ միայն գերազանց որակի արտադրանք, կարիք չունեն տեխնիկական վերահսկողության բաժնի։ Շուտով կատարվեց կոմունիստաբար աշխատող ցեխի կոլեկտիվի պահանջը։ Պարտկոմի առաջարկությամբ գործարանի դիրեկցիան ո՛չ միայն 30—30ա, այլև մի քանի այլ ցեխերում վերացրեց վերահսկողության բաժինները, իսկ այդ բաժինների աշխատողներին տեղափոխեց արտադրության այլ բնագավառներ։ Առանց տեխնիկական վերահսկողության աշխատելու նախաձեռնությունը մեծ չափով օգնեց աշխատանքի արտադրողականության բարձրացմանը և արտադրանքի որակի բարելավմանը։ Գործարանի ցեխերում տեխնիկական վերահսկողության 36 աշխատողի փոխարեն մնացել են 11-ը։ Տուժե՞ց արդյոք դրանից արտադրանքի որակը. ընդհակառակը՝ այն զգալի չափով բարելավվել է, քանի որ այժմ տեխնիկական վերահսկողության աշխատողի պարտականությունը կատարում են տվյալ ցեխի բոլոր աշխատողները։ Յուրաքանչյուրը հսկում է իր և ընկերոջ թողարկած արտադրանքի որակին։

Գործարանի պարտիական կոմիտեն և ցեխային պարտիական կազմակերպությունները կարևոր նշանակություն են տալիս ռացիոնալիզատորների և գյուտարարների մեծ բանակի շնորհակալ աշխատանքին։ Գործարանի նորարարներն ու գյուտարարները իրենց ստեղծագործ միտքը ուղղել են տեխնոլոգիան կատարելագործելու, հումքի որակը բարձրացնելու, բոլոր թաքնված ռեզերվները հայտաբերելու և արտադրության մեջ ներդնելու պատվավոր գործին, որպեսզի ավելի շատ արտադրանք տան մեր Հայրենիքին։

Նոր տեխնիկայի ներդրում, սարքավորումների և ապարատների մոդեռնացում, տեխնոլոգիական պրոցեսների ավտոմատացում ու մեքենայացում, արտադրանքի նոր տեսակների իրացում—ահա այս հարցերն են մշտապես զբաղեցնում գործարանի մոտ 650 ռացիոնալիզատորների և գյուտարարների միտքը։ 1960 թվականի 11 ամսում նրանք ներկայացրել են 1152 առաջարկ, որոնցից ընդունվել է 978-ը. մինչև այժմ ներդրված 607 առաջարկությունները գործարանին տալիս են տարեկան 6,7 միլիոն ռուբլու օգուտ։

Նկատի ունենալով, որ նորարարների մեծ մասը բանվորներ են և կարիք
են զգում տեխօգնության՝ առաջարկները էկոնոմիկական տեսակետից
հիմնավորելու, նախագծեր կազմելու և այլ աշխատանքներում, ցեխերում կազ-
մակերպված են ռացիոնալիզատորական և գյուտարարական բյուրոներ, որոնք
ղեկավարում են տվյալ ցեխի կամ տեղամասի փորձված ինժեներները: Երբ
ապարատների, մեքենաների, ագրեգատների գործունեության մեջ բանվորները
նկատում են փոփոխություն մտցնելու անհրաժեշտություն, որը կնպաստի ար-
տադրական պրոցեսի արագացմանը, տեխնոլոգիայի կատարելագործմանը,
դիմում են ռացիոնալիզատորական և գյուտարարական բյուրոյին ու նրանց
հետ մշակում միջոցառումներ:

Անվանի նորարարներ Ա. Հայրապետյանը, Ժ. Թումանյանը, Ա. Պետրովը
տեսան, որ գործարանի կարողության բարձրացմանը խանգարում է սառնու-
թյան պակասը. եղած ագրեգատները անկարող էին բավարարելու աճող պա-
հանջները: Երկար պրպտումներից հետո նրանք գտան ելքը՝ մոդեռնացման են-
թարկեցին ամիակի սառեցման պոմպերը, երկաստիճան սեղմումից անցան
մեկաստիճան սեղման, որը մոտ 20 տոկոսով բարձրացրեց ցեխի արտադրո-
ղականությունը: Միայն այդ առաջարկի ներդրմամբ գործարանը տարեկան
ստանում է 2,5 միլիոն ռուբլու օգուտ: Այս օրինակը եզակի չէ. կարբիդի ցեխում
Ն. Կանանովի, Ժ. Դումանյանի, Տ. Հովհաննիսյանի առաջարկությամբ մշակվեց
էլեկտրոդային մասսայի պատրաստման նոր ռեցեպտուրա, որի կիրառմամբ
գործարանը տարեկան ստացավ 600 հազար ռուբլու օգուտ: 30—30ա ցեխի
փականագործների բրիգադավար Ա. Սարգսյանը, 2—7 ցեխի էլեկտրամոնտյոր
Խ. Սարգսյանը, 2—1 ցեխի մեխանիկ Ս. Կասումյանը և շատ ուրիշ ռացիոնա-
լիզատորներ պարտավորվել են յոթնամյակում իրենց առաջարկի ներդրումից
տալ այնքան օգուտ, որը կգերազանցի այդ ժամանակաշրջանի իրենց ստացած
աշխատավարձը:

Պարտկոմի և սկզբնական պարտկազմակերպությունների բյուրոների նա-
խաձեռնությամբ հաճախակի կազմակերպվում են ռացիոնալիզատորների և
նորարարների կոնֆերանսներ, խորհրդակցություններ, որտեղ ամփոփվում են
կատարված աշխատանքի արդյունքները: Արհմիության կոմիտեի ռացիոնալի-
զատորների և նորարարների հանձնաժողովը սիստեմատիկաբար ստուգում է
ընդունված առաջարկների ներդրման ընթացքը և շուտափույթ միջոցներ ձեռ-
նարկում այդ գործում նկատված թերությունները վերացնելու ուղղությամբ:

Տեխնիկական պրոգրեսի, արտադրության մեջ նոր տեխնիկայի ու տեխ-
նոլոգիայի արմատավորման դրոշակակիրներն են կոմունիստական աշխա-
տանքի համար ծավալված մրցության մասնակիցները: Գործարանի կոլեկ-
տիվը մեր ռեսպուբլիկայում առաջինը արձագանքեց Մոսկվացիների՝ կոմու-
նիստական աշխատանքի բրիգադայի կոչման համար մրցություն ծավալելու
մասին դիմումին: Ս. Ամիրխանյանի, Պ. Ռուշանյանի, Ս. Հակոբյանի և մյուս-
ների ղեկավարած բրիգադները մտնելով մրցության մեջ, պարտավորվեցին
աշխատել ու ապրել կոմունիստաբար: Այդ հայրենասիրական շարժումը մաս-
սայական բնույթ ստացավ: 1960 թվականի սկզբներից կոմունիստական աշ-
խատանքի համար սկսեցին մրցել ո՛չ միայն բրիգադները, այլև ցեխերը, իսկ
մայիս ամսից գործարանի կոլեկտիվը սոցիալիստական մրցության մեջ մտավ
կոմունիստական աշխատանքի ձեռնարկության պատվավոր կոչմանն արժա-
նանալու համար:



Կոմունիստական աշխատանքի համար մրցող բրիգադներին, ցեխերի
կոլեկտիվներին օգնություն ցույց տալու նպատակով գործարանի պարտկոմը,
դիրեկցիան և գործարկոմը հրավիրում են կոմունիստական աշխատանքի բրի-
գադների հավաքներ, կոնֆերանսներ, որտեղ ամփոփում են աշխատանքի
արդյունքները, փոխանակում լավագույն կոլեկտիվների փորձը, նրանց համար
կազմակերպում դասախոսություններ ու զեկուցումներ, կինոցուցադրումներ:

1—5—6 ցեխի կոլեկտիվն արդեն երկրորդ տարին է, որ աշխատում է կո-
մունիստաբար և պարտավորվել է յոթնամյա պլանը կատարել 6 տարում, ցեխի
բոլոր աշխատողները որոշել են մինչև 1965 թվականը ստանալ միջնակարգ
կրթություն, սարքավորումների կապիտալ վերանորոգումները կատարել իրենց
ուժերով՝ առանց գործարանի մեխանիկական ցեխի օգնության: Ցեխի պար-
տիական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունները և ադ-
մինիստրացիան հետաքրքրվում են յուրաքանչյուր աշխատողի ապրելակեր-
պով, կենցաղով, անձնական կյանքով, հաճախ լինում են նրանց տներում, ծա-
նոթանում, թե ինչպես են նրանք բարձրացնում իրենց քաղաքական ու կուլտու-
րական մակարդակը, ինչպես են իրենց պահում հասարակական վայրերում և
այլն: Նրանց համար հաճախակի կազմակերպվում են կոլեկտիվ կինոդիտում-
ներ, հաճախ նրանք միասին լինում են թատրոնում, օպերայում, ցեխի աշխա-
տողների ու նրանց ընտանիքի անդամների համար կազմակերպվում են երե-
կույթներ ու ցերեկույթներ:

Ցեխի կոլեկտիվի անդամների մեծ մասը ռացիոնալիզատորներ են: Ցեխից
20 հոգի տիրապետում են երկուսից երեք մասնագիտության և ազատ կերպով
կարողանում են փոխարինել արձակուրդ գնացող կամ այլ պատճառներով բա-
ցակայող աշխատողներին: Կոմունիստաբար աշխատող այս ցեխի կոլեկտիվի
հաջողություններն այնքան ակնառու են, որ գործարանում հիացմունքով են
խոսում նրա մասին, որը մի միաձույլ ընտանիք է, ուր մեկն աշխատում է բո-
լորի, բոլորը՝ մեկի համար:

Արդեն կոմունիստական աշխատանքի կոչման են արժանացել 8 ցեխ, 15
բրիգադա և հերթափոխություն:

Ս. Մ. Կիրովի անվան գործարանի կոլեկտիվը մեծ խանդավառությամբ
ընդունեց ՍՄԿՊ XXII համագումարի հրավիրման լուրը: Համագումարն արժա-
նավայել դիմավորելու համար կիրովցիները նոր պարտավորություններ
ստանձնեցին: Հաշվի առնելով իրենց հնարավորությունները, նրանք խոստա-
ցան 1961 թվականի տասն ամսվա պետական պլանը կատարել 14 օր շուտ՝
հոկտեմբերի 17-ին, ՍՄԿՊ XXII համագումարի բացման օրը:

Յոթնամյա պլանով նախատեսված է կրկնապատկել գործարանի արտա-
դրանքը, աշխատանքի արտադրողականությունը բարձրացնել 70 տոկոսով,
ստանալ նոր տեսակի նյութեր: Մինչև այժմ կաուչուկը ստացվում էր կալցիու-
մի կարբիդից, իսկ այժմ նախատեսված է այն ստանալ բնական գազից: Դրա
համար պետք է կառուցվեն նոր ցեխեր, աշխատամասեր, ինչպես նաև հաղթա-
հարվեն բնական գազից կաուչուկի ստացման տեխնոլոգիական դժվարություն-
ները: Այդ իսկ պատճառով սկզբնական պարտիական կազմակերպությունները
և պարտիական կոմիտեն պետք է մոբիլիզացնեն բոլոր կոմունիստների ու ողջ
կոլեկտիվի ուժերը յոթնամյա պլանը ժամկետից շուտ կատարելու համար:

---

# ՏՆՏԵՍԱԿԱՆ ԿՅԱՆՔԻ ՀԱՐՈՒՍՏ ԱՂԲՅՈՒՐԸ

Ա. ՎԱՐԴԱՆՅԱՆ

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանը նա-
խատեսում է միութենական ռեսպուբլիկաների տնտեսական և կուլտուրական
հետագա համակողմանի վերելք: Ժողովրդական տնտեսության զարգացման
այդ հոյակապ ծրագրի իրականացման գործում հսկայական նշանակություն
ունի ընդերքի հարստության օգտագործումը:

Հայաստանը լեռնային երկիր է: Նրա ոչ մեծ տարածությունն իր երկրա-
բանական կառուցվածքի բարդությամբ և օգտակար հանածոների հարստու-
թյամբ Սովետական Միության կարևոր շրջաններից մեկն է: Նրա ընդերքը հա-
րուստ է օգտակար հանածոների բազում տեսակներով՝ պղնձով, մոլիբդենով,
ալյումինի հումքով, կապարով, երկաթով, արծաթով, ոսկով, ինչպես նաև
հրաբխային ծագում ունեցող շինանյութերով, ինչպիսիք են՝ տուֆը, պեմզան,
բազալտը և հանքային հումքի բազմաթիվ այլ տեսակներ:

Լեռնային և մետալուրգիական հնագույն շրջաններից են Ալավերդին՝ ռես-
պուբլիկայի հյուսիսում և Զանգեզուրը՝ նրա հարավային ծայրամասում: Ալա-
վերդու պղնձի հանքավայրերը մշակվել են դեռևս մեր թվարկությունից առաջ,
V դարում: Հանքաքարի հանույթը և պղնձի ձուլումը այդ շրջանում մեծ ընդհա-
տումներով շարունակվել են մինչև մեր թվարկության XVI դարը, ապա ընդ-
հատվել են և վերսկսվել XVIII դարի երկրորդ կեսին: 1770 թվականին սկսել է
գործել Ալավերդու պղնձաձուլական գործարանը, դրանից առաջ Ախթալայում
սկսվել է արծաթի և ոսկու մեծ պարունակություն ունեցող բազմամետաղ հան-
քերի շահագործումը: XIX դարի վերջից մինչև Հայաստանում Սովետական իշ-
խանության հաստատումը պղնձահանքային և մետալուրգիական ձեռնարկու-
թյունների մեծ մասը գտնվում էր օտարերկրյա կապիտալիստների ձեռքին և,
արտադրանքի քանակով ու տեխնոլոգիայով շատ ետ էր մնում:

Սովետական իշխանության առաջին իսկ տարիներին ռեսպուբլիկայում
լայն աշխատանք ծավալվեց բնական հարստությունների ուսումնասիրման
ուղղությամբ: Համեմատաբար կարճ ժամանակամիջոցում, սիստեմատիկ ու
պլանավորված աշխատանքի շնորհիվ ռեսպուբլիկայի տերիտորիայում հայտ-
նաբերվել և ուսումնասիրվել են հանքային հումքի բազմաթիվ տեսակներ,
որոնց բազայի վրա ստեղծվել և այժմ հաջողությամբ զարգանում են արդյու-
նաբերության այնպիսի ճյուղեր, ինչպիսիք են՝ լեռնահանքային արդյունաբե-
րությունը, գունավոր մետալուրգիան, քիմիական, էլեկտրամեքենաշինական,



շինանյութերի արդյունաբերությունը և այլն: Վերը նշված ճյուղերի զարգա-
ցումը նոր թափ է ստանում այժմ: Բավական է նշել, որ յոթնամյակի ընթաց-
քում մեր ռեսպուբլիկայում լեռնահանքային արդյունաբերության և գունավոր
մետալուրգիայի զարգացման վրա կծախսվի մոտավորապես 1,5 միլիարդ
ռուբլի, որը կազմում է 1959—1965 թվականների ընթացքում Հայաստանի ժո-
ղովրդական տնտեսության մեջ ներդրվող ամբողջ կապիտալի մոտ 12,5 տոկո-
սը: Գնալով ավելի են ծավալվում երկրաբանական-հետախուզական աշխա-
տանքները. միայն 1960 թվականի ընթացքում այդ ուղղությամբ տարվող աշ-
խատանքների վրա ծախսված է ավելի քան 100 միլիոն ռուբլի: Երկրաբանա-
կան-հետախուզական աշխատանքների նման ծավալը նոր հնարավորություն
կստեղծի ռեսպուբլիկայի բնական հարստություններն ավելի լայնորեն օգտա-
գործելու երկրի ժողովրդական տնտեսության կարիքների համար:

Յոթնամյակի ընթացքում Հայաստանի լեռնահանքային արդյունաբերու-
թյան և գունավոր մետալուրգիայի համախառն արտադրանքի թողարկումը
պետք է ավելանա ավելի քան երեք անգամ, այդ թվում մոլիբդենի կոնցենտ-
րատինը՝ 3,2, պղնձինը՝ գրեթե 3,5, կապարի կոնցենտրատինը՝ 7, ցինկի կոն-
ցենտրատինը՝ գրեթե 5 անգամ:

Լեռնահանքային արդյունաբերության և գունավոր մետալուրգիայի ար-
տադրանքի այդպիսի աճն իրականացվելու է նոր ձեռնարկությունների շինա-
րարության, հանքաքարի հանույթի ավելացման, ինչպես նաև աշխատանքի
արտադրողականության բարձրացման, տեխնոլոգիական առավել առաջավոր
պրոցեսների ներդրման և դրանց մեքենայացման ու ավտոմատացման միջո-
ցով: Հատուկ աշխատանքներ են տարվում հանքային նյութի կոմպլեքսային
օգտագործման, նրա բաղադրության մեջ գտնվող բոլոր մետաղների, այդ
թվում՝ հազվագյուտ և ցրված տարրերի լրիվ կորզման ուղղությամբ:

Յոթնամյակի ընթացքում Քաջարանի կոմբինատը, 1958 թվականի համե-
մատությամբ, հանքաքարի արդյունահանումը կավելացնի 2,6 անգամ, մոլիբ-
դենի կոնցենտրատների թողարկումը՝ 2,7 և պղնձի կոնցենտրատներինը՝ 2,4
անգամ: Մեծ աշխատանքներ են կատարվելու հանքավայրերի պաշարներն
ավելացնելու, նրանց տարածությունների ընդարձակելու համար: Վերջին տա-
րիների ընթացքում երկրաբանների կատարած աշխատանքների շնորհիվ
պարզվել է, որ Քաջարանի հանքավայրերը չեն սահմանափակվում ներկայումս
երևացող բլրով, մեծ հետաքրքրություն են ներկայացնում նաև այդ հանքավայրի
ստորին շերտերը: Կոմբինատում արտադրության հարահոսությունն ապահո-
վելու համար խոշոր աշխատանքներ են կատարվելու բաց հանքերում ռոտորա-
յին հզոր էքսկավատորների օգտագործման և հանքաքարի ստորերկրյա փոխա-
դրումը գերհզոր էլեկտրաքարշերով կազմակերպելու ուղղությամբ: Հանքա-
քարի հանույթի ավելացման կապակցությամբ անհրաժեշտ կլինի գործող հա-
րստացուցիչ ֆաբրիկայի հզորությունը մեծացնել ավելի քան երկու անգամ:
Նախատեսվում է աշխատանքներ ծավալել նաև լեռնագործների նոր քա-
ղաք Քաջարանի հետագա բարեկարգման ուղղությամբ:

Քաջարանի կոմբինատի ընդլայնման վրա արվող կապիտալ ներդրումները
յոթնամյակի ընթացքում կկազմեն մոտավորապես 33 միլիոն ռուբլի:

Յոթնամյակում (անհամեմատ ոչ մեծ կապիտալ ներդրումներով—5 մի-
լիոն ռուբլի) արտադրանքի թողարկումը զգալիորեն կավելացնի նաև Ղափանի

պղնձահանքային կոմբինատը—հանքաքարի արդյունահանման գծով գրեթե երեք, պղնձի կոնցենտրատների գծով՝ 2,8 անգամ։

Նախատեսվում է այդ ժամանակամիջոցում հանքերում անցկացնել լեռնա-նախապատրաստական աշխատանքների կոմպլեքս։ Բացի այդ, աշխատանքի արտադրողականության շեշտակի բարձրացման նպատակով մոտակա տարիներին հանքավայրերը ստորերկրյա եղանակով շահագործելու հետ մեկտեղ նոր հանքավայրերում հանքաքարի արդյունահանումը կատարվելու է բաց եղանակով։ Մեծ քանակությամբ հանքաքար վերամշակելու համար նախատեսվում է կառուցել նոր հարստացուցիչ ֆաբրիկա։

Դաստակերտի պղնձամոլիբդենային կոմբինատը 1959—1965 թվականներին հանքաքարի հանույթն ավելացնելու է երկու անգամ, մոլիբդենի կոնցենտրատի թողարկումը՝ 2,3 և պղնձի կոնցենտրատինը՝ 2,4 անգամ։ Դաստակերտի կոմբինատում կապիտալ ներդրումները յոթնամյակում կկազմեն 1,5 միլիոն ռուբլի, այն լիովին կբավականացնի հանքերի ընդլայնման և հարստացուցիչ ֆաբրիկայի արտադրողականության բարձրացման գործին։

Զգալի աշխատանքներ են կատարվելու Ախթալայի հանքում։

Յոթնամյակի ընթացքում Ախթալայում կառուցվելու է հարստացուցիչ ֆաբրիկա, որը շահագործման կհանձնվի 1963 թվականին։ Ֆաբրիկան պետք է վերամշակի ինչպես Շամլուղի պղնձի հանքաքարը՝ պղնձի կոնցենտրատի թողարկումով հանդերձ, այնպես էլ Ախթալայի բազմամետաղային հանքաքարը՝ կապարի և ցինկի կոնցենտրատների թողարկմամբ։ Այդ ֆաբրիկայի գործարկումից հետո Ալավերդու պղնձա-քիմիական կոմբինատը կդադարեցնի հանքաքարի հալումը և կանցնի պղնձի կոնցենտրատների էլեկտրահալման, որով զգալիորեն կբարձրանա ագրեգատների արտադրողականությունը, և կբարելավվեն մետալուրգների աշխատանքի պայմանները։

Աշխատանքներ կծավալվեն նաև Շամլուղում՝ երկրորդ կապիտալ բովանցքի հորատման և Շամլուղ—Ախթալայի տրանսպորտի կարողության ավելացման ուղղությամբ։ Համապատասխան միջոցառումներ են նախատեսված նաև Ախթալայի բազմամետաղային հանքի հանույթն ավելացնելու համար։

Աշխատանքների այդ կոմպլեքսի ավարտումից հետո յոթնամյակի ընթացքում Շամլուղի հանքերում պղնձի հանքաքարի հանույթը կավելանա 2,4, իսկ Ախթալայի հանքաքարինը՝ 4,5 անգամ։ Հարստացուցիչ ֆաբրիկայի գործարկումից հետո 1965 թվականին, 1958 թվականի համեմատությամբ, ցինկի կոնցենտրատի թողարկումը կավելանա 4,8, կապարի կոնցենտրատինը՝ 7 անգամ։ Շամլուղի և Ախթալայի հանքերի ընդլայնման աշխատանքների, ինչպես նաև Ախթալայի հարստացուցիչ ֆաբրիկայի շինարարության յոթնամյակում հատկացվում է մի քանի միլիոն ռուբլի։

Հայաստանի լեռնահանքային բոլոր ձեռնարկությունների ընդլայնման ու վերակառուցման, ինչպես նաև նոր հարստացուցիչ ֆաբրիկաների շինարարության ժամանակ մեծ ուշադրություն է նվիրվելու հումքից հիմնական և վերամշակվող մի շարք հազվագյուտ մետաղների լրիվ արտազատմանը։

Ռեսպուբլիկայի հումքի բազայի ընդլայնման կապակցությամբ 1959—1965 թվականներին իրականացվելու է Ալավերդու պղնձա-քիմիական կոմբինատի արմատական վերակառուցումն ու ընդլայնումը։ Հումքի կոմպլեքսային վերամշակման համար ձեռնարկությունը ապահովվելու է տեխնիկապես առավել հագեցած մետալուրգիական ագրեգատներով։ Կոմբինատի ընդլայնման ու



վերակառուցման համար յոթնամյակում հատկացվում է ավելի քան 200 միլիոն ռուբլի։ Պղնձի ձուլումը 1965 թվականին, 1958 թվականի համեմատությամբ, կավելանա գրեթե 3,5, իսկ պղնձի վայերբարսների արտադրությունը՝ 4,6 անգամ։ Սա նշանակում է, որ Ալավերդու կոմբինատը առաջիկա տարիներին հիմնովին կվերակառուցվի և մեծ չափով կավելանա նրա արտադրանքը։

Այդ քանակությամբ պղինձ թողարկելու համար հիմնական հումք կհանդիսանան Ղափանի, Քաջարանի, Ագարակի, Դաստակերտի և Շամլուղի պղնձի կոնցենտրատները, մասամբ նաև՝ Հյուսիսային Կովկասից ու Վրաստանից բերված հումքը։ Պղնձի ձուլումն ավելացնելու հետ մեկտեղ Ալավերդու կոմբինատը նույն ժամանակամիջոցում ծծմբական թթվի արտադրությունը կավելացնի 4, պղնձարջասպինը՝ 2,5 անգամ։ Վերակառուցման շնորհիվ հնարավորություն կստեղծվի պղնձի հետ միասին կորզելու նաև կապար ու ցինկ՝ կիսապրոդուկտ վիճակում և վերամշակվող հումքի մեջ գտնվող մի շարք հազվագյուտ ու թանկարժեք մետաղներ։ Կոմբինատը յոթնամյակի վերջում պետք է արտադրի նաև ֆտորային ալյումին և կրեոլիտ։

Այսպիսով, վերակառուցումից հետո, կոմբինատը կթողարկի մետալուրգիական և քիմիական 18 տեսակի արտադրանք, այդ թվում ավելի քան 10 տեսակի գունավոր, հազվագյուտ ու թանկարժեք մետաղներ։ Ալավերդու պղնձա-քիմիական կոմբինատը կդառնա Սովետական Միության գունավոր մետալուրգիայի խոշորագույն ձեռնարկություններից մեկը, որը կունենա տեխնոլոգիական լրիվ ավարտված ցիկլ։

Ռեսպուբլիկայում գործող լեռնահանքային ձեռնարկությունների կոմպլեքսը 1962 թվականին կլրացնի Ագարակի պղնձա-մոլիբդենային կոմբինատը, որն իր կարողությամբ և նշանակությամբ լեռնահանքային երկրորդ ձեռնարկությունը կլինի Քաջարանի կոմբինատից հետո։

1962—1965 թվականներն ընկած ժամանակամիջոցում կոմբինատը հանքաքարի արդյունահանումը կավելացնի 2, մոլիբդենի կոնցենտրատի արտադրությունը՝ 2,2 և պղնձի կոնցենտրատինը՝ 1,8 անգամ։ Կոմբինատի գործարկման և նրա կարողությունը օգտագործելու համար յոթնամյա պլանի համաձայն ծախսվելու են բավականին միջոցներ։

Հույժ կարևոր միջոցառումներ են իրագործվելու թեթև մետաղների արդյունաբերության գծով, որտեղ կապիտալ ներդրումները կկազմեն 42,5 միլիոն ռուբլի։ Քանաքեռի ալյումինի գործարանը տեղական կավահողով ապահովելու համար 1961 թվականից Հրազդանում կսկսվի լեռնաքիմիական կոմբինատի շինարարությունը, որը նեֆելինային սիենիտների վերամշակումից կստանա կավահող։ Դրան զուգընթաց կթողարկվեն նաև մի շարք արժեքավոր կողմնակի արտադրանքներ, ինչպես՝ նատրիումի և կալցիումի մետասիլիկատները, որոնք Սովետական Միությունում կթողարկվեն առաջին անգամ և լայն կիրառում կգտնեն թեթև, սննդի և քիմիական արդյունաբերության մեջ, երևանիտը (կվարցային ալյուր)՝ ապակու արդյունաբերության և հայելիների արտադրության համար, սպիտակ մուրը՝ ռետինի արդյունաբերության համար, լեռնային բյուրեղապակին՝ բյուրեղապակու արտադրության համար։ Ձեռնարկված մի շարք միջոցառումների շնորհիվ 1966 թվականին կգործարկվի կոմբինատի կարողության 50 տոկոսը, իսկ ամբողջ շինարարությունը կավարտվի 1967 թվականին։ Թողարկվող արտադրանքի 90 տոկոսը իրացվելու է մեր ռեսպուբլիկայի սահ-

մաններում: Կոմբինատը հումք կմատակարարի ո՛չ միայն ալյումինի գործարանին, այլև էլեկտրալամպերի, էլեկտրալուսավորման և օպտիկական սարքերի, կարբիդի, ռետինատեխնիկական իրերի, հախճապակու-ճենապակու, խրոմպիկի և մի շարք այլ գործարանների: Կոմբինատում ստացված արտադրանքը 15—20 տոկոսով էժան կլինի Միության մեջ թողարկվող համապատասխան արտադրանքից:

Հրազդանի լեռնաքիմիական կոմբինատի բազայի վրա կաճի նոր արդյունաբերական քաղաք, որը կունենա 40 հազար բնակիչ: Հեռանկարային պլանով նախատեսվում է նաև Ախտայի երկաթահանքերի բազայի վրա Հրազդանում կառուցել սև մետալուրգիայի ձեռնարկություններ՝ տրանսֆորմատորային նրբաշերտ պողպատի արտադրությամբ: Ներկայումս երկրաբանները ինտենսիվ աշխատանք են տանում նաև Գորիսի շրջանի Սվարանցի երկաթային հանքավայրի ուսումնասիրման ուղղությամբ. Նախնական տվյալները հաստատում են այն կարծիքը, որ այդ հանքավայրը կարող է հուսալի մետալուրգիական բազա հանդիսանալ:

Քանաքեռի ալյումինի գործարանը յոթնամյակում ալյումինի արտադրությունը կավելացնի 15 տոկոսով և կանցնի տեղական հումքի մշակմանը, որը կստացվի Հրազդանի լեռնաքիմիական կոմբինատից: 1961 թվականից գործարանը թողարկելու է ալյումինի ֆոլգեր ու թերթեր, ինչպես նաև ալյումինե վայերքարսեր. դրա շնորհիվ 1965 թվականին ձեռնարկության համախառն արտադրանքը, 1958 թվականի համեմատությամբ, կավելանա 70 տոկոսով:

Զոդի էքսպեդիցիայի հետազոտությունների տվյալների հիման վրա 1961 թվականից Բասարգեչարի շրջանում կսկսվի Զոդի ոսկու հանքավայրի ավելի լայն մասշտաբներով հետազոտումը:

Այսպիսով, յոթնամյակի տարիներին Հայաստանը պղնձից, մոլիբդենից, ալյումինից, կապարի ու ցինկի կոնցենտրատներից և այլ ծանր, թեթև ու հազվագյուտ մետաղներից բացի կսկսի թողարկել նաև թանկարժեք մետաղներ:

Մեր ռեսպուբլիկայի գունավոր մետալուրգիայի հեռանկարային զարգացման պլանով նախատեսվում է յոթնամյակի ավարտումից հետո ռեսպուբլիկայի զանազան վայրերում շահագործման հանձնել ևս մի շարք նոր ձեռնարկություններ, որոնք թողարկելու են պղնձի և մոլիբդենի կոնցենտրատներ: Ներկայումս այդ հանքավայրերում շարունակվում են երկրաբանական-հետախուզական ինտենսիվ աշխատանքները:

Հետագայում ռեսպուբլիկայում թողարկվող թեթև մետաղների ասորտիմենտը կհամալրվի ևս մեկ մետաղով՝ մագնեզիումով, որն ստացվելու է Իջևանի դոլոմիտներից՝ բնական գազի օգտագործմամբ:

Հարուստ է Հայաստանի ընդերքը մետաղային օգտակար հանածոներով, որոնց հայտնաբերումը, ուսումնասիրումը և արդյունաբերությանը հանձնելը ռեսպուբլիկայի երկրաբանների պատվի գործն է: Սակայն պետք է նշել, որ բացի մետաղային օգտակար հանածոներից, Հայկական ՍՍՌ տերիտորիան հարուստ է նաև ոչ-մետաղային օգտակար հանածոներով, որոնք Հայկական տնտեսական շրջանի համար հսկայական ժողովրդա-տնտեսական նշանակություն ունեն:

Ռեսպուբլիկայի տերիտորիայի մի զգալի մասն զբաղեցնում են բնական շինանյութերը՝ տուֆը, բազալտը, պեմզան, շլաքը, ինչպես նաև հրակայուն հումքի, ծծմբակոլչեդանի, բարիտի, ասբեստի, իոլանդական շպատի և այլ



օգտակար հանածոների հանքավայրերը: Լայն հռչակ է վայելում բացառիկ գեղեցկությամբ գունավոր տուֆը, որի մեծ պահանջ են ներկայացնում նաև եղբայրական ռեսպուբլիկաների՝ Ադրբեջանի ու Վրաստանի շինարարները:

Շենքերի տուֆե երեսպատման և ինքնատիպ ճարտարապետության շնորհիվ Երևանը դառնում է Միության ամենագեղեցիկ քաղաքներից մեկը: Տուֆի լայն կիրառումը ո՛չ միայն մեր ռեսպուբլիկայի շինարարության մեջ, այլև նրա սահմաններից դուրս, պայմանավորված է նրա բարձր ունիկալ հատկություններով՝ ծավալային փոքր կշռով՝ մեխանիկական զգալի ամրությամբ, հողմահարման դեմ խիստ դիմացկունությամբ, բարձր ցրտադիմացկունությամբ, թույլ ջերմա-ձայնահաղորդմամբ, զարմանալի նրբությամբ ու գեղեցկությամբ. Նրա վրա շատ հեշտ է գեղարվեստական ոռնամենտներ փորագրել: Հայկական տուֆի դեկորատիվ բազմազանությունը և այդ հիանալի շինանյութի անսպառ պաշարները նրա հետագա կիրառման լայն հեռանկարներ են բացում:

Լավ հայտնի է հայկական բարձրորակ պեմզան: Հայաստանը մեկն է այն սակավաթիվ վայրերից, որոնք այդ արժեքավոր հումքի հանքավայրեր ունեն: Հայաստանում պեմզայի ընդամենը 57 հանքավայր կա: Արդյունաբերական խոշոր նշանակություն ունեն ներկայումս մշակվող Անիի և Պեմզաշենի հանքավայրերը: Հենց միայն այդ երկու հանքավայրերից տարեկան 775 հազար խոր. մետր պեմզա է ստացվում:

Պեմզայի, հրաբխային շլաքների և տուֆի փշրանքների բազայի վրա կառուցվում են արժեքավոր ձեռնարկություններ, որոնք հավաքովի երկաթ-բետոնե կոնստրուկցիաներ են պատրաստելու արդյունաբերական ու բնակարանային շինարարության համար: Սակայն այդ արժեքավոր օգտակար հանածոների կիրառման շրջանակը ամենևին չի սահմանափակվում սրանով: Պեմզան, օրինակ, օգտագործվում է նաև հղկման համար՝ տեքստիլ, փայտամշակման ու մետաղամշակման արդյունաբերության մեջ, ցեմենտի արտադրության մեջ, որպես ջերմամեկուսիչ՝ մի շարք քիմիական ձեռնարկություններում և տնտեսության այլ ճյուղերում: Ներկայումս ռեսպուբլիկայի պարտիական ու տնտեսական կազմակերպությունները բոլոր միջոցները ձեռք են առնում՝ զգալիորեն ավելացնելու տուֆի, պեմզայի, բազալտի հանույթը այն հաշվով, որ ապահովվի այդ նյութերի պահանջը նաև երկրի հարավային մասի տնտեսական շրջաններում:

Գործնական կարևոր նշանակություն են ստանում բազալտը և անդեզիտները: Օգտակար հանածոյի այս տեսակները Հայկական ՍՍՌ սահմաններում այնքան լայնորեն են տարածված, որ առանձին հանքավայրերի մասին խոսելու հարկ չկա: Նրանց պաշարներն անսպառ են: Բազալտը, անդեզիտ-բազալները և անդեզիտները, բացի շինարարության մեջ կիրառվելուց, հալված վիճակում լայնորեն կիրառվում են նաև թթվուտակայուն և ջերմակայուն սարքավորումներ պատրաստելու համար, ինչպես և ջերմաէլեկտրամեկուսիչների համար: Անդեզիտներն օգտագործվում են թթվուտների արտադրության ու պահպանման, շենքեր կառուցելու համար: Անդեզիտը փոշի վիճակում գործադրվում է թթվուտակայուն բետոնի, ցեմենտի, մածիկի (զամազկա) ստացման համար: Հայաստանի անդեզիտները հումք են հանդիսանում փայտաղաց քարեր պատրաստելու համար, որոնք կիրառվում են թղթի արդյունաբերության մեջ:

Իր բացառիկ գեղեցկությամբ, գույնով ու դեկորատիվ հատկություններով

հայկական մարմարը իրավամբ մեծ հռչակ է վայելում ռեսպուբլիկայի սահմաններից էլ շատ հեռու։

Հայկական ՍՍՌ տերիտորիան հարուստ է պերլիտի և օբսիդիանի (սատանի եղունգ) խոշոր հանքավայրերով, որոնք նոր, խիստ էֆեկտիվ ջերմա-ձայնամեկուսիչ հումք են։ Արտափքած պերլիտն օգտագործվում է որպես ծեփ և բետոնի լրացուցիչ նյութ, որպես հրակայուն ցեմենտի, հաղճասալի, տանիքային ծածկի բաղադրանյութ, հրակայուն ներկերի ու պլաստմասսայի լրացուցիչ նյութ, որպես ֆիլտր զանազան սննդանյութերի զտման համար և պիտանի է ժողովրդական տնտեսության այլ բնագավառներում։

Մերձերևանյան շրջանում ընդարձակ տարածության վրա կան քարաղի հսկայական պաշարներ։ Այդ հանքավայրի բազայի վրա Ավանում հզոր աղահանք է կառուցվում։ Արդեն հանված են բարձրորակ աղի առաջին հազարավոր տոննաները։ Նախատեսվում է հետագայում կառուցել աղի վերամշակման ու քիմիական ձեռնարկություններ՝ կալցիացրած սոդայի և սնդղի սոդայի արտադրության համար։

Արժեքավոր հումք է նաև կրաքարը, որով այնքան հարուստ է Հայկական ՍՍՌ-ն։ Արարատի բարձրորակ կրաքարի բազայի վրա ստեղծվել են ցեմենտի և ասբոշիֆերի արդյունաբերության խոշոր ձեռնարկություններ։ Կրաքարը հումք է հանդիսանում կարբիտ-կալցիում ստանալու համար, որը լայնորեն օգտագործվում է ինչպես շինարարության, այնպես էլ քիմիական արդյունաբերության մեջ, որտեղ դրանից ստանում են սինթետիկ կաուչուկ, քացախաթթու, պարարտանյութեր, ներկեր և այլ արժեքավոր նյութեր։ Քացախաթթուն անհրաժեշտ է արհեստական մետաքսի արտադրության համար։

Այս ոչ մետաղային հումքերի շատ տեսակները՝ պեմզան, տուֆը, օնիքսը, պերլիտը, հրաբխային ապակին և այլն, հազվագյուտ հանքային հումույթներ են, որոնց արդյունաբերական հանքավայրերը լայն հռչակ ունեն մեր ռեսպուբլիկայի սահմաններից դուրս։

Ընթացիկ յոթնամյակում, մանավանդ բնակարանային շինարարության բուռն թափի կապակցությամբ, ռեսպուբլիկայում զգալիորեն ընդարձակվել են շինանյութերի որոնումների, երկրաբանական-հետախուզական և շահագործման աշխատանքները։

Մի շարք միջոցառումների շնորհիվ վերջին տարիներս ոչ հանքային հումքի բազայի վրա շինանյութերի, իրերի և կոնստրուկցիաների արտադրությունն զգալիորեն աճել է։ Ստեղծվել են մի շարք նոր ձեռնարկություններ, վերակառուցվել ու ընդարձակվել գործող ձեռնարկությունները։ Դրա շնորհիվ ռեսպուբլիկայում ցեմենտի արտադրությունը 1960 թվականին, 1955 թվականի համեմատությամբ, աճել է 1,6, շիֆերինը՝ 1,3 անգամ։ Հավաքովի երկաթբետոնի թողարկման ծավալը 1960 թվականին կազմեց մոտ 190 հազար խոր. մետր։ Այդ բազայի վրա կազմակերպված է շինանյութերի ու իրերի նոր տեսակների արտադրություն, այդ թվում՝ պատի պանելներ, նախապես լարված երկաթ-բետոնե կոնստրուկցիաներ, պատի սղոցած տուֆե բլոկներ, սենյակի չափսի պրոկատային միջնապատի պանելներ և այլն։

Սովետական Հայաստանը թևակոխեց իր հինգերորդ տասնամյակը։

Պայծառ ու հոյակապ են Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայի զարգացման հեռանկարները։ Առաջիկայում շարք կմտնեն նորանոր էլեկտրակայաններ, գործարաններ, ֆաբրիկաներ, արդյունաբերությունը



կյուրացնի արտադրանքի նորանոր կարևոր տեսակներ։ Ամբողջ արդյունաբե-
րական արտադրանքի աճման հետ միասին մեծ արագությամբ զարգանալու
են նաև գունավոր մետալուրգիան, մեքենաշինությունը, շինանյութերի ար-
դյունաբերությունը, էներգետիկան, ստեղծվելու են քիմիական արդյունաբե-
րության նորանոր ճյուղեր։ Եվ մի՞թե հնարավոր է բոլորը թվարկել։ Հեքիա-
թային արագությամբ է փոխվելու հայ ժողովրդի կյանքը և՛ արտաքուստ, և
ներքուստ։ Մենք տեսնում ենք, թե ինչպես են իրականանում ամենահոյակապ
պլանները։

Հայ ժողովուրդը սովետական ամբողջ ժողովրդի հետ նայում է դեպի
ապագան, նրա ուշադրությունը սևեռված է մեր երկրի ժողովրդական տնտե-
սության զարգացման յոթնամյա պլանի վեհ խնդիրների լուծման վրա։ Ըն-
դերքի հարստությունը մեր ռեսպուբլիկայի տնտեսական կյանքի բարգավաճ-
ման հզոր աղբյուրն է։

Արդյունաբերության զարգացումը կարևոր խնդիրներ է դնում մեր երկրա-
բանների առջև—գտնել օգտակար հանածոների՝ երկաթի, գունավոր և այլ մե-
տաղների նոր հանքավայրեր։ Արագ թափով աճող գիտությունն ու տեխնիկան
պահանջում են ավելի մեծ քանակությամբ հազվագյուտ ու այլ մետաղներ,
որոնք կիրառվում են տելեմեխանիկայում, ռադիոտեխնիկայում և ժողովրդա-
կան տնտեսության այլ ճյուղերում։ Իրենց բոլոր ուժերը, ստեղծագործական
ամբողջ եռանդը այս խնդրի լուծմանն են նվիրում ռեսպուբլիկայի երկրաբան-
ները և լեռնարդյունաբերության ու գունավոր մետալուրգիայի աշխատող-
ները։ Էկոնոմիկայի և կուլտուրայի հետագա բուռն զարգացման հեռանկար-
ները թևավորում են նրանց՝ հասնելու կոմունիստական շինարարության նո-
րանոր հաջողությունների։

---

14. Համաշխարհային ասպարեզում ուժերի հարաբերակցության փոփոխումը և պատերազմների կանխման հնարավորությունը ժամանակակից պայմաններում։

15. Բոլոր խաղաղասեր ուժերի միավորումը և ակտիվ գործողությունները նոր համաշխարհային պատերազմի կանխման անհրաժեշտ պայմանն են։

16. Խաղաղ գոյակցության սկզբունքը՝ սոցիալիստական պետությունների արտաքին քաղաքականության անխախտ հիմքն է։

17. Խաղաղ գոյակցությունը և դասակարգային պայքարի, ազգային-ազատագրական շարժման հարցերը ժամանակակից պայմաններում։

18. Համընդհանուր և լրիվ զինաթափման սովետական ծրագրի պատմական նշանակությունը։

19. Գաղութատիրության լիակատար կործանումը անխուսափելի է։

20. Ժամանակակից գաղութակալության գլխավոր պատվարը ԱՄՆ-ն են։

21. Կոմունիստները գաղութատիրության ամենահետևողական հակառակորդներն են։

22. Պայքարը դեմոկրատիայի համար՝ հանուն սոցիալիզմի պայքարի բաղկացուցիչ մասն է։

23. Բոլոր ռևոլյուցիոն ուժերի համախմբումը իմպերիալիստական ճնշման և շահագործման դեմ մղվող պայքարում։

24. Բանվոր դասակարգի գործողությունների միասնությունը՝ հանուն խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի պայքարի վճռական պայմանն է։

25. Դեպի սոցիալիզմ խաղաղ կամ ոչ խաղաղ անցման կոնկրետ-պատմական պայմանների մասին։

26. Համաշխարհային կոմունիստական շարժումը մեր ժամանակի ամենաազդեցիկ քաղաքական ուժն է։

27. Պարտիական կյանքի լենինյան սկզբունքների խստիվ պահպանումը՝ կոմունիստական պարտիաների գործունեության օրենքն է։

28. Պայքարն ընդդեմ բուրժուական գաղափարախոսության և մասսաների կոմունիստական դաստիարակությունը։

29. Պայքարը երկու ճակատում՝ ընդդեմ ռևիզիոնիզմի, որպես գլխավոր վտանգի, և դոգմատիզմի ու աղանդավորության։

30. Սովետական Միության Կոմունիստական պարտիան համաշխարհային կոմունիստական շարժման ավանգարդն է։



---

### ՈՒՂՂՈՒՄ

Մեր ամսագրի 1960 թ. 12-րդ համարի 86-րդ էջի ներքևից 3-րդ տողում կարդալ (Նախագահ ընկ. Կ. Տրդատյան), 87-րդ էջի վերևից 5-րդ տողում կարդալ (Նախագահ Հ. Խաչանյան) պաշտպանեց այգեգործների. նույն էջի վերևից 22-րդ տողում կարդալ (Նախագահ դեպուտատ Թորոսյան). Ներքևից 15-րդ տողում՝ «նաև Արտաշատի շրջանի Մասիս գյուղի» և այնուհետև ինչպես տեքստում։


ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր). ԱՌԱՔԵԼՅԱՆ Ս. Վ., ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԲԱՐՍԵՂՅԱՆ Խ. Հ., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՀԱՅՐՅԱՆ Գ. Ա., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս.։

Խմբագրության հասցեն՝ Երևան, ՀԿՊ Կենտկոմի շենք, հեռ. 2—56—92, 2—04—66, 2—02—24

Адрес редакции: Ереван, здание ЦК КП Армении, тел. 2—56—92, 2—04—66, 2—02—24

ՎՖ 04081

Պատվեր 1

Տպ. 7 մամուլ, մամուլում 68,340 նիշ։

Տիրաժ 10000

Ստորագրված է տպագրության 18/I 1961 թ.

Խմբագրությանը հանձնված ձեռագրերը հեղինակներին չեն վերադարձվում։

Հայկական ՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Հրատարակչությունների և պոլիգրաֆարդյունաբերության Գլխավոր վարչության № 6 տպարան, Երևան։





## ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

### ՆՈՐ ՊՈՄՊ

Նավթարդյունաբերության մեջ օգտագործվող «ՌԻ 8—3» տիպի հորատման մխոցային պոմպերը չեն համապատասխանում տեխնիկական զարգացման արդի մակարդակին։ Նման երկու պոմպերից կազմված բլոկը կշռում է 70 տոննայից ավելի, բանվորները հորատումն ավարտելուց հետո ստիպված են լինում այն քարշ տալով փոխադրել ու մոնտաժել մի այլ տեղում։ Ցածր է դրանց արտադրողականությունը։

Նավթային մեքենաշինության գիտահետազոտական-նախագծային ինստիտուտի մի խումբ ինժեներներ ստեղծել են առանցքային տիպի հորատման նոր պոմպ, որը կշռում է ընդամենը 2,7 տոննա և իր արտադրողականությամբ կարող է փոխարինել երկու մխոցային պոմպերին։ Դա համաշխարհային տեխնիկայի պատմության մեջ առաջին բարձր ճնշման առանցքային պոմպն է։ Այն բաղկացած է ռոտորից, ստատորից և առանցքային ուժի ընկալման բեռնաթափման սարքից։ Բարձր ճնշման առանցքային պոմպը նախատեսված է նավթի և գազի հորատանցքեր բացելու համար, բայց այն ավելի մեծ էֆեկտ է տալիս նաև լեռնային արդյունաբերության մեջ։

Բրյուսելի համաշխարհային ցուցահանդեսի ժյուրին նոր պոմպ ստեղծողներին՝ Մ. Շ. Վարդապետովին, Լ. Ս. Գդիկմանին, Մ. Ի. Կորնեին, Յա. Մ. Կերշենբաումին և Վ. Մ. Սպեկտորսկուն արժանացրեց բարձրագույն պարգևի՝ Ոսկե մեծ մեդալի։

### ԳՐՊԱՆԻ ՎՈՒԼԿԱՆԻԶԱՏՈՐ

Մոսկվա էլեկտրաստրքավորումների № 5 գործարանը արտադրում է պորտատիվ վուլկանիզատորներ, որոնք ծավալով շատ փոքր են, քաշով թեթև. դրանք նախատեսված են ավտոմեքենայի, մոտոցիկլետի և մոտոռոլերի անվադողերը վերականգնելու համար։ Ինչպես հայտնի է, այդ պրոցեսը կատարվում է ստացիոնար վուլկանիզատորների միջոցով, որոնք տեղադրված են հատուկ վերանորոգման կետում և բաղկացած են տարբեր տեսակի բարդ սարքերից։

Գրպանի վուլկանիզատորը միացվում է ավտոմեքենայի ակումուլյատորին. դողի վնասված մասը կարկատանի հետ միասին դրվում է վուլկանիզատորի ընդունիչի մեջ և սեղմվում է պտուտակով, որը ուժեղ սեղմում է վուլկանիզացիայի ենթարկվող մասը։ Տասը րոպեից հետո այն հանվում է պատրաստի վիճակում։

### ՄԵԿ ՄԻԼԻՈՆ ԱՆԳԱՄ

Չեխոսլովակյան ակադեմիայի էլեկտրոնային օպտիկայի լաբորատորիայում ստեղծվել է էլեկտրոնային միկրոսկոպի նոր տիպ, որն առարկան մեծացնում է 200 հազարից մինչև մեկ միլիոն անգամ։

### ԿՏՐԻՉՆԵՐ ՉՈՒԳՈՒՆԻՑ

Բուլղարիայի Դիմիտրով քաղաքի մեքենաշինական գործարանում արտադրության մեջ ներդրված են չուգունե կտրիչներ՝ պողպատյա կտրիչների փոխարեն։ Արտադրական ութ գործողության փոխարեն, որն անհրաժեշտ է պողպատե կտրիչներ պատրաստելու համար, այժմ պահանջվում է միայն երկու գործողություն։

### ՎՐԱՆԸ ԳՐՊԱՆՈՒՄ

Լեհաստանի Վելիչկե քաղաքի պլաստմասսաների գործարանը թողարկում է վրաններ. դրանք կարելի է փաթաթել ու տեղավորել գրպանում, իսկ բացելուց հետո այն ծառայեցնել որպես գարաժ՝ մարդատար ավտոմեքենաների համար։

# ՆՈՐ ԳՐՔԵՐ

## ՊԵՏՔԱՂՀՐԱՏԻ ԵՎ ՀԱՅՊԵՏՀՐԱՏԻ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՄԲ ԼՈՒՅՍ ԵՆ ՏԵՍԵԼ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ—«Աշխարհն առանց զենքի—աշխարհն առանց պատերազմի», *ժողովածու (երկու հատորով), հատոր 1-ին, 685 էջ, տիրաժ՝ 5000, գինը՝ 84 կոպ.։*

«ՄԱՐՔՍԻԶՄ-ԼԵՆԻՆԻԶՄԻ ՀԻՄՈՒՆՔՆԵՐԸ», *927 էջ, տիրաժ՝ 7000, գինը՝ 1 ռ. 28 կոպ.։*

Ա. ԳՐԻԳՈՐՅԱՆՑ—«Հայաստանի բանվոր դասակարգը 40 տարում», *248 էջ, տիրաժ՝ 3000, գինը՝ 36 կոպ.։*

Շ. Ռ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ—«Սովետական Հայաստանը 40 տարում», *(տարեգրություն համառոտ քաղվածքներով և բիբլիոգրաֆիական-աղբյուրագիտական տվյալներով), 483 էջ, տիրաժ՝ 3000, գինը՝ 60 կոպ.։*

Վ. ՍԱՀԱԿՅԱՆ, Վ. ԳԵՎՈՐԳՅԱՆ—«Հայաստանի սոցիալիստական աշխատանքի հերոսները», *351 էջ, տիրաժ՝ 1000, գինը՝ 43 կոպ.։*

Վ. ԴԱՐՅԱՆ—«Թեթև արդյունաբերության զարգացումը Սովետական Հայաստանում», *100 էջ, տիրաժ՝ 2000, գինը՝ 13 կոպ.։*

Մ. ՄԻՆԱՍՅԱՆ—«Ավելի մոտ կյանքին», *90 էջ, տիրաժ՝ 2000, գինը՝ 8 կոպ.։*

Հ. ՍԱՐԴՍՅԱՆ—«ՍՍՌՄ օգնությունը Ասիայի և Աֆրիկայի թույլ զարգացած երկրներին», *106 էջ, տիրաժ՝ 1000, գինը՝ 8 կոպ.։*

Ա. Թ. ԹՈՎՄԱՍՅԱՆ—«Սովետական արդարադատության և սոցիալիստական օրինականության հարցերի շուրջը», *307 էջ, տիրաժ՝ 2000, գինը՝ 42 կոպ.։*

Ն. ՇԱՏԱԳԻՆ—«Պարտիան Հայրենական Մեծ պատերազմի ժամանակաշրջանում», *323 էջ, տիրաժ՝ 3000, գինը՝ 26 կոպ.։*

КИРОВ С. М. — *Мы идем вперед, мы несем священный огонь пролетарской борьбы в своих руках. Ձեկուցում Աստրախանի նահանգի Սովետների չորրորդ համագումարում՝ 22 նոյեմբերի 1919 թ., 120 էջ, տիրաժ՝ 60 000, գինը՝ 14 կոպ.։*

СВЕРДЛОВ Я. М. — Что такое рабочая партия, *68 էջ, տիրաժ՝ 57 700, գինը՝ 8 կոպ.։*

ХО ШИ МИН — *Ленинизм и освобождение угнетенных народов, 56 էջ, տիրաժ՝ 60 500, գինը՝ 6 կոպ.։*

АНТОНИН НОВОТНЫЙ — За победу мира и социализма, *142 էջ, տիրաժ՝ 47 500, գինը՝ 18 կոպ.։*

*Из истории коммунистической партии Финляндии, 208 էջ, տիրաժ՝ 8000, գինը՝ 45 կոպ.։*

ПРОЗОРОВ П. А. — *Колхоз и коммунизм, 96 էջ, տիրաժ՝ 15000, գինը՝ 12 կոպ.։*

*АМИАНТОВ Ю. Н., УСТИНОВ В. М. — Верный сын партии, (Ի. Ի. Սկվորցով-Ստեփանովի մասին), 32 էջ, տիրաժ՝ 75 000, գինը՝ 4 կոպ.։*

АРБАТОВ Ю. — Что такое коммунизм, *48 էջ, գինը՝ 6 կոպ.։*

*IX съезд Итальянской коммунистической партии. (Հռոմ, 1960 թ. հունվարի 30—փետրվարի 4), Փաստաթղթեր և նյութեր, 308 էջ, գինը՝ 57 կոպ.։*